Արժանացեալ բարեյիշատակ Իզմիրեանի Սահ.-Մեսրոպեան մրցանակի.



# ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԵԿԵՂԵՑԻՆ

ԵՒ

# ԲԻՒԶԱՆԴԵԱՆ ԺՈՂՈՎՈՑ

## ՊԱՐԱԳԱՅՔ



ՊԱՏՄԱԿԱՆ ՅԱՌԱՋԱԴՐՈՒԹԻՒՆ

*«Մի երկնչիր հօտ փոքրիկ զի հաճեցաւ*
*«հայր ձեր տալ ձեզ զարքայութիւն»:*
ՂՈՒԿ. ԺԲ. 32.

ԳՐԵՑ

ԴՐ. ԵՐՈՒԱՆԴ ՏԷՐ-ՄԻՆԱՍԵԱՆ

ՄՈՍԿՈՒԱ.
ՏՊԱՐԱՆ ՄԿՐՏԻՉ ԲԱՐԽՈՒԴԱՐԵԱՆԻ.
1892

«Յորժամ ուխտն որ գլուխն է եկեղեցւոյ ընտիրք և պիտանիք լինիցին, ևս առաւել ժողովուրդն»։

Ս. Սահակ.

«Մի խառնեսցի պղտոր ուսումն ընդ յստակ և ականակիտ վարդապետութիւն ս. և առաքելանման Հայրապետին Գրիգորի»։

Նախարարք Հայոց.



# ՅԱՌԱՋԱԲԱՆ.

*«Խզել զզժնդակացն զեկամուտն, և վառել զէնս հակառակ չարին, և ի վայր կործանել զհակառակս արդարութեան»:*

ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ.

*«Այգոյ, որոյ չէ պարիսպ, գազանք մտեալ ապականեն զնա»:*

ՅՈՎՀ. ՄԱՆԴԱԿՈՒՆԻ.

Պատմական անցեալն իւրաքանչիւր ազգի վեհագոյն հարստութիւնն է, իսկ ամենայն ազգ կայուն է, եթէ նորա անդամները գիտաստ են իւրեանց պատմական անցեալին և շարունակում են մէկ անընդհատութիւն պահպանել անցեալը ներկայով ապագային թողնելու։ Այդ գիտաստութիւնն անձնիւր Հայի պարտաւորութիւնն է, ըստ որում իւրին գիտաստ լինելով՝ Հայը պիտի զինքն ճանաչէ և այդ գիտաստութեամբ է՝ որ Հայը պիտի կարենայ Հայի նմանիլ՝ որպէս ամենքի ինքնաճանաչութեան հետևանք բաղձանքն է։ Այդ գիտաստութեան աղբիւրն է Հայոց պատմութիւնն, որ ոչ թէ պատահականների, այլ Հայ ազգի պատմութիւնն է։ Հայոց պատմութիւնը մէկ յարաշար ամբողջութիւն է, որի իւրաքանչիւր շրջանը հասկանալու համար պէտք է լաւ ըմբռնել նորա սկիզբն, որին խելահաս լինելու համար հարկ է նորա հաստա-

տութեան հիմքերն պարզել, ըստ որում անհրաժեշտ է գիտենալ այն ձգտումներն, որոնք Հայոց կեանքն են կազմել, այն ծրագիրն, որ Հայի գործունէութեան նկարագիրն է եղել և այն գաղափարներն, որոնք նորա աշխատանաց հոգի և մարմին են տուել։

Մէկ ժողովուրդ ազգ է, եթէ նա իւր հոգևոր և մարմնաւոր ունեցուածքի հետ ամբողջութիւն մի կազմելով, իւր պատմական շարունակութեան մէջ ինքնագլուխ է։ Իսկ մի ազգի գոյութիւն ապահովուած է, եթէ նա որպէս ազգ ձգտում է իւր յարապատմական ազգային բարեկեցութեան։ Հայոց պատմութիւնն ևս այդպիսի մի ազգի պատմութիւն է, այսինքն նորա այդ ամբողջութեան և ձըգտմանց և դոցա համար նորա վարած մաքառման նկարագիրն է։

Հայ ազգն՝ որպէս ամբողջութիւն մի, չկարէ առանց իւր այս ու այն ամբողջացուցիչ տարրի ազգ համարուիլ և քննական պատմութեան նիւթ դառնալ, ըստ որում և նորա այս ու այն ամբողջացուցիչ մասն անկարող է իւրապարփակ ամբողջութիւնից անջատեալ պատմութիւն ունենալ։ Հայ ազգի ամբողջութեան այդպիսի մի նշանաւոր տարրն է — Հայաստանեայց եկեղեցին, որ և ունի նորա հետ իւր յարաշար և միահետև կենսագործութիւնը։ Հետևենք նորան աւելի ծաւալ տալով իւր ամբողջութեան հետ յարակցաբար, բարձրանանք ազգայնից առ եկեղեցականն և իջնենք եկեղեցականից առ ազգայինը պատմական անտարակոյս քննութեամբ և մենք կստանանք Հայաստանեայց եկեղեցու ստոյգ նկարն ազգի պատկերի մէջ։

Կեանքը կեանք է, եթէ նա մարտ է և մաքառումն և ամենայն ինչ հէնց յեղյեղուկ վիճակումն է լաւ ճանաչւում. արդէն Հայաստանեայց եկեղեցին ևս պէտք է այդ մաքառման մէջ ճանաչել։ Հիմք ունելով հեթանոսութեան ընդդիմադրութեամբ, սկսաւ պատերազմիլ երկու թշնամեաց դէմ. մէկ Պար-

սից կրակապաշտների և մէկ քրիստոնէական ասպարիզում մարդահնար հաւատքի ախոյեանների դէմ. մաքառման այս վերջին դաշտը հետաքննական է և ուշագրաւ, վասն զի այստեղ սուրն և գրիչը յարակից էին ընթանում։ Սուր էր թշնամու թուրը, ծանր էր թշնամու լուծը, բայց սրագոյն էր հայի գրիչը, տապալիչ էր նորա կենդանի խօսքն և ամուր էր նորա ոգին արիւնածորան մարմնի մէջ։ Սակայն Հայաստանեայց եկեղեցին աչքի է ընկնում նախ իւր ներքին գործունէութեամբ, կազմելով իւր և իւր Հօտի ինքնագիտաստութեան և ինքնուրոյնութեան ամրացուցիչ շունչ տալու ժամանակն, ապա իւր պատերազմով Բիւզանդացոց դէմ, ուր նիւթն է կազմում Բիւզանդական պետութեան ժողովների էութիւնն և եզակութիւն, մարտի մեծ տեսարան բանալով, մինչև խաչակրաց արշաւանքը կամ ԺԲ դարու վերջերը կամ Բիւզանդական պետութեան անկման ժամանակն. այնուհետև Հայաստանեայց եկեղեցին միջոց մի կռուեցաւ Հռովմայ Հակաքրիստոնէական չարամտութեան դէմ, որից յետոյ դադարում է ճշմարիտ մաքառումն և Հայաստանը դառնում է շուկատ խռովարարների ասպարէզ։

Այդ դարերում Հայաստանեայց եկեղեցին փակուեցաւ իւր մէջ, վասն զի հայ ժողովուրդը հրոսակների անդադար յարձակմանց ենթակայ լինելով, անպարապ հոգ էր պատճառում Հայոց Հայրապետներին, որոնք միակ աւագապետը լինելով ազգային տան, միայն այդ իսկ տունը կառավարելուն էին զբաղուած։ Արտաքուստ ևս օգնութեան յուսոյ տեղիք չկային, զի խաչակրաց արշաւանքներից յետոյ դադարեցաւ հիմնովին արևմտեան ազդեցութիւնը։ Բազմաթիւ իշխաններ էին Հայաստանի անկիւններում իշխողներն, որոնք լոկ իւրեանց հացի խնդրին էին նուիրուած։ Հռովմէական եկեղեցին էր, որ դեռ շարունակեց չարանիւթ մախողներ և բանսարկուներ ուղար-

կել, որոնք երկպառակութիւն առթելուց զատ, ոչ մի յաջողութիւն չէին ունենում, վասն զի անցական բարեբատութեան յուսատուութիւնից բոլորովին զուրկ լինելով, այլ և անզէն և անզօր էին ամենակուրամիտ մարդկանց իսկ որսալու[1]։

Բախտ է սակայն, որ այսչափ բանսարկու նիւթողների և մախողների մէջ Հայաստանեայց եկեղեցին սկզբում դարեր անընդհատ՝ մաքառմամբ և այժմ անհաւասար ընդդիմագործութեամբ մնում է դեռ նոյն անարատութեան մէջ։ Հայաստանեայց եկեղեցու այս հռչակը զարմացնում է գերմանական և առհասարակ եւրոպական գիտնականներին, որոնք յաճախ կրկնում են, թէ քանի հոգի և եռանդն կայ այդ ազգի և եկեղեցու մէջ, որ յարիւն և ի մահ պահպանում է իւր հայրենի անման սրբաւանդն, սրբաւանդն որ պարծանք կարող է լինել ամենայն ազգութեան։

Ցիրաւի, Հայաստանեայց եկեղեցին, ինչպէս նկատում էր իմ մէկ ուսուցչապետս, իւր դաւանակից այլ եկեղեցեաց մէջ անսպառ. աղբիւր է եղել եռանդի, զօրութեան և լուսաւորութեան, որոնցով անվհատ և անվեհեր կռուել է իւր անաղարտ հայրենի փառաւոր ժառանգութիւնն, իւր վեհագոյն հարստութիւնը պահպանելու համար։ Հայ ժողովուրդն ազնիւ ինքնասիրութեամբ հաւատարիմ է եղել իւր փառաց և պարծանաց, որոնց վեհութեան համար իւր անմահ նախնիք ամենայն ինչ զոհելով, արիւն են թափել և զայնոքիկ սերնդոց աւանդել։ Զատագովական և վիճաբանական պայքարը վարեցին Հայոց հռչակաւոր

---

[1] Մեր խօսքն ի հարկէ այն Թեթևսօլիկ և տտչուտ մարդկանց վերայ չէ, որոնց մասին եկեղեցու նախանձախնդիր մի՝ անցեալ դարի սկզբում գրում է. «Թողումք զլափլիզողսն միշտ, որք վասն միոյ դահեկանի զԱստուած և զհաւատսն վաճառեն»: Տես. Ջեննքայ յիշատակարանը. Կալկաթա, 1814 Թ. էջ 89.

վարդապետները։ Բայց քանի՛ բազմասայրի են Նոցա կրօնաբանական գրութիւնք, քանի իմաստուն, քանի խորահայեաց էին ազգային գոյութեան խնդրին և ո՛րպիսի անձնազոհութեամբ հաւատարիմ էին իւրեանց միակ աւանդին և աւանդարանին։

Հայաստանեայց եկեղեցին՝ մեր այդ փառաւոր աւանդարանը, ծփում էր իւր վիհութեան մէջ դեռ առաջին դարերում իւր պարզ, սուրբ և ազատամիտ սկզբունքներով, որոնք սոյն այս դարում և յաւիտեան ամենալուսաւորեալ աշխարհի հիացման առարկայ են։ Հայաստանեայց եկեղեցին ոչ մի եկեղեցու կամ ազգի թշնամի չէ, սակայն իւր անաղարտ էութեան և կերպարանքի մէջ մնալով, Նոցա գրկախառնելուց հիմնապէս և մահու չափ զգուշանում է։ Բայց իւրաքանչիւր եկեղեցու բարոյական պարտականութիւնն է ցոյց տալ և խելամուտ անել իւր որդոց իւր հիմնական սկզբանց և գաղափարներին, որպէս զի ապահով լինի օտար մոլորութիւնից, վասն զի Հայը քանի առաւել զարգանայ և քանի շատ խորամուտ լինի Հայաստանեայց եկեղեցու Նիւքնոյն, այնքան աւելի կսիրէ և կպաշտէ զայն։ Իսկ ով գիտութեամբ չէ սիրում, Նա պէտք չէ իւր փառապանծ եկեղեցուն։ Հայաստանեայց եկեղեցու բարոյական պարտականութիւնն է, որպէս ընդհանուր ընդունուած է, քարոզով ցոյց տալ իւր որդոց այն հաւատքն ու սկզբունքներն, որոնք կենդանի են ի հնուց, որպէս զի Հայը պարզապէս կարենայ, համեմատելով իւր սեփական եկեղեցին այլոց հետ, մեկին· տեսնել իւրի վեհավսեմ առաւելութիւնք։ Հայաստանեայց եկեղեցու բարոյական պարտականութիւնն է օտարաց զրպարտութեանց զանազան թշնամական խեղաթիւրմանց ընդդէմ գալ և հերքել արիաբար և ճշմարտութիւնն «ի վերայ լերինն բարձու» հռչակել։ Վերջապէս Հայաստանեայց եկեղեցու բարոյական պարտականութիւնն է օգնութեան ձեռք

մեկնել իւր այն դաշնակից եկեղեցիներին, որոնք կարեւոր ոյժն ու եռանդն ծախսած լինելով, այժմ կենսազուրկ գոյութիւն են վայելում. Նորա պարտականութիւնն է ձեռք մեկնել, բարձրացնել նոցա, և յառաջ քաշել իւր հին զինակիցը լինելու ճշմարտութեան համար։ Բայց թէ ե՞րբ և ինչպէ՞ս. այդ Հայաստանեայց եկեղեցու ինքնագի-տասատ որդոց գործն է, նոցա զէնքն է գործունէութեան սահ-մանահատն և իրերի յառաջագայութեան յաջողութիւնը ժամանակի պայման։

Իսկ այդ պարտականութիւնք կատարելու հնար չկայ առանց օտար եկեղեցիները քննադատելու, ուստի պարտ է և ուրիշ եկեղեցիները հետազօտելով, ճշմարտութիւնն ու մոլորութիւնը տարորոշ տեսարանի վրայ դնել, ըստ որում ճշմարտութեան քննադատութիւն ոչ մի զարգացած բանականի վիրաւորող չէ։ Եւ ինչո՞ւ։

Ընդհանուր ճշմարտութիւնն է, որ իւրաքանչիւր ազգի և երկրի մէջ եկեղեցին պէտք է և պարտ է ժողովրդական լինի և անհրաժեշտաբար ինքնուրոյնութիւն ունենայ և դարերի ընթացքում կազմութիւն ստացած լինի իւր հօտի հետ նորա հոգուն համաձայն, որպէս զի իբրև եկեղեցի գործէ ժողովրդի փրկութեան համար։ Արդ այս դրութիւնը հակառակ է եկեղեցիների միանմանութեան, վասն զի այն եկեղեցին, որ Գերմանիայում ըստ գերմանների հոգուն ծաղկել է, չկարէ Ճապոնիայում նոյն կազմակերպութեամբ յարատևել և օգտաւէտ լինել։ Այն եկեղեցին, որ Անգլիայումն է ծաւալ ստացել, չի կարող հունձ ունենալ հեռաւոր Աֆրիկէի վայրենիների մէջ։ Նոյն այս գաղափարը փայփայւում էր Հայաստանեայց եկեղեցում դեռ Դ — Ե դարերում, երբ Հայք քրիստոնէութիւն մտցնելով ի Վրաստան և Աղուանք, սերմանեցին, որպէս զի ըստ տեղւոյն բարեխառնութեան և պայմանաց և հողասննդին աճի և կազմակերպուի, և ոչ թէ

իւրեանց տնկած աճեցրածն էին տանում այնտեղ տնկում։ Աւասիկ պատմական հետևութիւն մի է գիտնական աշխարհում, որ եկեղեցիներն ոչ թէ ի մի ձուլուած պիտի լինին, այլ հնաւուրց քրիստոնէութիւնն՝ հաւատքն ու սէրն անաղարտ պահելով, թոյլ տալ իւրաքանչիւր եկեղեցու իւրաքանչիւր երկրում իւր ինքնուրոյն կազմակերպութիւնն ստանալու։ Իսկ որպէս զի իւրաքանչիւր ժողովրդական կամ ազգային եկեղեցի իւր ինքնուրոյնութիւնն և անկախութիւնը պահել կարենայ, պարտ է իւր քննարանական քարոզական գործունէութեան մէջ եռանդուն կեանք ունենալ, ոչ թէ այս ու այն եկեղեցին անարգելու համար, այլ ճշմարտութեամբ զայնոքիկ իւր որդոց ծանօթացնելով, գիտաստ համոզման պաշար մատակարարելու համար, որպէս զի իւր հետևողք անվտանգ լինին պետութեան, հասարակութեան և ընտանիքի, իբրև աւետարանի ճշմարիտ որդիք։ Այդպիսի վսեմ գործունէութիւնն է, որ միացնում կապում է ամբողջ ազգն ոչ թէ անցական իրերով, այլ հոգով, ներքին կեանքով, որպէս զի մի շունչ լինի ազգը, մի եռանդով ոգևորուի, վասն զի մեր նախնիք ևս, որոնք այնքան սխրագործութեանց հեղինակներ էին, «միով գօտեաւ ճշմարտութեան պնդեցին զմէջս արք և կանայք[1]»։ Բանին քարոզութիւնն, աստուածային ճշմարտութեան աւետարանումն էր, որ ջանահնար էր լինում «տալ զօգի Աստուծոյ ի սիրտս մարդկան, միաբանել խառնել ի սէր աստուածորդւոյն, զի ի սրտից ամենեցուն իբրև մի աղաղակ իցէ»[2]

[1] Եղիշէ. Վենետիկ 1828 թ. էջ 115.—[2] Ագաթանգ. Դեռ անցեալ դարի սկզբի ազնիւ քարոզիչ մի գրում է Տարօնի Ս. Կարապետ վանքում, յիշատակելով իւր և եղբայրակիցների քարոզական ճանապարհորդութիւնը. «և էր սովորութիւն ի հարցն առաջնոց մերս գաւազանի, զի ի ձմեռնային եղանակին շրջէին աշխատութեամբ քարոզել զբանս աստուածայինս ուր կամէր և յաջողէր Հոգին Աստուած. և ի

Ը.

և այդ ճշմարտութիւնն է, որ փրկում է ամենքին և որից կենդանանում է ամենայն ոք անհատապէս և զօրանում է ամենայն ազգ հանրապէս։

Արդ այս է Հայաստանեայց եկեղեցու քաղաքական հինաւուրց դերն, որ պիտի շահագրգռէ իւրաքանչիւր հայանհատի և ոչ թէ սոսկապէս նորան նուիրուած պաշտօնէից։ Այս ինչո՞ւ։

Վերագոյն ասուեցաւ, որ Հայաստանեայց եկեղեցին մէկ առանձնական աշխարհ չէ ազգից անջատուած, այլ նորանից անբաժան և նորա հետ ի մի ձուլուած ամբողջութիւն է կազմում։ Հայ ազգինն է Հայաստանեայց եկեղեցին. Հայաստանեայց եկեղեցուինն է Հայ ազգն. և որպէս ազգն իւրաքանչիւր հայինն է, այնպէս և Հայաստանեայց եկեղեցին անձնիւր հայի ժառանգական սեփականութիւնն է և հարստութիւնը. Հայն է իւր եկեղեցին պայծառացնողը, հայն է իւր եկեղեցու հոգին և հոգևապետ տուող ընտրողն, ուստի և ազգի և եկեղեցու շահն ու գործունէութիւնը համակցական է։ Որչափ ազգն բարեկեաց է և յառաջադիմում է, նոյնքան և կպայծառանայ նորա անգնահատելի եկեղեցին, որչափ զարգացած է ազգի անձնիւր անհատն, նոյնչափ անուանի կլինի նորա եկեղեցու պաշտօնեան, իսկ որքան պայծառանայ Հայաստանեայց եկեղեցին, նոյնքան կծաւալի նորա անապառ լոյսը հայրենեաց ամենայն անկիւններն։ Ապա ուրեմն իւրաքանչիւր անհատի բարոյական և ազգային պարտականութիւնն է մի լինել իւր եկեղեցու հետ և աշխատել նորա պայծառութեան համար, օգտուիլ նորանից և իւր նորան իսկ տուած կարգն և օրէնքը յարգելով, ապրել, գործել, փառաւորուել նորա հետ և նորա մէջ։

---

գարնանային հրոսակին դառնային անդրէն ի սուրբ ուխտն:» Վերոյիշեալ յիշատակ. առ Զենոբայ:

## Թ.

Վերոյիշեալ գաղափարք առաւել եւ մնում են մեզ դէպի ճշմարտութեան հանդէսը, յորժամ նոյն այդ են քարոզում հայաստանեայց եկեղեցու առաքելական հարազատութեան և ազգային ինքնուրոյնութեան վրայ հիացող նշանաւոր գիտնականք։ Թողնելով «Հին-կաթոլիկաց» Կեօլնի ժողովում (11 սեպտ. 90) գերմանական՝ Ռայնկենս, շուեցարիական՝ Հերցոգ, հոլլանդական՝ Հայկամպ, անգլիական՝ Վօրդսվօրթ եպիսկոպոսների և այլոց արտայայտած խորին համակրանաց հաւատքն ու ձայնը, ղոնց առնենք և աստուածաբանների յարգանաց ապացոյցներն և դնենք այստեղ իմ բարեկամ անուանի պատմաբան արքունի խորհրդական ուսուցչապետ Հայնրիխ Գելցերի նամակն ճշմարտասէր գիտնականաց հայեացքին ծանօթանալու համար։

. . . . . . . . . . .

Դուք վճռել էք աստուածաբանութիւն սովորել ձեր բոլոր ոյժն ձեր ազգին նուիրելու համար. հոյակապ և փառաւո՛ր նպատակ։ Որպէս ես պատանեկութիւնից անտի ի վեր քան զամենայն սիրել եմ իմ ամբողջ գործս ու ձգտումներս միայն իմ Թանգագին գերման ազգի բարեկեցութեան համար տալու, այնպէս և դուք կամենում էք ձեր ազգի, հայկայ հին, մեծայարգ ժողովրդի համար աշխատել։ Ես բարեմաղթում եմ ձեզ առ այդ վճիռն, որ դուք յանձն էք առել Քրիստոսի նախատինքը. վասն զի աստուածաբանութիւնն աշխարհի երբեմնական առաջին և բարձրագոյն գիտութիւնն, անճող լուսաւորութեան և անաստուածութեան մօտ, որի սոսկալի արդիւնքը տեսնում ենք ընկերվարութեան (sozialismus) և ոչնչականութեան մէջ (nihilismus), երթալով իջաւ մինչև նախատեալ և ծառայող սպասարկութիւնը։ Որպէս առ ձեզ, այնպէս և ախտրում է առ մեզ—եղո՜ւկ—բազմապատիկ այն հայեցողութիւնը, թէ որբագոյնն ամենայն գիտութեանց՝ աստուա-

ծառայութիւնք, վարդապետութիւնն Աստուծոյ և եկեղ
ցու վրայ այլ և ոչ թէ ուսեալների համար է, այլ մ
այն ժողովրդի։ Իմ լաւագոյն երկու բարեկամներս՝ ուսուց
չապետն գործնական աստուածաբանութեան ի Հայդելբեր
դր. Բասսերման և տեղւոյս քարոզիչ դր. Կլոտ, ունեցե
են նոյն փորձն, որպէս դուք. Նոքա երկոքին սիրուած ե
հարուստ և անուանի սոսկ ոսկեշահութեան վրայ մտա
ծող վաճառական ընտանիքից և միայն մեծագոյն մ
քառամամբ կարեցել են այդ քաջ՝ բայց սահմանափա
մարդկանց դատապարտութեան դիմաց, Տէրի կոչման հ
տևել և աստուածաբանութիւն սովորել։ Նոյնն է և ձե
պատահել. Ձեր արիւնակից բարեկամները մարմնաւո
պատճառներով ընդդիմադրել են ձեզ Աստուծոյ արքա
յութեան համար գործելու՝ որպէս Քրիստոսի ս. եկեղե
ցու սպասաւոր։ Արդ, յարգոյ բարեկամ, գիտեմ, որ ձե
հաւատքն ամուր հաստատուած է միակ հիման վրայ՝ ո
է Յիսուս Քրիստոս, երէկ և այսօր, նոյն և յաւիտեան
Ուստի լսեցէք նաև նորա ս. աւետարանի խօսքերն, որոն
ի ձեզ՝ յանարժան անօթի, բայց և այնպէս աստուածա
յին ողորմութեան ծառայի մէջ, կատարուել է. «Մի՛ հա
մարէք՝ թէ եկի արկանել խաղաղութիւն յերկիր. ո՛չ
կի արկանել խաղաղութիւն, այլ սուր։ Քանզի եկի քա
կել զայր ի հօրէ իւրմէ, և զդուստր ի մօրէ իւրմէ,
զհարսն ի սկեսրէ իւրմէ։ Եւ թշնամիք առն—ընտանի
իւր։ Որ սիրէ զհայր կամ զմայր առաւել քան զիս, ո՛
է ինձ արժանի. և որ սիրէ զուստր կամ զդուստր առա
ւել քան զիս՝ չէ ինձ արժանի։ Եւ որ ոչ առնու զխա
իւր՝ և գայ զկնի իմ, չէ ինձ արժանի....։ Եւ եղիջիք ա
տեցեալք յամենեցունց վասն անուան իմոյ. իսկ որ հա
բերեսցէ ի սպառ, նա կեցցէ[1]»։ Այս մեծ և աստուածա

---

1 Մատթ. Ժ. 34—38, 22.

յին խօսքերն ամրացնեն ձեզ ձեր ընտրած կոչման մէջ և ի ձեզ այդ որոշումը հաստատեցնեն ի սուրբ օծումն մըտնելու և որպէս Աստուծոյ օծեալ երէց գործել կարենալու։ Լսեցէք թէ ինչ էր ասում արևմտեան եկեղեցու մէկ սուրբ այր՝ ձեր՝ աստուածային սահմանմամբ ընտրած կոչման վրայ. «Վեհ է գաղտնիքն և մեծ է արժանիքն քահանայի, զի նոցա տուեալ է այն, որ ինչ չէ տըւեալ հրեշտակաց։ Քանզի միայն եկեղեցում օծեալ քահանայք են, որ ունին իշխանութիւն Քրիստոսի մարմինն և արիւնն օրհնելու և խորհուրդ բաշխելու։ Քահանան է իրօք միայն ծառայ Աստուծոյ, որ Աստուծոյ խօսքը կիրառկում է ըստ Աստուծոյ հրամանին և պաշտօնատրութեան. սակայն Աստուած է, որ աստ առաւելապէս գործում է և աներևապէս ազդում է, որի ներքոյ է ամենայն, ինչ Նա կամենում է, որին ամենայն հնազանդում է, ինչ որ Նա հրամայում է [1]»։

Արդ եթէ դուք լրջութեամբ մտադիր էք ձեր ազգի վարդապետը դառնալու — գեղեցկագոյն կոչումն, զոր ես երևակայել կարեմ մի հայրենասէր և ազգասէր հայի համար՝ — փորձեցէք ձեզ Աստուծոյ առաջ հանապազօր և ամրացրէք ձեզ եռանդուն պատուիրանքներով առ Քրիստոս մեր միակ Տէրն և միջնորդն, որպէս զի Նա ձեզ ույժ շնորհէ ձեր ազգի վերածնութեան համար ամբողջ հոգով և քաջակամութեամբ գործելու։ Աստուած օրհնէ ձեզ, ձեր ընտրեալ գեղեցիկ կոչման մէջ։

Դուք գիտէք, սիրելի բարեկամդ իմ, որ ես իմ պարապմունքներով նուիրուած եմ արևելեան հին ազգերի պատմութեան ուսումնասիրութեան. թէև աշխարհական, մեծ ուշադրութիւն եմ դարձրել ի սկզբանէ թէ եկեղեցական պատմութեան և թէ քաղաքակրթութեան պատ-

---

[1] Թովմաս, Յաջորդութիւն Քրիստոսի. IV. 5.

մուլթեան էական մասին և ըստ նմին բերման զբաղուել եմ բաւական մանրամասնաբար Անտիոքայ առաքական եկեղեցու, Եգիպտոսի Ս. Մարկոսի և Հայոց Ս. Գրիգոր Լուսաւորչի եկեղեցեաց պատմութեանս։ Ես չեմ կարող գերմանական ուսումնականաց հասկանալ, որոնք անզգամ, ընդ նմին և անհամաձայն ու յիմար միտք յառաջ բերին, որ իբր թէ Հայոց ազգային անբաղդութիւնն է եղած քրիստոնէութեան ընդունելը։ Իբր թէ Հայոց ճակատագիրն է եղել իւրեանց լեզուակից և բարոյակից Պարսիկների հետ մազդեզն խոստովանել։ Ի՞նչ խենդութիւն. ընդունած լինէին Հայք կրակապաշտութիւնն՝ այդ տաղտկագոյն և չնչինագոյն հեթանոսութեան մեծ վարդապետութեան մէջ, այն ժամանակ, Է դարում, երբ Իսլամն սուսմունքով արևելքը նուաճեց, Հայք մահմետական կրօնային և այսօր լաւագոյն դրութեան մէջ անգամ կլինէին ղուրբանապաշտ աւազակներ, որպէս իւրեանց հարևան Քրդերը։ Քրիստոնէական վարդապետութեան խոստովանումն բերաւ Հայոց համար բոլոր դարերում սարսափելի հալածանքներ և շատ արիւնաթօր նահատակութիւնք։ Պէտք չէ ձեզ՝ տեղական պատմութեան ճշտագոյն գիտացողին, երկար մանրամասնել, ո՛րպիսի՞ սոսկալի նեղութիւնք կրելու ստիպուեցան Հայք Սասանեան Պարսիկներից, արաբական խալիֆներից, Թիւրքերից և Նոր-Պարսիկներից։ Սակայն աղէտից բոլոր դարերում հայ ազգը պահպանել է իւր թանգագոյն գոհարն՝ իւր քրիստոնէական հաւատն, և ջահը չէ՛ շարժուել։ Վասնորոյ և Աստուծոյ օրհնութիւնն իջնում է յայտնապէս Հայոց առատահանճար ազգի վրայ և ես հաստատ համոզուած եմ, որ ապագայ դարերում հայ ազգը դեռ մեծամեծ իրաց համար է սահմանուած։

Բայց իւր ապագայ տիեզերապատմական կոչման քաջաբար նախապատրաստելու համար, ազգը պէտք ունի հաւատարիմ և նախանձաւոր վարդապետների, լուրջ խը-

րատող հոգևորականների և օծեալ սուրբ քահանաների, որոնք իւրեանց հաւատացեալ հօտն առաջնորդեն Քրիստոսի շաւղաց վրայ։

Այսօր ցաւալի է, որ ժողովուրդը բազմապատիկ խրուել է արտաքին ծիսապաշտութեան մէջ. նորա նշանաւոր անդամք գերագոյն վաճառականներ են, սակայն այնպէս խրուելով՝ երկրային բարեաց, ոսկու և արծաթի ետևից ընկած, որ նոքա յայնժմ մոռանում են ճշմարիտ մարգարիտն առնելու, զոր յայտնի վաճառականն աւետարանի մէջ էր փնտռում և երբ գտաւ զայն, ծախեց իւր բոլոր ստացուածքն այդ թանկագին գոհարը ձեռք բերելու համար։ Անհաւատութիւնն, որ մի կիսատ և անհիմն իւրացմամբ արևմտեան լուսաւորութեան հետ զինքն թեթևապէս միայն զօդել է, յաջողութիւն է ունեցել, որպէս դուք ինքներդ խոստովանեցիք; նաև Հայկի զարգացեալ որդոց մէջ և թէ հարկաւ զարգացելոց և մանաւանդ ժողովրդի մէջ բազում ճշմարիտ և համոզանաւէր քրիստոնեայք իսկ կան, այնու հանդերձ միւս կողմից՝—որպէս շատ ժողովրդապէտների տեղեկութիւնք համաձայնում են՝—քահանայից և աշխարհականաց մօտ քրիստոնէութիւնը մասամբ սուզուել է արտաքին ձևապաշտութեան մէջ։ Ուստի յիշեցէք Դուք Եսայի մարգարէի սոսկալի խօսքերը, զոր Քրիստոս Տէրն մեր և Փրկիչն ասաց առ հրէաները. «Կեղծաւորք՝ բարւոք մարգարէացաւ ի վերայ ձեր Եսայի՝ և ասէ. ժողովուրդս այս շրթամբք պատուէ զիս, և սիրտ իւրեանց հեռացեալ մեկուսի յինէն»[1]։

Աստուած մի՛ արասցէ որ այս սոսկալի խօսքերը Հայկայ ժողովրդի վրայ ստուգուին և նա աստուածային հրամանով նման դատավճիռ կրելու ստիպուի, որպէս

---

[1]) Մատթ. ԺԵ. 7։

Հրէից դժբախտ ժողովուրդը։ Ուստի վեհագոյն է խնդիրն, ու մնում է այդ ժողովրդի ուսուցչին։ Դուք պէտք է Հայոց վերստին երկիւղած և քաջ ժողովուրդ դարձնէք որպէս եղել են ս. Գրիգորի, ս. Սահակի և ս. Ներսէսի օրերում։ Յիշեցէք որ ինչ ս. առաքեալն Պետրոս իւր առաջին թղթում առ հաւատացեալքն ասում է. «Դուք ազգ էք ընտիր, քահանայութիւն թագաւորական, ազգ սուրբ, ժողովուրդ սեպհական, որպէս զի զձեր առաքինութիւնս նուիրիցէք այնմ՝ որ զձեզ ի խաւարէն կոչեաց յիւր սքանչելի լոյսն։ Որք երբեմն չժողովուրդ՝ բայց արդ ժողովուրդ Աստուծոյ. որք չողորմեալք՝ այժմ ողորմութիւն գտիք»։

Ո՜ փառաւոր է կոչումն վարդապետի, որ պէտք է գործէ իւր ազգն Աստուծոյ սեփականութեան ժողովուրդը դարձնելու։

Մեր դարում արևմտեանների մէջ զարթել է շահագրգռութիւն արևելեան ազգերի նկատմամբ։ Անգլիան և Հիւսիսային Ամերիկան, նաև Գերմանիան և Զուիցերիան բազմաթիւ քարոզներ են առաքել, որոնք Հայոց մէջ, Ասորիքում և Կոպտերի մէջ գործել են ուզում։ Այդ ճշմարիտ ճանապարհը չէ. նոքա ուզում են իւրեանց անգլիական, իւրեանց նորոգող կամ լութերական եկեղեցին Հայոց շատ հնագոյնին վերը կապել։ Իմաստութիւնը պիտի զինքն պատժել տայ իւր որդիներին։ Այդ չէ ճանապարհն, որով Հայաստանեայց ս. եկեղեցու վերածնութիւն են բանում. այդ պարտ է ի ներքուստ կատարուի։ Այն օտար պատուիրակները բերում են, որպէս Հռովմայ որդիքը, երկպառակութիւն և բանակռուութիւն Քրիստոսի Փարախը։ Գիտեմ, որ շատ աւետարանական (Հռովմաբողոքական) քրիստոնեայք դատապարտում են այդ քարոզութիւնն արևելեան ժողովրդոց մէջ։ Մենք ուրախանում ենք, երբ Հայկայ որդիք գալիս են առ մեզ և արևմտքում արևմտեան զարգացումն և գերմանական գիտու-

թիւն սեփականում. բայց ապա ոչ թէ օտարք, այլ նոքա պէտք է իւրեանց ժողովրդի մէջ գործեն և նոյա ուսուցանեն և լուսաւորեն, որ նա, որպէս նախկին դարերում, վերստին մի երևելի դիրք բռնէ ուսեալ ազգերի մէջ։ Ես համոզուած եմ, որ թէ Հայաստանը լուսաւորուող տեղացի քահանաների միջոցով մի նոր կենսազօր քրիստոնէական հաւատքի հասնի, այն ժամանակ ազգային կեանքն ևս նոր զօրութեամբ կըզարթնի և Էջմիածնի փառքը վերստին կըծառագայթի, որպէս հին ժամանակները։

Խնդիր մի մեծ սպասում է դեռ հայ ազգին և մանաւանդ նորա սուրբ եկեղեցուն, իւր քահանայից և վարդապետաց. բոլոր այն ժողովրդոց մէջ, որոնք հին եկեղեցու, Կիւրեղ Աղեքսանդրացու և այլ սուրբ հայրերի հաւատքին հաւատարիմ են մնացել, այն է՝ Եգիպտացոց, Ասորոց, Եթովպացոց և Հայոց մէջ, Հայկայ որդիք միակն են, որոնք կատարելապէս և ամբողջապէս իւրեանց որդոց մեծ մասամբ՝ սեփականել են արևմտեան քաղաքակրթութիւնը, վասն որոյ և մեծ առաւելութիւն ունին իւրեանց եղբայրներից ի Քրիստոս, ըստ որում և նոցա է մնում մէկ մեծ պատասխանատուութիւն. նոքա են Քրիստոսից՝ ճշմարիտ հովուապետից՝ հաստատուած, որոնք այդ հնագոյն և մեծայարգ եկեղեցեաց մէջ պիտի հսկեն, որպէս զի աւետարանի և առաքելոց և ս. հայրերի աւանդած ճշմարիտ վարդապետութեան ջահը չհալուածուի։ Արդ եթէ Հայոց եկեղեցին բազմաթիւ քահանաներ վերըստին ունենայ, որոնք քարոզեն հին եկեղեցու վարդապետութիւնն ու հաւատն անկեղծութեամբ և սրբութեամբ, և բոլոր սրտով ու հոգով՝ ոչ թէ մարդու՝ այլ Աստուծոյ գործ կատարել կամենան, յայնժամ պարտ են նոքա նաև այդ տկար եղբայրներին ընդունել և զօրացնել նոցա, նոցա, որոնց որոգայթ են դնում Հռովմայ պատուիրակ եզուիթներն և ցաւալի է, որ շատ Ասորիք և

Կոպտեր դոյա Թակարդի մէջ են ընկնում։ Հաբեշստանում լաւագոյն է. այնտեղ քրիստոնեայ կայսրներն՝ Թէոդորոս և Յովհաննէս ս. բարեպաշտակութեամբ վռնդեցին այդ ոչխարազգեստ գայլերին, նաև նոր Թագաւորեալն Նեգուս Նեգեստէ Մենելէքն Շօայի՝ մի հաւատարիմ որդի է ս. Մարկոսի եկեղեցուն։

Ըստ իմ մասնաւոր կարծեաց, զոր որպէս աշխարհական և օտար առաջարկում եմ միայն բոլորովին խոնարհաբար, յարմար ժամանակ է, որ, եթէ աշխարհական կառավարութիւնք դժուարութիւն չեն յարուցանում, կաթուղիկոսն ամենայն Հայոց պէտք է հնադաւան եկեղեցիներից մի ժողով գումարէ կամ յէջմիածին կամ ի Կարին, ըստ որում հրաւիրելի են նախ, երկոքին կաթուղիկոսք Սսոյ և Աղթամարի, Կ. Պոլսի և ս. Երուսաղէմի պատրիարքներն, Հայաստանեայց ուղղափառ եկեղեցու համօրէն արքեպիսկոպոսք և եպիսկոպոսք և նշանաւոր վանահայրերն ու վարդապետները։

2) Ս. Պետրոսի Անտիոքայ աթոռի յաջորդն՝ ուղղափառ Ասորոց այսպէս կոչուած Յակոբիկների ի Մերդին և արևելքի Մափրիանների պատրիարքը և ընդ նմին բոլոր արքեպիսկոպոսք և եպիսկոպոսք և յայտնագոյն վանահայրերն Ասորոց ս. եկեղեցու։

3) Ս. Մարկոսի Աղեքսանդրիոյ աթոռի յաջորդն, ուղղափառ Եգիպտոսի պապն և արքեպիսկոպոսն Եգիպտոսի, Լիբիայի և Պենտապօլսի իւր բոլոր կոպտական եպիսկոպոսներով, հանդերձ նիթրական և սկետական անապատի վանքերի, այլ և Ամբահակեր, Մարքօլոս, Մար Անտօնիոս, ընդ նմին և նիթրական անապատի Ասորոց վանքերի առաջնորդներով։

4) Ներկայացուցիչք ս. Մարկոսի աթոռից կախեալ Եթովպական քրիստոնէից՝ միտրապօլիտն կամ Աբունան Հաբեշստանի և վանապետն Դեբրա Տաբօրին ի Շօա և այլ

քանի մի երևելի, և ուսեալ հոգևորականք եթովպական բարեպաշտ ժողովրդի։

Եթէ կարելի լինէր՝—թէև ինքս նախապէս տարակուսում եմ արտաքին պատճառներից՝—այդպիսի մի ժողով գումարել, նա նոր վարդապետութիւն չէր ունենալ աւետարանելու, որ ուղղափառք վերաթողում են ի վատիկանին Հռովմայ ժողովեալ՝ ճշմարտութիւնից մոլորուող արևմտեան եպիսկոպոսաց։ Այլ Հայոց, Ասորոց, Եթովպացոց և Եգիպտացոց ս. եկեղեցեաց սրբազան պատրիարքներն, եպիսկոպոսներն և վարդապետները միացած կըխոստովանէին, որ իւրեանց հաւատն հանուր է և նոյն, զոր ս. առաքեալք Քրիստոսի բերանից լսելով, մեզ են աւանդել, զոր առաջին դարերի ս. հայրերը թողել են յետնոց, զոր 318 հայրերն ի Նիկիայ (325-ին) և 150 ի Կ. Պոլիս (381)—ի Նորն Հռովմ և 200 հայրերն յԵփեսոս (431) հաստատել են և որ յաւէտ ճշմարիտ և անկեղծ հաւատքն է եղել այդ չորեքին եկեղեցեաց։ Եկեղեցու սրբազան և բարձրագոյն Վարդապետաց այդպիսի մի հրապարակական և հանդիսաւոր խոստովանութիւն ս. հայրերի ճշմարիտ հաւատքի՝ անշուշտ մեծ ազդեցութիւն կըգործէ ազգերի վրայ, կամրացնէ տատանուողներին և կոչնչացնէ Հռովմայ խարդախ յարձակմունքը։

Ընդունեցէք այս խոնարհ խօսքերն, այնպէս՝ որպէս են, խօսքերն Հայաստանի մի հաւատարիմ բարեկամի, որ աղօթքի և բարեխօսութեան մէջ յաճախակի յիշում է զազգն Հայոց։

Հ. ԳԵԼՑԵՐ.

Ենա, մայիս 25, 1890,
Հոգեգալստեան ս. տօնին.

Նամակն ինքն իւր համար խօսում է ազդուապէս, ըստ որում և պատուաւոր տեղ բռնելով ազգային պատմութեան մէջ, ականաւոր տեղ է տալիս իւր մարդասէր

Հայապէտ գրողին ճշմարիտ Հայասիրաց փոքրիկ շարքի մէջ։ Հայասէրներ շատ կան, բայց մարդասիրական գթութեամբ, իսկ գիտաստ ճշմարիտ Հայասէրք շատ հազուագիւտ են, որոնցից է և Գելցեր ուսուցչապետը։

Աւասիկ, այսպէս են վերաբերւում գերման գիտնականք առ Հայաստանեայց պատկառելի եկեղեցին։ Դոյն գիտնականներից եկեղեցական պատմագէտ Ֆրիդրիխ Նիպպօլդն՝ իմ բարեկամն էր, որ խնդրելով իսկ յորդորեց նուաստիս Հայաստանեայց եկեղեցու հիմնական պատմութիւնը գերմաներէն տալ եւրոպացոց, զոր և ուրախութեամբ կատարելով, կարիլի ընդարձակութեամբ և աղբիւրների մանրամասն յիշատակութեամբ[1] ի լոյս ընծայեցի, ըստ կարեւոյս զոհողութիւն չխնայելով։ Այդ նոյն գործին քաջալեր եղաւ և եկեղեցական գաղտնի խորհրդական, ուսուցչապետ Ռ. Ա. Լիպսիուս հռչակաւոր դաւանաբանն ու քննաբանն։

Հերիք է յիշատակել օտար քաջալերիչներին, եթէ օտարաց կողմից այդպէս է, մի՞թէ Հայաստանեայց եկեղեցու ինքնագիտաստ որդիք անտարբեր կըգտնուէին։ Ահա իմ բարեկամներից բժ. Միսաք Արամեան անխոնջ բանասէրը Հայերէն ևս բացատրած տեսնել կամեցաւ Հայոց եկեղեցու հիմնական պէտքերն, առանց գիտենալու որ նոյն գերմաներէն տալու էի հետամուտ։ Այս ձայներն ուրախացրին և եկեղեցու անձնուէր նախանձախնդիր իմ մօրեղբայր հանգուցեալ գնդապետ Աղեքսանդր Մելիք-Հայկազեան մեծանձն Հային, որ գիտէր տալ «զկայսրին կայսեր և զԱստուծոյն Աստուծոյ», որի սիրտն շարունակ այս ս. գործի հետ բաբախելով, աչքերը յառել էր պայծառ ապագան տեսնելու։ Նա ըստ ամենայնի Հայաստանեայց եկեղեցու

---

1) Die armenische Kirche in ihren Beziehungen zur Byzantinischen, vom IV bis zum XIII Jahrhundert. Leipzig 1892. Gustav Fock.

համար շնչելով, օրինակ մի էր հաւատարմութեան և անտխեղծ նուիրման. նա քաջալեր էր բառի բուն մտքով, նա եղբայր էր և թևակից իւրաքանչիւր ինքնագիտակցի, ում մէջ աստուածային սերմի փոշեհատ իսկ էր գտնում, նա խուլ չէր, սակայն իւր սրտից բղխած հոսանքներին պտուղ մի տեսնել էր փափագում: Նա հանգեաւ այդ փափագանաց մէջ, անցնելով իւր նմանների անմահ շարքը:

Տխուր մշուշի տակ կեանքն անգամ հովի պէտք ունի…: Մինչդեռ մերթ ընդ մերթ քաջալերների ձայնը գալիս էր, Հայաստանեայց եկեղեցու գեր. արթուն հովիւներն և անմահանակից չմիացին: Մաղաքիա եպիս. Օրմանեան և Արմաշի նորափթիթ վարժարանից իւր հայրական ձայնը պարզեց ի քաջալերութիւն: Ահա և Հայաստանեայց եկեղեցու ս. Աթոռից նորա հզօր հովանաւորին, հանգուցեալ ուսումնասէր Հայրապետն օգնական ձեռք կարկառեց: Այնուհետ և գեր. Ներսէս եպիս. Խուդավերդեան մեր այդ լուսավայրից իւր նպաստաւոր ձեռքը չմերժեց:

Անցեալ գլուածքս բարեյիշատակ Իզմիրեանի բազմօգուտ կտակի տրամադրութեան ներքոյ և ահա Սահակ-Մեսրոպեան մրցանակաբաշխութեան պատիւն ունեցաւ: Յանձնաժողովն և առանձնապէս քաջալեր եղաւ և գըրուածիս հրատարակութեան փափագեց: Յիշեմ արդեօք և այն քննադատութիւնն, որ տուաւ գեր. Եղիշէ Դուրեան բանասէր վարդապետը, սակայն չնայելով գործի ծանրութեան, գլուխ բերուածի կարևորութեան, այնու հանդերձ քաջալերութեան լծակից եղաւ և առաւելագոյն պահանջը: Չկար սակաւը, կարօտը շատ էր. եղաւ սակաւն և ահա իւր համառօտութիւնը շատերին բաւականութիւն չէ տալիս. Հայաստանեայց եկեղեցու մի խնդիրը պարզողից պահանջւում է դեռ ամբողջ պատմութիւնը, գրականութիւնն, այլոց գրուածների քննադատութիւնը, զանազան ցնդեալ բազքաղանաց հերքումն և ամենայն ինչ տալ:

## Ի.

Պատճառն այն է, որ մինչև այժմ Հայոց պատմութեան, գրականութեան և ոչ մի կողմը չէ հետազօտուած և Մխիթարեանց գրուածները փոշի են փչել բանասէրների աչքերին։ Մի՞թէ հարկ կայ օրինակներ բերելու և ցոյց տալու թէ քանի քանի մեքենայութիւնք և ստութիւնք են ամփոփուած դոցա գրուածոց մէջ։ Մխիթարեանք իւրեանց հաւատքն առ ստութիւնն ուղղելով, ստութեան մէջ լիապէս ծածկուել են. ցաւ է միայն, որ յիշող չեղաւ այն սուրբ խօսքերը թէ «որ հաստատէ ի ստութիւն՝ այնպիսին զհողմս արածէ»։ Հողմ արածել չէ հապա՝ ի՞նչ է այն ստաբանական ոճն, որ գտնում ենք նոցա ստուարակարկառ գրուածներում. դէպք չմնայ որ ստութեանց այդ ուռճողք չկեղծեն. նոյն իսկ չեղած անձինք, չեղած թղթեր եղած հրատարակուեցան և այդ ամենը յարդարուեցաւ Չամչեան իմաստակի ժամանակագրական վրիպատախտակի յառաջավարութեամբ։ Հէնց այսօր այդ անրջասէր «կղզիաբնակներ»-ը չեն խորշում ի սէր Հռովմայ՝ ազգային պատմութեան ճշմարտութիւնք տակն ու վրայ անելուց, ըստ որում և փառաբանում են զարդարուն բանակցյաների հեղինակները պատմութեան հոտը չիմացողներից։ Խօսքով գովասանել ներբողել, մանկական հեշտազգացութեամբ փառաբանել և իրօք վատաբանել, կեղծաւոր, հաւատադրուժ, գող, ստախօս դուրս բերել Հայոց կաթուղիկոսներին . . . այս է դոցա արհեստը, որ եզուիթ բարոյագիտութեամբ դատապարտելի չէ, վասն զի ի սէր Հռովմայ է կատարւում։ Հայաստանի սար ու ձորը, դաշտն ու շէնը գուրգուրալով նկարագրել, հինգ տողով լանձը յիսուն տողով արտայայտել, անապատը ծաղկազարդ դուրս բերել, սակայն նորա ամբողջութիւնից Իտալիայի Հռովմ քաղաքը կամ Վենետկի կղզին գերադասել, զի այնտեղ եկեղեցական իշխան մի է նստած և Մխիթարեան «սուրբ հայրերն» են բնակւում, այս է նոցա ոճը։

Արդ մի՞թէ հայն իւր նախնեաց պատմութիւն պիտի համարի ղոցա գրչէ արդիւնքը. մի՞թէ անտարբեր աչքով կնայէ այն պատկերներին, որոնք շղյուած են եղուխթու-թեան մէջ թաթաւած ձեռքերով, մի՞թէ հաւատ պիտի ընծայէ նոցա, որոնք պատմական աղբիւրներն անգիտանալով, ըղձալով և բաղձալով են ապացուցել ուզում իւրեանց հէքիաթները: Բաւ և մի՛ լիցի. կուրութեան դարն անցել է և եթէ Մխիթարեանք իւրեանց խղճի խայթը շոյելու համար նախնեաց իսկ իւրեանց շարքը դասել են ջանում, այդ ինքնախաբութիւնը պիտի իւրեանց վարձը լինի. . .

Հեռու կըտանէր, մեզ եթէ մի առ մի թուէինք և կամ օրինակներ բերէինք. փափագողք կարեն այդ տեսնել, համեմատելով ներկայ գրուածքս և յիշատակուած աղբիւրները Մխիթարեանց հագածաբանութեանց հետ. իսկ եթէ հարկը ստիպէ, անհրաժեշտ բացատրութիւններ կը տանք մենք ուրախութեամբ, վասն զի այժմ ձգտելով համառօտութեան, հնարաւորութիւն չկայ խնդրից դուրս գալու և ուշադրութիւն դարձնելու այն հեղինակութեանց վրայ, որոնք ինքեանք ինքեանց կջրեն, երբ իրականութիւնք իսկ խօսել կսկսեն. . .

Արդ եթէ նման անցաւոր խնդիրներով պղտեցնէինք ընթերցողներին, չէ՞ որ վերջինս կստիպուէր մանրամասնութեանց մէջ բուն գործը կորցնել: Բայց պարտաւոր չենք ամենայն մի զառանցողի անթիւ ստերը մի առ մի հերքել, իսկ եթէ այդ կամեցող կայ, թող յանձն առնէ կարևոր հոգատարութիւնը, պատրաստ եմ առանձին գրրութեամբ կատարելու, զի օր. Զամչեանի պատմութիւնը քննաքանելու համար, հարկ է երկու անգամ մեծ գիրք մի գրել: Պէտք կայ և գրականութեան հետազօտութեան, որի շրջանում միայն մի երկու օրինակ կայ և այդ է հայ ուսումնական՝ Գարագաշեանի «Մովսէս Խորենացին» և

Խալաթեանի «Ղազար Փարպեցին և գործք նորին»։ Ո՞ւր կերթայինք եթէ այդ ամենայն մանրամասնօրէն յառաջադրէինք։

Ներկայ գրուածքս քանի մի որոշ խնդիրներով է զբաղւում. իսկ երկրորդական հարցերը միայն գործի լըրութեան համար պիտի համառօտապէս յիշատակուեն. մանրամասն ուսումնասիրել կամեցողը պէտք է ինքն եւս աշխատի և նշանակուած աղբիւրները բանալով՝ հետամուտ լինի. իսկ որոնք արտաքին աղբիւրներն եւս ձեռնահաս են տեսնելու, պիտի ստիպուին գերմաներէն գրութեանս դիմել։ Շատ և շատ հանգամանքներ, այլ և անհրաժեշտութիւնը ստիպում են մեզ այս գրուածքը համառօտ թողնել, աւելին ապագային պահելով և կամ յուսալ որ նոր ձեռքեր ելնեն Ս. Էջմիածնի գիտութեան տաճարի ինքնագիտաստ զաւակներից և Թերևս Արմաշի վարժարանի ծաղկման ուսավայրից, ուր երիցագոյն աշակերտներն արդէն կայտառելու թըթիռներ են ցոյց տալիս գիտութիւնը թևակոխելու։ Այդ երկու աղբիւրներն եմ յիշում, զի դոքա են, որ կարեն ձեռնհաս լինել գըրչագրաց մատենադարաններին նուիրուելու՝ ս. գործին զոհուելով, եթէ իրաւ պահ մի մտածում են Ե դարի աստղերի վրայ, առանց անյատակ հօսանքի ենթարկուելու...

Այսչափ նկատելուց յետոյ չմոռանանք յիշել, որ գրուածիս աղբիւրներն են Հայոց՝ գլխաւորպէս՝ ականատես աղբիւրները, մանաւանդ Թղթեր ու Նամակները։ Յետագայ մատենագիրները միայն համեմատական արժէք ունին։ Իսկ օտար եկեղեցեաց աղբիւրներն իւրեանց մատենագիրներն են և ոչ հակառակորդներին. վասն որոյ վերջինների նկատմամբ եւս յիշատակել եմ միմիայն այն գրութիւնք, որոնք նոցա մէջ ընդունուած և ի յարգի են։

Հուսկ ապա ինչ որ մեր խնդրին է վերաբերում և որքան աղբիւրները ներում են, կյիշատակուեն պատմա-

*կան ստոյգ հիմնաբանութեամբ. երկրորդական հարցեր չեն շօշափուիլ, իսկ իղձ ու բաղձանքները, վարկած ու թեթուքները կմնան լայնածաւալ թուղթ մրոտել փափաքողներին։ Հիմք կայ մեծայոյս լինելու, որ ունեցողին այս փոքրիկ գրուածը շատ կտայ,—զի բովանդակում է աւելի քան ճշմարտասէր անձինք թախանձագին պահանջում են,—ըստ այնմ թէ «որ ունիցի տացի նմա և յաւելցի»։*

ԱՐՇԱԿ ՏԷՐ-ՄԻՔԵԼԵԱՆ.

*Ենա.* 1891 *սեպտ.* 29.



# ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԵԿԵՂԵՑԻՆ

ԵՒ

# ԲԻՒԶԱՆԴԵԱՆ ԺՈՂՈՎՈՑ

## ՊԱՐԱԳԱՅՔ

---

## Ա.

### ԱԿՆԱՐԿ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԵԿԵՂԵՑՈՒ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՎՐԱՅ:

*«Կացէք յիս և ես ի ձեզ. որպէս ուռն ոչ կարէ պտուղ բերել յանձնէ իւրմէ, եթէ ոչ իցէ հաստատեալ յորթն, նոյնպէս և դուք՝ եթէ ոչ յիս հաստատեալ՝իցէք»:*

ՅՈՎ. ԺԵ. 4.

---

*Թշնամութիւնը խորին հաստատութիւն էր ստացել ի հնումն հռովմէական պետութեան և արեւելեան ժողովրդոց մէջ. Հռովմ յառաջ տանելով իւր աշխարհակալական ձգտումներն, ոչ միայն փոքր Ասիոյ պետութեանց դէմ կռւում էր, այլ ճգնում էր նոցա ուժասպառ անելու, խռովութիւնք մտցնելով նոցա մէջ և կռուացնելով թէ իշխողաց իրար հետ և թէ նոցա որդոց իւրեանց հայրերի դէմ։ Այս ձգտումները լաւ հասկանալով և մանաւանդ ձանձրացած Աղեքսանդր Մակեդոնացու*

լծից, ջանահար եղան այդ երկրների ցեղակից ազգերը միանալ և միահամուռ ոյժով ապահովուիլ հռովմէական ահեղ բռնութեանց դէմ։ Ժողովուրդ իսկ «բարբարոս» նախատական խօսքին արժանանալով հռովմայեցիներից, խորին ատելութիւն էր տածում դէպի նոցա, ըստ որում և Արշակունեաց հզօր ձեռքը հեշտութեամբ կարողացաւ միացնել նոցա մէկ դրօշակի տակ. թէ. քանի հեշտ էր այդ՝ երևում է հէնց նորանից, որ այս ու այն կողմերում հռովմայեցոց նշանակած հռովմայեցի իշխողք չէին կարենում յարատևիլ, մինչդեռ Արշակունեաց վերջինն անգամ պատիւ և մեծարանք էր գտնում բնիկներից։ Զօրացան Արշակունիք և մէկ բուռն պատուար հաստատեցին արևմուտքի դէմ. քանի որ այդ ցեղը հզօր էր, հռովմայեցոց ոչ մի խարդաւանանքը չկարեցաւ յաջողութիւն գտնել, ըստ որում և ապահով էր այդ պետութեանց դրութիւնը։ Սակայն այդ մշտակեաց չեղաւ դոցա ներքին խոպան կառավարութեան պատճառով և 224—226-ին Արտաշէս Սասանեան խորտակեց Պարսից արքայ Արշակունի Արտաւանի իշխանութիւնն, ինքն գահ բարձրացաւ և արիւնակալ աչքերով սլացաւ ընդդէմ Հայոց Արշակունի տոհմին։ Խոսրով Ա. ստիպուեցաւ միայնակ դէմ ելնել, բայց և այնպէս ուժգին յետ մղեց նորան և ապա ջանահար եղաւ այլ դաշնակից որոնել։ Հռովմ քաղաքականապէս հակառակ գոլով այդ երկրների միահեծութեան, բնականաբար ձեռք պիտի տար Խոսրովին Պարսից ոյժը թուլացնելու, ըստ որում և արիւնակցի արեան վրէժխնդրութիւնը յառաջ բերաւ մշտական ոխակալութիւն այդ երկու տոհմագահերի միջև։ Խոսրով սպանուեցաւ 235—236-ին, այսինքն Արտաւանի անկումից 10 տարի յետ։ Նորա որդին Տրդատ փախցուեցաւ և հռովմայեցոց օգնութեամբ ու Արտաւազդ Մանդակունի՝ հայրենասէր զօրավարի աժանդակութեամբ, որին արև-

մտեանք թագաւոր են կոչում, քանի մի ջանքերից զկնի, 261-ին թագաւորեց (որ է ըստ Խորեն. մօտ 27 տարի Խոսրովի մահից յետոյ)։

«Մեծն» Տրդատ իւր պետութիւնը զօրացրեց, սակայն այլ ձեռքեր էր վիճակուած ազգի ինքնագիտաստութեան և նորա հոգու յաւիտենական ինքնուրոյնութեան զարկը. այդ կրօնի գործն էր։ Այդ Հայոց կրօնը խառնուրդ մի էր դարձել պարսկական և հռովմէական հայախորթ տարրերի, ըստ որում և ազգային չէր և փչացնում էր ժողովրդի յատուկ բնոյթն և օտարացնում նորան, չհայացնում. զտելու, նորոգելու հնար և առիթ չկար, դարձեալ աստուածայինը պիտի՝ որպէս մարդուն բնակից՝ հային ևս օգնութեան հասնէր, նորանը դառնար։ Այդ աստուածմարդկայինը—քրիստոնէութիւնը պիտի բանար ժողովրդի աչքն ու միտքն, որպէս զի նա հեթանոսութիւնից վերջընդմիշտ չկուրանար և վտանգի չենթարկէր իւր անպայման գոյութիւնն, անցաւոր պայմանաւորութեան հետ կապուելով։

Առաքելոց ցանած սերմերը աճում էին. նոցա յաջողութիւնը յարատևում էր ի Հայաստան։ Հայոց Մեհրուժան հայրապետը նահատակուեցաւ, ընդ նմին և քրիստոնեայք սոսկալի հալածանքի ենթարկուեցան (Ագաթանգ. ԺԲ.)[1], սակայն դոքա այնպէս զօրացել էին արդէն, որ Տրդատի քարացած սիրտն իսկ շարժուեցաւ Գրիգոր Լուսաւորչի՝ իւր սիրելու չարչարանքից. ուժգին եղաւ նորա հոգեկան ցնցումն, ապա և բուռն եղաւ նորա գործունէութիւնը. նա ընդունից քրիստոնէութիւնը քաջալի շահա-

[1] «Դիոկղետիանոս» ինչպէս և «Սեղբեստրոս» հին սխալներ են առ Ագաթ.: Հին մատենագիրք տարաժայն էին Տրդատի ժամանակի նկատմամբ. զոր. Ագաթ. և Զենոբ, որոնց միաբանեցրել են յետինք. տես Ուխտ. եպիսկ. I. Հ.

տակութեամբ և Վաղերիանոսի հալածանաց ժամանակները, 276-ին առաջին անգամ աշխարհի վերայ քրիստոնէութիւնը պետական կրօն դարձրեց, ընդ նմին հրովարտակ հանեց, մունետիկ յղեց ամենայն կողմ քրիստոնէութիւնն ընդունելու (Ագաթ. ԾԺ.). բորբոքուեցան Պարսիկները և փրփրեցան հռովմայեցիք, մինչև իսկ Մաքսիմինոս յարձակուեցաւ Տրդատին պատժելու, բայց յետ մղուեցաւ: Քրիստոնէութիւնը մտաւ Պարսկաստան. այդ կողմից ևս դարեր շարունակ հալածանաց հնոց վառուեցաւ ի պաշտպանութիւն իւր հայրենի կրօնին: Հայերն եւ Յունացին երկու թշնամեաց մէջտեղ և ոչ մէկի դաշնակցութեան չյուսալով, սկսան նկրքին ամրութեան աշխատել: Ահա այս քաղաքական տրամադրութեան ներքոյ Գրիգոր Լուսաւորիչ Պարթեւն ու պետականը կազմակերպեց իւր եկեղեցին յօգուտ իւր սիրած ազգին, զօրութիւն տալով նորա ինքնուրոյն ոգուն, ներշնչելով այնպիսի ինքնագիտաստութիւն, որ պանծացաւ դարերի ընթացքում ահեղ մաքառման մէջ: Նա այդ արաւ աննման իմաստութեամբ, որ կարճատես աչքին իսկ պարզապէս նկատելի է: Նա ժողովրդականացրեց քրիստոնէութիւնն, ազգայնացրեց, մեհեանների տեղ եկեղեցիք շինեց և հեթանոսական կալուածներն վանքերին թողեց. քուրմերին կրթեց, քահանաներ դարձրեց, առանց նոցա յարաբերութիւնը ժողովրդի հետ փոփոխելու, ըստ որում հայը տեսաւ ո՛չ թէ նոր կրօն, այլ իւրը վեհացած: Հայն սկսաւ հային եղբայր կոչել և քանի որ Ս. Գրիգոր «հոգւոյ և մարմնոյ» համար էր ջանում միանգամայն և «վասն հասարակաց», ուստի եկեղեցին և ազգը լրացնում էին իրար. եկեղեցին տուաւ ոչ միայն անձնազոհ եկեղեցականներ, այլ և քաջարի զօրապետներ և զինուորներ. Աստուած սիրողը, պիտի սիրէր և իւր ազգն և իւր հայ եղբօրը. մեռնել ազգի համար—աստուածային գործ էր, որպէս հայ զօրա-

վարն իսկ ասում էր Դ դարում՝ «այն ինքն մահ՝ վասն Աստուծոյ է, փոխանակ եկեղեցեաց նորա և ուխտի նորա, և ի վերայ բնակ տէրանց աշխարհիս Արշակունեաց» (Բիւզ. V. ԽԴ)։ Եկեղեցին եղաւ հայի ռամիկի աղբիւրն ամենատառապեալ ժամանակ. «զթագաւորս՝ քաղցրացոյց եկեղեցի, զզազանս ընտելացոյց, զգայլս՝ գառինս արար, զձեզ պայծառացոյց, զթշնամիս ճշմարտութեան ամաչեցոյց» (Փարպ. 551)։ Նա պարզ որոշեց իւր հօտի հաւատալիքն և պատուիրեց չշեղուիլ «ոչ ձախ և ոչ յահեակ», կապեց նորան ուղղակի Աստուծոյ հետ և լիովին միացրեց հօտն իւր յաջորդաց հետ, որպէս որդոց և հարց մի ընտանիք կազմելով։ Նա պատուիրեց Ս. Գրքով կրթուիլ հանապազ և Աստուծոյ նմանիլ, անդադար յառաջադիմել, զի «անցանեն ժամք և աւուրք և ամք, և յառաջադէմն նկրտի». ինքն ևս ձգնելով, անյայտութեան մէջ ծածկուեցաւ, որպէս զի հօտը չյուսահատուի, այլ իւր միջից տայ միշտ արժանաւոր հովուապետ։ Նա օծեց ս. Ռստակէսին և իւր ձեռքի տակ կաթուղիկոսութիւն անել տուաւ, որպէս զի հմտանայ իւր կառավարութեան։ Հայոց նոր Սիոնը Քրիստոսից իսկ հաստատուեցաւ իբրև անմահ կոթող իւր փառաց։ Նոր Սիոն հիմնադրեալ Աստուածանից, Հայաստանեայց կաթուղիկէն «որ ժողովէ զամենայն ժողովս ի միաբանութիւն հաւատոց ի ներքոյ թևոցն իւրոց» (Ագաթ. ԾԲ)։ Իսկ Հայրապետական աթոռը պահապան ազգի, որին հրամայեց Քրիստոս՝ «Զգոյշ լեր աւանդին՝ որ քեզ հաւատացաւ ի Տեառնէ»։ Ուստի անմահ է այդ եկեղեցին և զայն «ոչ ներքինք շարժել կարեն և ոչ վերինք դրդուեցուցանել» (Եղիշէ 78)։ Այսպիսով Աստուած շինում է Հայոց եկեղեցին, Աստուած օծում է Գրիգոր Լուսաւորչին քահանայապետ, աստուածանալն է հայի նպատակը (Ցաճախապատում 16)։ Նոյն իսկ աստուածային հրամանով տարածեց Տրդատ քրիստոնէու-

թիւնն արագապէս։ Եւ որպէս զի ըստ ամենայնի ինքնուրոյն լինի Հայոց եկեղեցին և ապահով օտարից, ս. Գրիգոր Հրաւիրեց ասորի քարոզիչներ և ոչ յոյն, ասորերական պաշտամունք մտցրեց եկեղեցու մէջ և ասորականի վրայով ընթերցուածք (Փարպ. ԺԱ)։ Նա ձեռք մեկնեց և Հայաստանից դուրս իւր ցրուեալ հօտը հովուելու. աւետարանը պիտի կապէր և ցրուեալ Հայոց ի մի, ուստի և Դանէլ ասորի եպիսկոպոսին վերակացու քարոզիչ նշանակեց սահմանից դէնը հեռաւոր կողմեր (Բիւզ. III, ԺԴ)։ Խնդրից շատ կհեռանայինք, եթէ Գրիգոր Լուսաւորչի գործունէութիւնը մանրամասն ներկայացնէինք[1]. այդ այլ ժամանակի սպասող առանձին մի նիւթ է. սակայն յիշելի է, որ վերագոյն թուած աչքի ընկնող կէտերի պսակն է այն ազատութիւնն, որ նա ներշնչում է ամենայն ինքնագիտաստ Հայի սիրտ, կապելով նորան ճշմարտութեան, ազնիւի, բարւոյ հետ և ոչ որ և է անձի հեղինակութեան ենթարկելով։ Եկեղեցու մէջ գտաւ հայն իւր ազատութիւնն և ազատաց հետ միացաւ, ընդ նմին եկեղեցին կապեց Հայոց անցեալն իւր ամենայն փառքով նորա ապագայի հետ և հայկայ ժամաբոյծ որդոց յաւիտենականութեան ձգտող ազգ դարձրեց։ Եկեղեցին ազնուացրեց ազգինը և ոչ թէ փոխեց, վասն որոյ ս. Գրիգոր ասում է հրաշապէս. «ոգւոց և մարմնոց ձերոց պատրաստեցայք, զօգուտն ձեր՝ ձեզ մատուցանել». այս է Հայ ազգի վեհագոյն կատարելութեան սկզբունքը։ Այսպիսով մարմին, հոգի, ազգ, հայրենիք, անցեալ և ապագայ, փառք և գործք, հանգուցեալ քաջեր և կենդանի լաւեր միացան եկեղեցու մէջ ի փառս հայրենեաց և ի զօրացումն հասարակաց։

---

[1] Գրիգոր Լուսաւորչի հռչակը հասկանալու համար բաւ է միայն յիշել, որ նոյն իսկ Դ-րդ դարում և թերևս իւր կենդանութեան միջոցին մինչև անգամ հեռաւոր Կովկասում զօր. Վրաստանում նորա ա-

## Բ.

## ՀՌՈՎՄԷԱԿԱՆ ՊԵՏՈՒԹԻՒՆՆ ԵՒ ՆԻԿԻՈՅ ԺՈՂՈՎԸ.

*«Մարդ ըստ բնոյթին*
*քաղաքական էակ մի է»:*
ԱՐԻՍՏՈՏԷԼ.

*Քրիստոնէութիւնը դուրս գալով Պաղեստինից, հաստատուեցաւ Անտիոքում, ծաւալուեցաւ Եփեսոսում, Աղեքսանդրիայում և մտաւ հռովմէական պետութեան մայրաքաղաքը՝ Հռովմ: Հեթանոսութիւնը դեռ շատ հզօր էր, ուստի և քրիստոնեայք անդադար հալածւում էին կռապաշտ կայսրներից. իսկ պետութեան անկիւններում եպիսկոպոսները ջանում էին իրար օգնել և քաջալերել ընդհանուր թշնամու դէմ դիմացկունութեամբ մաքառելու համար: Ըստ բնական բերման նոքա ոչ մի կապ չունենալով իրարից, աշխատում էին աւետարանին հետևել և սէր պահել միմեանց մէջ: Առաջին դարու եպիսկոպոսաց գաղափարն էր, որ եկեղեցու գլուխը՝ Քրիստոս և քրիստոնէական հաւատը մի լինելով, մի են բոլոր հաւատացողք իրար հետ: Դեռ Պետրոս առաքեալի յաջորդն Անտիոքում՝ Իգնատիոս († 115) վարդապետում էր որ եկեղեցին մի է աշխարհում և այդ միութեան մէջ իւրաքանչիւր համայնական եկեղեցի առանձնաբար երկնայնի նկարակերպն է:*

*Բ-րդ դարից, երբ սաստկացաւ քրիստոնէութեան մաքառումն հեթանոսութեան դէմ և քրիստոնէութիւնը*

---

*նուամբ վանքեր էին շինում: Իսկ յետագայ դարերում նա տօնուել սկսաւ հեռաւոր արևմտքում իսկ:*

Խալաթեանի «Ղազար Փարպեցին և գործք նորին»։ Ո՞ւր կերթայինք եթէ այդ ամենայն մանրամասնօրէն յառաջադրէինք։

Ներկայ գրուածքս քանի մի որոշ խնդիրներով է զբաղւում. իսկ երկրորդական հարցերը միայն գործի լըրութեան համար պիտի համառօտապէս յիշատակուին. մանրամասն ուսումնասիրել կամեցողը պէտք է ինքն ևս աշխատի և նշանակուած աղբիւրները բանալով՝ հետամուտ լինի. իսկ որոնք արտաքին աղբիւրներին ևս ձեռնահաս են տեսնելու, պիտի ստիպուին գերմաներէն գրութեանս դիմել։ Շատ և շատ հանգամանքներ, այլ և անհրաժեշտութիւնը ստիպում են մեզ այս գրուածքը համառօտ թողնել, աւելին ապագային պահելով և կամ յուսալ որ նոր ձեռքեր ելնեն Ս. Էջմիածնի գիտութեան տաճարի ինքնագիտաստ զաւակներից և թերևս Արմաշի վարժարանի ծաղկման ուսավայրից, ուր երիցագոյն աշակերտներն արդէն կայտառելու թրթիռներ են ցոյց տալիս գիտութիւնը թևակոխելու։ Այդ երկու աղբիւրներն եմ յիշում, զի դոքա են, որ կարեն ձեռնհաս լինել գըրչագրաց մատենադարաններին նուիրուելու՝ ս. գործին զոհուելով, եթէ իրաւ պահ մի մտածում են Ե դարի աստղերի վրայ, առանց անյատակ հոսանքի ենթարկուելու...

Այսչափ նկատելուց յետոյ չմոռանանք յիշել, որ գրուածիս աղբիւրներն են Հայոց՝ գլխաւորապէս՝ ականատես աղբիւրները, մանաւանդ Թղթերն ու Նամակները։ Յետագայ մատենագիրները միայն համեմատական արժէք ունին։ Իսկ օտար եկեղեցեաց աղբիւրներն իւրեանց մատենագիրներն են և ոչ հակառակորդներին. վասն որոյ վերջինների նկատմամբ ևս յիշատակել եմ միմիայն այն գրութիւնք, որոնք նոցա մէջ ընդունուած և ի յարգի են։

Հուսկ ապա ինչ որ մեր խնդրին է վերաբերում և որքան աղբիւրները ներում են, կյիշատակուին պատմա-

կան ստոյգ հիմնաբանութեամբ. երկրորդական հարցեր չեն շօշափուիլ, իսկ իղձ ու բաղձանքները, վարկած ու թեթուքները կմնան լայնածաւալ թուղթ մրոտել փափաքողներին։ Հիմք կայ մեծայոյս լինելու, որ ունեցողին այս փոքրիկ գրուածը շատ կտայ,—զի բովանդակում է աւելի քան ճշմարտասէր անձինք թախանձագին պահանջում են,—ըստ այնմ թէ «որ ունիցի տացի նմա և յաւելցի»։

ԱՐՇԱԿ ՏԷՐ-ՄԻՔԵԼԵԱՆ.

Ենա. 1891 սեպտ. 29.



# ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԵԿԵՂԵՑԻՆ

ԵՒ

# ԲԻՒԶԱՆԴԵԱՆ ԺՈՂՈՎՈՑ

## ՊԱՐԱԳԱՅՔ

---

## Ա.

### ԱԿՆԱՐԿ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԵԿԵՂԵՑՒՈՅ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՎՐԱՅ.

*«Կացէք յիս և ես ի ձեզ. որպէս ուռն ոչ կարէ պտուղ բերել յանձնէ իւրմէ, եթէ ոչ իցէ հաստատեալ յորթն, նոյնպէս և դուք՝ եթէ ոչ յիս հաստատեալ՝ իցէք»:*

ՅՈՎ. ԺԵ. 4.

---

Թշնամութիւնը խորին հաստատութիւն էր ստացել ի հնումն Հռովմէական պետութեան և արևելեան ժողովրդոց մէջ. Հռովմ յառաջ տանելով իւր աշխարհակալական ձգտումներն, ոչ միայն փոքր Ասիոյ պետութեանց դէմ կռւում էր, այլ ճգնում էր նոցա ուժասպառ անելու, խռովութիւնք մտցնելով նոցա մէջ և կռւացնելով թէ իշխողաց իւրար հետ և թէ նոցա որդոց իւրեանց հայրերի դէմ։ Այս ձգտումները լաւ հասկանալով և մանաւանդ ձանձրացած Աղեքսանդր Մակեդոնացու

լծից, Ջանահար եղան այդ երկրների ցեղակից ազգերը միանալ և միահամուռ ոյժով ապահովուիլ հռովմէական ահեղ բռնութեանց դէմ։ Ժողովուրդ իսկ «բարբարոս» նախատական խօսքին արժանանալով հռովմայեցիներից, խորին ատելութիւն էր տածում դէպի նոցա, ըստ որում և Արշակունեաց հզօր ձեռքը հեշտութեամբ կարողացաւ միացնել նոցա մէկ դրօշակի տակ. Թէ՛ քանի հեշտ էր այդ՝ երևում է հէնց նորանից, որ այս ու այն կողմերում հռովմայեցոց նշանակած հռովմայեցի իշխողք չէին կարենում յարատևիլ, մինչդեռ Արշակունեաց վերջինն անգամ պատիւ և մեծարանք էր գտնում բնիկներից։ Զօրացան Արշակունիք և մէկ բուռն պատուար հաստատեցին արևմուտքի դէմ. քանի որ այդ ցեղը հզօր էր, հռովմայեցոց ոչ մի խարդաւանանքը չկարեցաւ յաջողութիւն գտնել, ըստ որում և ապահով էր այդ պետութեանց դրութիւնը։ Սակայն այդ մշտակեաց չեղաւ դոցա ներքին խոպան կառավարութեան պատճառով և 224—226-ին Արտաշէս Սասանեան խորտակեց Պարսից արքայ Արշակունի Արտաւանի իշխանութիւնն, ինքն գահ բարձրացաւ և արիւնակալ ոչքերով սլացաւ ընդդէմ հայոց Արշակունի տոհմին։ Խոսրով Ա. ստիպուեցաւ միայնակ դէմ ելնել, բայց և այնպէս ուժգին յետ մղեց նորան և ապա ջանահար եղաւ այլ դաշնակից որոնել։ Հռովմ քաղաքականապէս հակառակ գոլով այդ երկրների միահեծութեան, բնականաբար ձեռք պիտի տար Խոսրովին Պարսից ոյժը թուլացնելու, ըստ որում և արիւնակցի արեան վրէժխնդրութիւնը յառաջ բերաւ մշտական ոխակալութիւն այդ երկու տոհմագահերի միջև։ Խոսրով սպանուեցաւ 235—236-ին, այսինքն Արտաւանի անկումից 10 տարի յետ։ Նորա որդին Տրդատ փախցուեցաւ և հռովմայեցոց օգնութեամբ ու Արտաւազդ Մանդակունի՝ հայրենասէր զօրավարի աժանդակութեամբ, որին արև-

մտեանք Թագաւոր են կոչում, քանի մի ջանքերից զկնի, 261-ին Թագաւորեց (որ է ըստ Խորեն. մօտ 27 տարի Խոսրովի մահից յետոյ)։

«Մեծն» Տրդատ իւր պետութիւնը զօրացրեց, սակայն այլ ձեռքեր էր վիճակուած ազգի ինքնագիտաստութեան և նորա հոգու յաւիտենական ինքնուրոյնութեան զարկը. այդ կրօնի գործն էր։ Այդ Հայոց կրօնը խառնուրդ մի էր դարձել պարսկական և հռովմէական հայախորթ տարրերի, ըստ որում և ազգային չէր և փչացնում էր ժողովրդի յատուկ բնոյթն և օտարացնում նորան, չհայացնում. զանելու, նորոգելու հնար և առիթ չկար, դարձեալ աստուածայինը պիտի՝ որպէս մարդուն բնակից՝ հային ևս օգնութեան հասնէր, նորանը դառնար։ Այդ աստուածմարդկայինը — քրիստոնէութիւնը պիտի բանար ժողովրդի աչքն ու միտքն, որպէս զի նա հեթանոսութիւնից վերջընդմիշտ չկուրանար և վտանգի չենթարկէր իւր անպայման գոյութիւնն, անցաւոր պայմանաւորութեան հետ կապուելով։

Առաքելոց ցանած սերմերը աճում էին. նոցա յաջողութիւնը յարատևում էր ի Հայաստան։ Հայոց Մեհրուժան հայրապետը նահատակուեցաւ, ընդ նմին և քրիստոնեայք սոսկալի հալածանքի ենթարկուեցան (Ագաթանգ. ԺԲ.)[1], սակայն դոքա այնպէս զօրացել էին արդէն, որ Տրդատի քարացած սիրտն իսկ շարժուեցաւ Գրիգոր Լուսաւորչի՝ իւր սիրելու չարչարանքից. ուժգին եղաւ նորա հոգեկան ցնցումն, ապա և բուռն եղաւ նորա գործունէութիւնը. նա ընդունեց քրիստոնէութիւնը քաջալի շահա-

1 «Դիոկղետիանոս» ինչպէս և «Սեղբեստրոս» հին սխալներ են առ Ագաթ.: Հին մատենագիրք տարաձայն էին Տրդատի ժամանակի նկատմամբ. զոր. Ագաթ. և Զենոբ, որոնց միաբանեցրել են յետինք. տես Ուխտ. եպիսկ. I. Հ.

տակութեամբ և Վաղերիանոսի հալածանաց ժամանակները, 276-ին առաջին անգամ աշխարհի վերայ քրիստոնէութիւնը պետական կրօն դարձրեց, ընդ նմին հրովարտակ հանեց, մունետիկ յղեց ամենայն կողմ քրիստոնէութիւնն ընդունելու (Ագաթ. ԾԺ.). բորբոքուեցան Պարսիկները և փրփրեցան հռովմայեցիք, մինչև իսկ Մաքսիմինոս յարձակուեցաւ Տրդատին պատժելու, բայց յետ մղուեցաւ։ Քրիստոնէութիւնը մնաց Պարսկաստան. այդ կողմից ևս դարեր շարունակ հալածանաց հնոց վառուեցաւ ի պաշտպանութիւն իւր հայրենի կրօնին։ Հայերն ևս մնացին երկու թշնամեաց մէջտեղ և ոչ մէկի դաշնակցութեան չյուսալով, սկսան ներքին ամրութեան աշխատիլ։ Ահա այս քաղաքական տրամադրութեան ներքոյ Գրիգոր Լուսաւորիչ Պարթևն ու պետականը կազմակերպեց իւր եկեղեցին յօգուտ իւր սիրած ազգին, զօրութիւն տալով նորա ինքնուրոյն ոգուն, ներշնչելով այնպիսի ինքնագիտակցութիւն, որ պանծացաւ դարերի ընթացքում ահեղ մաքառման մէջ։ Նա այդ արաւ աննման իմաստութեամբ, որ կարճատես աչքին իսկ պարզապէս նկատելի է։ Նա ժողովրդականացրեց քրիստոնէութիւնն, ազգայնացրեց, մեհեանների տեղ եկեղեցիք շինեց և հեթանոսական կալուածներն վանքերին թողեց. քուրմերին կրթեց, քահանաներ դարձրեց, առանց նոցա յարաբերութիւնը ժողովրդի հետ փոփոխելու, ըստ որում հայը տեսաւ ո՛չ թէ նոր կրօն, այլ իւրը վեհացած։ Հայն սկսաւ հային եղբայր կոչել և քանի որ Ս. Գրիգոր «հոգւոց և մարմնոց» համար էր ջանում միանգամայն և «վասն հասարակաց», ուստի եկեղեցին և ազգը լրացնում էին իրար. եկեղեցին տուաւ ոչ միայն անձնազոհ եկեղեցականներ, այլ և քաջարի զօրապետներ և զինուորներ. Աստուած սիրողը, պիտի սիրէր և իւր ազգն և իւր հայ եղբօրը. մեռնել ազգի համար—աստուածային գործ էր, որպէս հայ զօրա-

վարն իսկ ասում էր Դ դարում՝ «այն ինքն մահ՝ վասն Աստուծոյ է, փոխանակ եկեղեցեաց նորա և ուխտի նորա, և ի վերայ բնակ տէրանց աշխարհիս Արշակունեաց» (Բիւզ. V. ԽԴ)։ Եկեղեցին եղաւ հայի ռամիկի աղբիւրն ամենատառապեալ ժամանակ. «զԹագաւորս՝ քաղցրացոյց եկեղեցի, զգազանս ընտելացոյց, զգայլս՝ գառինս արար, զձիգ պայծառացոյց, զԹշնամիս Ճշմարտութեան ամաչեցոյց» (Փարպ. 551)։ Նա պարզ որոշեց իւր հօտի հաւատալիքն և պատուիրեց չշեղուիլ «ոչ ձախ և ոչ յահեակ», կապեց նորան ուղղակի Աստուծոյ հետ և լիովին միացրեց հօտն իւր յաջորդաց հետ, որպէս որդոց և հարց մի ընտանիք կազմելով։ Նա պատուիրեց Ս. Գրքով կրԹուիլ հանապազ և Աստուծոյ նմանիլ, անդադար յառաջադիմել, զի «անցանեն ժամք և աւուրք և ամք, և յառաջադէմն նկրտի». ինքն ևս Ճգնելով, անյայտուԹեան մէջ ծածկուեցաւ, որպէս զի հօտը չյուսահատուի, այլ իւր միջից տայ միշտ արժանաւոր հովուապետ։ Նա օծեց ս. Ռստակէսին և իւր ձեռքի տակ կաԹուղիկոսուԹիւն անել տուաւ, որպէս զի հմտանայ իւր կառավարուԹեան։ Հայոց Նոր Սիոնը Քրիստոսից իսկ հաստատուեցաւ իբրև անմահ կոԹող իւր փառաց։ Նոր Սիոն հիմնադրեալ Աստուածանից, Հայաստանեայց կաԹուղիկէն «որ ժողովէ զամենայն ժողովս ի միաբանուԹիւն հաւատոց ի ներքոյ Թևոցն իւրոց» (ԱգաԹ. ՃԲ)։ Իսկ հայրապետական աԹոռը պահապան ազգի, որին հրամայեց Քրիստոս՝ «Զգոյշ լեր աւանդիդ՝ որ քեզ հաւատացաւ ի Տեառնէ»։ Ուստի անմահ է այդ եկեղեցին և զայն «ոչ ներքինք շարժել կարեն և ոչ վերինք դրդուեցուցանել» (Եղիշէ 78)։ Այսպիսով Աստուած շինում է Հայոց եկեղեցին, Աստուած օծում է Գրիգոր Լուսաւորչին քահանայապետ, աստուածանալն է հայի նպատակը (Յաճախապատում 16)։ Նոյն իսկ աստուածային հրամանով տարածեց Տրդատ քրիստոնէու-

թիւնն արտաքապէս։ Եւ որպէս զի ըստ ամենայնի ինքնուրոյն լինի Հայոց եկեղեցին և ապահով օտարից, ս. Գրիգոր հրաւիրեց ասորի քարոզիչներ և ոչ յոյն, ասորերական պաշտամունք մտցրեց եկեղեցու մէջ և ասորականի վրայով ընթերցուածք (Փարպ. ԺԱ)։ Նա ձեռք մեկնեց և Հայաստանից դուրս իւր ցրուեալ հօտը հովուելու. աւետարանը պիտի կապէր և ցրուեալ Հայոց ի մի, ուստի և Դանէլ ասորի եպիսկոպոսին վերակացու քարոզիչ նշանակեց սահմանից դէնը հեռաւոր կողմեր (Բիւզ. III, ԺԴ)։ Խնդրից շատ կհեռանայինք, եթէ Գրիգոր Լուսաւորչի գործունէութիւնը մանրամասն ներկայացնէինք[1]. այդ այլ ժամանակի սպասող առանձին մի նիւթ է. սակայն յիշելի է, որ վերագոյն թուած աչքի ընկնող կէտերի պսակն է այն ազատութիւնն, որ նա ներշնչում է ամենայն ինքնագիտաստ Հայի սիրտ, կապելով նորան ճշմարտութեան, ազնիւի, բարւոյ հետ և ոչ որ և է անձի հեղինակութեան ենթարկելով։ Եկեղեցու մէջ գտաւ հայն իւր ազատութիւնն և ազատաց հետ միացաւ, ընդ նմին եկեղեցին կապեց Հայոց անցեալն իւր ամենայն փառքով նորա ապագայի հետ և Հայկայ ժամաբոյծ որդոց յաւիտենականութեան ձգտող ազգ դարձրեց։ Եկեղեցին ազնուացրեց ազգինը և ոչ թէ փոխեց, վասն որոյ ս. Գրիգոր ասում է հրաշապէս. «Ոգւոց և մարմնոց ձերոց պատրաստեցայք, զօգուտն ձեր՝ ձեզ մատուցանել». այս է Հայ ազգի վեհագոյն կատարելութեան սկզբունքը։ Այսպիսով մարմին, հոգի, ազգ, հայրենիք, անցեալ և ապագայ, փառք և գործք, հանգուցեալ քաջեր և կենդանի լաւեր միացան եկեղեցու մէջ ի փառս հայրենեաց և ի զօրացումն հասարակաց։

---

[1] Գրիգոր Լուսաւորչի հռչակը հասկանալու համար բաւ է միայն յիշել, որ նոյն իսկ Դ-րդ դարում և թերևս իւր կենդանութեան միջոցին մինչև անգամ հեռաւոր Կովկասում զոր. Վրաստանում նորա ա-

## Բ.

## ՀՌՈՎՄԷԱԿԱՆ ՊԵՏՈՒԹԻՒՆՆ ԵՒ ՆԻԿԻՈՅ ԺՈՂՈՎԸ.

*«Մարդ ըստ բնոյթին
քաղաքական էակ մի է»:*
ԱՐԻՍՏՈՏԷԼ.

Քրիստոնէութիւնը դուրս գալով Պաղեստինից, հաստատուեցաւ Անտիոքում, ծաւալուեցաւ Եփեսոսում, Աղեքսանդրիայում և միւս հռովմէական պետութեան մայրաքաղաքը՝ Հռովմ։ Հեթանոսութիւնը դեռ շատ հզօր էր, ուստի և քրիստոնեայք անդադար հալածւում էին կռապաշտ կայսրներից. իսկ պետութեան անկիւններում եպիսկոպոսները ջանում էին իրար օգնել և քաջալերել ընդհանուր թշնամու դէմ դիմադրութեամբ մաքառելու համար։ Ըստ բնական բերման նոքա ոչ մի կապ չունենալով իրարից, աշխատում էին աւետարանին հետևել և սէր պահել միմեանց մէջ։ Առաջին դարու եպիսկոպոսաց գաղափարն էր, որ եկեղեցու գլուխը՝ Քրիստոս և քրիստոնէական հաւատը մի լինելով, մի են բոլոր հաւատացողք իրար հետ։ Դեռ Պետրոս առաքեալի յաջորդն Անտիոքում՝ Իգնատիոս († 115) վարդապետում էր որ եկեղեցին մի է աշխարհում և այդ միութեան մէջ իւրաքանչիւր համայնական եկեղեցի առանձնաբար երկնայնի նկարակերպն է։

Բ-րդ դարից, երբ սաստկացաւ քրիստոնէութեան մաքառումն հեթանոսութեան դէմ և քրիստոնէութիւնը

---

նուամբ վանքեր էին շինում: Իսկ յետագայ դարերում նա տօնուել սկսաւ հեռաւոր արևմտքում իսկ:

*գլխաւոր անկիւններից տարածուեցաւ շրջակայքը, համայնքի վարիչները բնականաբար դէր պիտի կատարէին թէ քաջալերելու և թէ ուժի համար միութիւն պահելու։ Զօրութիւնն անհրաժեշտ էր մանաւանդ հերձուածողների պատճառով, որոնք ուժասպառ էին անում քրիստոնէից միահամուռ գործունէութիւնը։ Այդ իսկ ժամանակ ձըգտում՝ յառաջացաւ պետութեան մէջ քրիստոնէական եկեղեցին իբրև ընդհանուր ինչ նկատելու, հակառակ զանազան հերձուածողաց. հարկաւ այդ յառաջացաւ նախ գաւառական շրջահայեցողութեամբ և ապա ամբողջ պետութեան վերաբերմամբ։ Որպէս քրիստոնէութիւնն իւր աստուածայնութեամբ տիեզերքը պիտի իշխէր և ընդհանրական կրօնը դառնար ըստ աւետարանին, այսպէս ևս Հռովմէական հեթանոս աշխարհում, ոչ թէ մասնաւոր համայնութիւններ տալու էր, այլ հակառակ հերձուածողաց, ընդհանրական միութիւն։ Այսպիսով ընդհանրականութեան գաղափարը քրիստոնէականին փոխարինեց։ Բնական էր ուրեմն, որ այդ գաղափարն ոմանց մէջ միշտ ըստ աւետարանին հասկացուէր, իսկ ոմանց մէջ ծեքուէր և աշխարհային ղիտմանց ծառայէր. և ահա երկու տեսակ ձգտումներ յառաջացան պետութեան եպիսկոպոսաց մէջ։ Նախ՝ քրիստոնէութիւնն իւր ընդհանրականութեամբ միացուցիչ մարդկութեան ի մի գլուխն Քրիստոս. և 2) համայնքի միացուցիչն եպիսկոպոսի անձի մէջ։ Առաջինն էր առաքելական ճշմարիտ ձգտումն ըստ Քրիստոսի պատուիրանաց. իսկ երկրորդը՝ մասնաւոր անձանց մտածմունքն էր մարմնաւորական իշխանութեան նպատակով, որ պատճառ պիտի լինէր եկպառակութեան, կռիւների և հայհոյութեան։*

*Քրիստոնէական ընդհանրականութեան կամ կաթուղիկոսութեան առաջին յերարկողք են Հռովմէական պետութեան մէջ Փոքր Ասիոյ եկեղեցականք՝ Պոլիկարպ Զմիւռնացի (✝ 166), Սերապիոն Անտիոքացի, Դիոնի-*

սիոս Կորնթացի. դոցա հետևեցան ապա և միւս եկեղեցիք: Պետութեան զօրաւոր եկեղեցիք հաստատուած էին առաջնակարգ քաղաքներում. այսպէս՝ յԱնտիոք, յԵփեսոս, յԱղեքսանդրիայ և ի Հռովմ: Առհասարակ իւրաքանչիւր ժողովուրդ և համայնք քրիստոնէութիւնն ընդունելով, օրինագործում էր իւր հեթանոսական վայրերն և իւր նոր կեդրոն դարձնում. որտեղ հռչակաւոր կուռքերն էին, այնտեղ էին հաստատւում և քրիստոնէական հզօրագոյն նիստերը: Անտիոքիան, որպէս արևելեան հին մայրաքաղաք, կեդրոնացրեց իւր ժողովրդի մտքերն, Աղեքսանդրիան առանձնացրեց իւր սեփական ազգն, իսկ Հռոմոց կեդրոնավայրն էր Հռովմն, ոչ միայն իբրև արքայանիստ մայրաքաղաք, այլ և որպէս հեթանոսութեան սրբավայր, որ կռապաշտ հռովմայեցիների համար նոյնն էր, ինչ որ Երուսաղէմը քրիստոնէից համար, ըստ որում և կոչւում էր «քաղաք յաւիտենական» (urbs aeterna), «քաղաք սուրբ» (urbs sacra) և այլն, իսկ նորա կռապաշտական ծէսերն օրինակելի էին ամենուրեք:

Այդ կեդրոնավայրերից իւրաքանչիւրում առանձին դպրոց էր և ուղղութիւն, միայն Հռովմումն էր որ քրիստոնէական գիտութիւնն առաւել ուշ ծաղկեցաւ կռապաշտ կայսրների մտաւոր հալածանաց պատճառաւ: Բոլոր այդ ուղղութեանց «ընդհանրական» եկեղեցու գաղափարը հիմնապէս չէին շեղւում իրարից: Բ դարում արդէն հաստատուն մի սկզբունք էր, որ եպիսկոպոսը Քրիստոսի փոխանորդն է և յանձին եպիսկոպոսի է հաստատուած իւրաքանչիւր համայնք: Եւ որովհետև աւանդութիւնն առաւել բարձր նշանակութիւն ունեցաւ այդ եկեղեցիներում և եպիսկոպոսից բարձրագոյն դիրք չկար, բնականաբար աւանդութեան կրողներն եպիսկոպոսները համարուեցան. այդպիսով իւրաքանչիւր եպիսկոպոս եկեղեցու ծառայման աղբիւր դարձաւ, ըստ որում անձնիւր եպիսկոպոսի

ձեռքում ինքնուրոյն գործունէութիւն մի կեդրոնացաւ։ Եկեղեցին դեռ զարգացման մանուկ հասակում գոլով, կարօտ էր զանազան հարցերի բացայայտութեան, ուղիղ և մոլար կարգերի որոշման և այլն. այս ամենի պարզող հաստատողն էր եպիսկոպոսը։ Եպիսկոպոսաց զօրութիւնն այն աստիճանի հասաւ, որ Հռոմայ Կալիստոս (217—222) արգելեց չարագործ եպիսկոպոսի պաշտօնանկութիւնն, եկեղեցին նմանեցնելով Նոյեան տապանին, յորում կային սուրբ և անսուրբ կենդանիք, թէև Կոռնելիոս եպիսկոպոսը (որ 251-ին Հռոմայ աթոռը բարձրացաւ) դուրս եկաւ և հիմն ի վեր տապալեց այդ վարդապետութիւնը։

Եկեղեցու փրկութիւնը ժողովրդի համար ամուր արօշումն ստացաւ ընդհանրութեան գաղափարի տակ. դորա սովորական արտայայտութիւնն էր ամենուրեք՝ «արտաքոյ եկեղեցւոյ չիք փրկութիւն», որ մեկ չափ էր անձնիւր հաւատացողի համար։ Սակայն պետութեան եկեղեցիք իրարից անկախ և մանաւանդ ըստ այլացեղ ժողովրդոց բնոյթի զարգանալով, բնականօրէն տարբեր կերպաւորութիւն ստացան. նոյն իսկ վարդապետութիւնք այս ու այն եպիսկոպոսի մեկնաշնորհը լինելով, իրարից պիտի շեղուէին. ահա այս իսկ պատճառ եղաւ այն վէճերին, որոնք տեղի ունեցան, երբ քրիստոնէութիւնն ընդարձակուեցաւ և տարբեր դպրոցների հետևողք ընդհարուեցան, սկսեալ Գ դարու վերջերից։ Բացայայտ է որ կեդրոնական եպիսկոպոսք դժուարութեանց պիտի հանդիպէին տարաձայնութեանց վճիռ տալու. վասն որոյ անհրաժեշտաբար իւրաքանչիւր եպիսկոպոս սկսաւ իւրը ճշմարիտ համարել և թոյլերին պարտաւորեցնել իւրին հետևելու։ Այնուհետև յարձակման դուռը բացուեցաւ։ Այդ ժամանակ անձնիւր եպիսկոպոս մաքառմամբ զօրանալու համար սկսաւ դիմել իւր շրջանի եկեղեցականաց ժողովի օգնութեան, ըստ տրում և ժողով գումարելը միջոց դարձաւ եպիսկոպոսաց

ձեռքում, որոնց մէջ մայրաքաղաքի աթոռակալք և ծերագոյնք գահերիցութիւն էին վայելում. իսկ Դ դարի վերջում արդէն առաջնակարգ տեղ բռնեցին առաքելական յաջորդք։ Այսպիսով երբ վերջինքս վարիչներ հանդիսացան և թշնամական խմբերն ստուարացան, կռիւը խախտիչ ուղղութիւն առաւ պետութեան դէմ, վասն զի զօրաւոր եպիսկոպոսք, ջանալով իւրեանց բանակը մեծացնել, բռնահարում էին միւսներին՝ տիրելու համար։ Հանձարաւոր եպիսկոպոսք, որոնք յաճախ ջանում էին իւրեանց պաշտօնակցաց մոլար ընթացքն ուղղել, յանդիմանելով և ժողովով դատապարտելով, զօրաւոր խնամող չկարէին լինել. անհրաժեշտ էր այլ զօրութիւն, որ եղաւ պետութիւնը։

Քրիստոնէութիւնն յառաջանալով կայսրներին վարանման մէջ էր ձգում. հեթանոսութիւնը յոյս չունէր ապագայի, և ահա Կոստանդիանոսը խոհեմութիւն համարեց հակուել առ նոր կրօնը։ Նա լաւ գիտէր որ պետութեան ապագան քրիստոնէութիւնն էր, սակայն առժամապէս հեթանոսութիւնն ևս զօրաւոր էր, որի արհամարհելը վտանգաւոր էր։ Թէև իւր միահեծանութեան ժամանակները քրիստոնէից թիւը հազիւ 10—15 բիւրերիւրի էր հասնում, սակայն հեռատեսութեամբ սկսաւ խնամել նոցա շուրջ 314-ին և վտանգից խուսափելու համար երկդիմի քաղաքականութիւն բռնեցնել։ Հէնց որ նա պաշտպան երևեցաւ քրիստոնէութեան, պետութեան եկեղեցիք պայմանաւորուեցան նորա քաղաքականութեան հետ, զոր երկար ժամանակ ի նկատի ունեցան և նորա յաջորդները։ Կոստանդիանոս նայում էր իւր գայիսոնի տակ գտնուած բոլոր ինքնուրոյն եպիսկոպոսական աթոռների վրայ, որպէս մէկ միութեան, ըստ որում և աշխատում էր այդ միութիւնն իւր միահեծանութեան ներքոյ ամուր պահել։ Այդ ձգտման հետևանք էր որ նա խնամեց

միաժամանակ թէ հեթանոսութիւնն և թէ քրիստոնէութիւնն, ըստ որում և կարգուեցաւ թէ հեթանոսաց չաստուածների և թէ քրիստոնէից սրբոց շաքքը, բայց երբ չկարեցաւ այդ երկդիմութիւնը պահպանել, ըստ որում նոյն իսկ նորա նախորդք խոյս էին տալիս ի Հռովմ բնակուելուց, միայն այն ժամանակ հզօր հեթանոսներից հեռու լինելու համար փոխադրեց (330-ին) իւր արքունիքն Կ. Պոլիս, ընդ նմին մկրտուեցաւ միայն մահուան օրը (337-ին)։

Եկեղեցու շրջանում նա միայն ներքին խնդիրներն էր եպիսկոպոսներին թողնում, իսկ արտաքինն ամենայն իւր ձեռքին էր. «դուք կարէք եպիսկոպոսներ լինել եկեղեցու ներքին գործառնութեանց, իսկ ես Աստուածանից հաստատուած եպիսկոպոս եմ արտաքին գործառնութեանց[1]», ասում էր նա եպիսկոպոսաց. այդ գաղափարի հակիրճ արտայայտութիւնն է նորա յաջորդաց՝ «ես կայսր եմ և քահանայապետ միանգամայն»՝ խրոխտ խօսքերն, որոնք լիակատար նշանակ են արքունիքի և եկեղեցականաց յարաբերութեան։

Կոստանդիանոս ըստ այս սկզբանց առաջնորդուելով, տեսաւ որ իւր պետութիւնը կանոնաւոր կարգի էր, մինչդեռ եկեղեցականք դոյն մի չունէր. ինքն միահեծան պետ էր, սակայն անձնիւր եպիսկոպոս մարմնաւոր գերիշխանութեան էր ձգտում. նոյն իսկ գաւառական աննշան եպիսկոպոսք թեւակոխում էին միահեծանութեան։ Կոստանդիանոս բաժնել էր իւր պետութիւնը չորս կուսակալութեան՝ Արեւելք, Իլլիրիայ, Իտալիայ և Գալլիայ, որոնք կազմում էին 14—15 նահանգ. առաջինում՝ Արեւելք, Եգիպտոս, Ասիա (Եփեսոսի), Պոնտոս, Թրակիայ. երկրորդում՝ Մակեդոնիա, Իլլիրիկոն, Դակիայ. երրորդում՝ Իտա-

[1] Եւսեբ. Կեանք Կոստ. IV. 24.

լիայ, Աֆրիկայ. չորրորդում՝ Հիսպանիայ, Գալլիայ, Բրիտանիայ։ Այդ նահանգներն եւս բաժնուած էին գաւառների, և ամեն գաւառի եպիսկոպոսը ձգտում էր իր գաւառի վրայ իշխելու, նահանգինը նահանգի վրայ և կուսակալութեանն ոչ միայն ամբողջ կուսակալութեան վրայ, այլ և նկրտում էր գահերէցութիւն ձեռք բերելու արքունիքի առաջ։ Կոստանդիանոս տեսաւ այս ամէնն և աչքաթող չարաւ։

Պետութեան քաղաքական վարչութիւնը կեդրոնացած էր պետական ծերակոյտում և որպէս զի եկեղեցականն եւս կանոնաւոր վիճակի մէջ լինէր, յղացաւ նա ըստ այդ ծերակոյտին «մեծ ժողովի» գաղափարը (փոքր ժողովք էին գաւառականք), որ պէտք է հսկէր ըստ հարկին ամբողջ պետութեան եկեղեցեաց վրայ։ Այդ ժողովներում պէտք է ներկայ լինէին պետութեան բոլոր «պապերը» կամ եպիսկոպոսք, որպէս զի ժողովի որոշումները խաղաղաբար ընդունուէին բոլորից։ Ժողով հրաւիրողն էր ինքն կայսրն, եթէ եպիսկոպոսք վէճի էին բռնւում, գանգատւում էին կայսրին և պատիւ էին համարում միայն կայսրից դատուել։ Ժողովում նախագահում էր ինքն կայսրը մէկ եպիսկոպոսի միջոցով։

Երկպառակող եկեղեցականներին խաղաղեցնելու դիմեց Կոստանդիանոս այդ ժողովների օգնութեան ա. անգամ 314-ին. այն ժողովը տեղի ունեցաւ Արլէզում և լինելով ամբողջ պետութեան համար, «տիեզերական» կոչուեցաւ ոմանց գրուածներում, որպէս տիեզերական էր կոչւում արքունիքը, բայց և այնպէս չկարեցաւ խռովութեանց վերջ տալ. գանգատներ էին, զորոնք ստանում էր, ըստ որում տեսնելով պետութեան եղկելի վիճակը, հրաւիրեց 325-ի Նիկիոյ «մեծ ժողովն», որի հեղինակութիւնը բարձրացնելու համար հրաւիրեց նաև օտար եկեղեցեաց ներկայացուցիչներին։ Հայոց քաղաքականութիւնը պահան-

ջել է միշտ գոնէ մէկ դաշնակից ունենալ իւր Հարևան թշնամի պետութեանց մէջ։ Կոստանդիանոսի քրիստոնէական տրամադրութեան ցոյցերը բաւ էին Հայոց ևս գրաւելի. Հաւանական է, որ 323-ին Մաքսիմինոսի ջարդուելուց յետոյ, երբ Կոստանդիանոս միապետեց իւր երկիրը, Տրդատ առիթ ունեցաւ նորա հետ տեսնուելու Նիկոմիդիայում, ուրտեղ նա քանի մի ամիս անցցրեց։ Աստ կարէր և դաշինք տեղի ունենալ, նոյն իսկ Լուսաւորչի և Եւսեբիոս Նիկոմիդիայի եպիսկոպոսի ներկայութեամբ։ Այս բարեկամութեան յարակից նկատելի է որ առաջին կազմակերպուած հնագոյն եկեղեցեաց ձայնը մեծ կշիռ պէտք է ունենար Հռովմայեցւոց նորադարձ պետութեան համար, ուստի թախանձագին եղաւ Կոստանդիանոսի հրաւէրն և սիրառաք Հայաստանեայց եկեղեցու ներկայացուցիչը։ Նիկիոյ այդ մեծ ժողովին մասնակցեցան այդպիսով բոլոր այն ժամանակի նշանաւոր եկեղեցիք, վասն որոյ և իւր բովանդակութեամբ կարող է նա տիեզերական ժողով համարուել, սակայն ըստ դիւանաձևին «մեծ ժողով» կոչուեցաւ արձանագրութեան և պատմութեան մէջ։

Երկպառակութեան մօտագոյն պատճառ տուողն էր Արիոս, որի մոլար վարդապետութեան դէմ եղաւ Աղեքսանդրոյ Աղեքսանդր եպիսկոպոսն (պապական կամ էլ Բարան) 313—26, որ արդէն գերիշխանութեան էր հասել հռովմէական պետութեան մէջ և մերժեց նորան եկեղեցուց 321-ին ժողովով։ Արիոս ապա օգնութիւն գտաւ Եւսեբիոս Նիկոմիդացուց, որ թշնամի լինելով Աղեքսանդրին, սկսաւ գործել ընդդէմ նորա։ Վէճը ժամանակ մի տևեց և ապա ըստ երևոյթին հանդամանքը ներեց Արիոսի Աղեքսանդրիայ վերադառնալու, սակայն վէճը կրկին սաստկացաւ։ Արիոս սկսաւ իւր գաղափարք երգերով տարածել. կարճ միջոցում կռիւն այնպէս սաստկացաւ, որ եպիսկոպոսք ու քրիստոնէութիւնը ծաղրի ենթարկ-

ուեցան հրէաներից։ Կոստանդիանոս պատերազմներից վերադարձած, խորին թախծութեամբ տեսաւ եպիսկոպոսաց պատերազմը, որ վտանգում էր պետութեան խաղաղութիւնը։ Նա անձամբ դիմեց նամակով առ Աղեքսանդր և Արիոս։ Այդ նամակը հիմնաւոր յիշատակարան է նորա քաղաքագիտութեան. Նա գրում է, որ մինչդեռ յոյս ունէր արևելեան եպիսկոպոսաց օգնութեամբ անհետացնել տօնացեանների երկպառակութիւնն, ահա տեսնում է, որ իւր պետութեան արևելքն իսկ կորստական պառակտման է մատնուած, ուստի և ինքն իւր միջնորդութիւնն է առաջարկում խաղաղութեան։ Հարկ չէ, շարունակում է նա, այդ վիճաբանութիւնը տգէտ ժողովրդի մէջ տարածել, այլ պէտք է մէկ համաձայնութեան գալ, ըստ որում անտեղեաց վրայ վիճում են տգէտ ամբոխն ու մոնթերը։ Զգացուած գրում է նա, որ այն վէճը սպառնում է խաղաղութեան և խանկարում միութեան գործը, վասն որոյ խնդրում է խաղաղ մնալ, եթէ մինչև իսկ գաղափարաց համաձայնութիւն չկայանայ. «դարձրէք ինձ իմ հանգիստ օրերն և անհոգ գիշերները. մի՛ թողէք տխրութեամբ անցցնել կեանքիս մնացեալ ժամանակն», ասում է հզօր կայսրն և աւելացնում է՝ թէ պատրաստւում է Աղեքսանդրիա գնալու, սակայն յետ է կացել իւր մտադրութիւնից, երբ ստացել է երկպառակութեան լուրը, և խոստանում է, որ եթէ հաշտուին, իսկոյն այցելել։

Այս նամակի հակիրճ բովանդակութիւնը ցոյց է տալիս թէ քանի քնքոյշ էր այն ժամանակի քաղաքական վիճակն, որ արիւնռուշտ կայսրն անգամ, որ իւր ատելի տոհմակիցների արեամբ իսկ խաղում էր, այդպիսի աղաչական դիմումն է անում առ մէկ եպիսկոպոս։ Բայց նամակն ազդեցութիւն չունեցաւ և խռովութիւնն այնպէս բորբոքուեցաւ, որ Եգիպտոսում կայսեր պատկերն անգամ անարգեցին։ Պետութիւնը վտանգի մէջ էր և ահա Նի-

կիոյ այդ ժողովը պէտք է նորա արիւնաթաթախ սուր տեղը բռնէր։ Ժողովը տեղի ունեցաւ 250—300 եպիսկոպոսաց ներկայութեամբ, նախագահեց կայսրն Եւսեբիոս Կեսարացու միջոցով, առաջնակարգ դեր կատարեցին Աղեքսանդր եպիսկոպոսն Աղեքսանդրիոյ, Եւսթաթէոսն Անտիոքայ և Մակարն Երուսաղէմի. Եւսեբիոսի նախագահութիւնը ճշգրիտ և որոշ է, սակայն հարց կայ նաև Եւսթաթէոսի և Նոզիոսի վրայ։

Այդ ժողովում Կոստանդիանոս ձգեց բոլոր գանգատների խառնակոյտը կրակի մէջ առանց կարդալու և մէկ կարճ ճառով որոշեց ժողովը հրաւիրելու նպատակը. «Երկպառակութիւնն եկեղեցու մէջ համարում եմ ես, ասաց նա, աւելի ցաւալի և սոսկալի, քան որ և է պատերազմ։ Չէնց որ ես Աստուծոյ օգնութեամբ թշնամեաց յաղթեցի, կարծում էի թէ այլ ևս ոչինչ պէտք չէ, միայն թէ իմ ազատածների հետ ընդհանուր ուրախութեամբ Աստուծոյ գոհութիւն մատուցանեմ։ Բայց երբ ձեր երկպառակութիւնը լսեցի, համատայած էի որ այդ չպէտք է ուշացնէի և փափաքելով իմ ծառայութեամբս օգնութիւն հասցնել, իսկոյն հրաւիրեցի ձեզ։ Սակայն իմ բաղձանքս այն ժամանակ կատարած կլինեմ, եթէ բոլորի սրտերը միացած և խաղաղ ի միաբանութեան տեսնեմ, զոր և դուք, որպէս օծեալք Աստուծոյ, այլոց ևս կաւետէք։ Մի՛ յապաղէք իմ բարեկամք, մի՛ յապաղէք ծառայք Աստուծոյ. հեռացրէք վէճի բոլոր պատճառներն և կոտրեցէք երկպառակութեան հանգոյցները խաղաղութեան օրէնքով, որով Աստուծոյ ամենահաճոյ գործ կատարած կլինէք և ինձ ձեր պաշտօնակցին չափազանց մեծ ուրախութիւն կառթէք »։ Կոստանդիանոս չհասաւ իւր նպատակին. նա պատրաստ էր Արիոսականաց կողմն անցնելու, եթէ միայն դորանով կարենար խռովութեան վերջ տալ. սակայն Աղեքսանդրիոյ աթոռը հզօր էր, ուստի և հեշտու-

թեամբ չէր զոհուիլ աղանդաւորին։

Ա՛րդ, ի՞նչ եղաւ Նիկիոյ ժողովում։ Արիոս բանադրուեցաւ և աքսորուեցաւ. Աղեքսանդրիոյ հեղինակութեան ներքոյ վերափոխած հաւատամքը պարտաւորիչ դրուեցաւ ամբողջ պետութեան մէջ։ Պետութեան եպիսկոպոսաց յարաբերութիւնք ճշտելու համար դրուեցան օրէնքներ, որ նոքա իւրեանց միձակայ եկեղեցական վարչապետք գոլով, իրար հաւասար են, ընդ նմին և որոշուեցան քանի մի վարչական կանոնք նոցա համար։ Ա. կէտն ընդհանուր քրիստոնէական էր, վասն զի աղանդի եղծելով խաղաղութիւն պիտի շնորհէր եկեղեցական աշխարհին, ուստի և որպէս ճշմարտութեան յաղթանակ եկեղեցիներում յիշատակիլի. Բ-ը հետագայ դարերի համար նըպաստաւոր եղաւ, զի առաքելական հաւատքի իւրովանն օրինակելի ամփոփումն տուաւ հաստատուն արժանագրութեամբ. իսկ Գ-ը պատկանում է բացառապէս Հռովմէական պետութեան եկեղեցեաց։ Ուրեմն առաջին երկուքի միայն արժանիքը դատելով, նշանակութիւն ունին միմիայն քրիստոնէութեան պատմութեան համար և իրական առնչութիւն չունին Հռովմէական պետութեան չպատկանող եկեղեցեաց հետ։

Նիկիոյ ժողովի որպիսութիւնն ու նշանակութիւնն ըմբռնելուց յետ, գանք այժմ քննելու Հայաստանեայց եկեղեցու յարաբերութիւնն առ այդ։ Գիտենք հաստատապէս, որ ս. Ռստակէս ներկայ էր ժողովին և նորա անունը գտնւում է ստորագրութեանց տախտակի վրայ։ Հապա իւր հետ Հայաստան բերաւ Նիկիոյ ժողովի կանոններն, որոնք, որպէս և շատ ուրիշ ժողովների կանոնները, կարող էին նաև Հայոց օգտակար լինել։ Այնուհետև այդ ժողովն նկատուեցաւ որպէս մէկ կողմնակի լաւ գործ քրիստոնէական եկեղեցում։ Իբրև[1] կողմնակի

1 Հայոց հաւատամքի կտորներ և նմանութիւնք տես զորօր. Ազատ..

գործ պիտի նկատուի Նիկիոյ ժողովը, զի նորա բուն Հաւատամքը մուտք չգտաւ Հայոց եկեղեցում։ Հայոց Հաւատամքը շատ տարբեր է Նիկիականից և չի կարող վերջինի ընդարձակումը լինել, սակայն քանի որ համադաւան է Նիկիականին, կարէր և Նիկիական կոչուիլ — ըստ բովանդակութեան, թէև ոչ ըստ ձևին։ Ինչպէս ուրիշ տեղ ասել ենք, Հայոց Հաւատամքը ծագել է արևելքում, Ասորւոց, Կապադովկիոյ, Հայոց և գուցէ Պաղեստինում նոյնանման կազմութիւն ստանալով։ Իսկ ապա կարէին Լուսաւորչի արդիւնքը քանի մի լրացումներ ևս անել այդ Հաւատամքին՝ միայն թէ ամենաուշն մինչև Ե դարու սկիզբը, վասն զի բնութեան խնդրի վրայ բացորոշ յիշատակութիւն չունի։ Քանի որ Կիպրոսի եպիսկոպոս Եպիփանը Պաղեստինցի էր և իւր երկու Հաւատամքներն անտարակոյս այդ արևելեան Հանգանակներումն է ձևել, չենք կարող չյիշել, որ արևելեան եկեղեցիները բաւական հեղինակութիւն են ունեցել Հաւատոյ խնդիրներում։ Կապադովկեան-Աղեքսանդրեան դպրոցը դեռ երկար փայլեց քրիստոնեայ աշխարհում. այդ դպրոցին էր պատկանում և Հայոց ծիւղը բոլորովին տարբեր Բիւզանդեան դպրոցից։

Աւելորդ չէ բերել այդ երկու Հաւատամքներն ի դատողութիւն ընթերցողի.

| Հայոցը. | Նիկիականը, հին թարգմանութիւն Կիւրեղ Աղեք. մեկնութեան մէջ. |
| --- | --- |
| Հաւատամք ի մի Աստուած ի Հայրն ամենակալ յարարիչն եր- | Հաւատամք ի մի Աստուած Հայր ամե- |

289. 197. 356. 376. 215. 226. 116. 147. 55. 312. 331. 385. 499. 253. 211 էջերը (տպ. Թիֆլիս). Ցաձախապատ. 190 և այլն. Բիւզ. IV, Ե. Եղիշէ Վենետ. 1828. էջ 48. 50. 51 .64 եայլն:

կնի և երկրի, երևելեաց և աներևութից: Եւ ի մի տէր Յիսուս Քրիստոս որդին Աստուծոյ, ծընեալն յԱստուծոյ Հօրէ՝ միածին. այսինքն յէութենէ Հօր: Աստուած յԱստուծոյ, լոյս ի լուսոյ, Աստուած ճշմարիտ, յԱստուծոյ ճշմարտէ՝ ծնունդ և ոչ արարած: Նոյն ինքն ի բնութենէ Հօր. որով ամենայն ինչ եղև յերկինս և ի վերայ երկրի, երեւելիք և աներևոյթք: Որ յաղագս մեր մարդկան և վասն մերոյ փրկութեան իջեալ ի յերկնից՝ մարմնացաւ, մարդացաւ, ծնաւ կատարելապէս ի Մարեմայ սրբոյ կուսէն Հոգւովն սրբով: Որով էառ զմարմին, զհոգի և զմիտ և զամենայն որ ինչ է ի մարդ ճշմարտապէս և ոչ կարծեօք: Չարչարեալ, խաչեալ, թաղեալ, յերրորդ աւուր յարուցեալ, ելեալ ի յերկինս նովին մարմնով նստաւ ընդ աջմէ Հօր: Գալոց է նովին մարմնովն և փառօք Հօր ի դատել զկենդանիս և զմեռեալս, որոյ թագաւորութեան ոչ գոյ վախճան: Հաւատամք և ի ս. Հոգին յանեղն և ի կատարեալն, որ խօսեցաւ յօրէնս և ի մարգարէս և յաւետարանս: Որ էջն ի Յորդանան, քարոզեաց

նական ամենայն երեւելեաց և աներևութից արարիչ. և ի մի տէր Յիսուս Քրիստոս, յորդին Աստուծոյ, ծնեալ ի Հօրէ միածին. այսինքն յէութենէ Հօր. Աստուած յԱստուծոյ, լոյս ի լուսոյ, Աստուած ճըշմարիտ, յԱստուծոյ ճշմարտէ ծնեալ և ոչ արարեալ, համագոյ Հօր՝ որով ամենայնն եղև՝ (որ) յերկինս և յերկրի: Որ վասն մեր մարդկան և վասն մերոյ փրկութեան, իջեալ մարմնացեալ մարդացեալ, չարչարեալ և յարուցեալ յաւուր երրորդի, ելեալ յերկինս, գալոց է դատել զկենդանիս և զմեռեալս. և ի սուրբ Հոգին:

Իսկ որք ասեն՝ էր երբեմն, յորժամ ոչ էր, և յառաջ քան զծնանիլն ոչ էր, և թէ յոչնչէ եղև, կամ յայլմէ էութենէ կամ

զառաքեալն (ըստ իս յառաքեալսն) և բնակեցաւ ի սուրբսն։ Հաւատամք և ի մի միայն ընդհանրական և առաքելական եկեղեցի, ի մի մկրտութիւն, յապաշխարութիւն, ի քաւութիւն և ի թողութիւն մեղաց։ Ի յարութիւն մեռելոց, ի դատաստանն յաւիտենից հոգւոց և մարմնոց, յարքայութիւնն երկնից և ի կեանս յաւիտենականս։

Իսկ որք ասեն՝ էր երբեմն, յորժամ ոչ էր որդի, կամ էր երբեմն, յորժամ ոչ էր ս. Հոգի, կամ թէ՝ յոչէից եղեն, կամ յայլմէ էութենէ ասեն լինել զորդին Աստուծոյ՝ և կամ ըզսուրբ Հոգին. և թէ փոփոխելիք են կամ այլայլելիք, զայնպիսին նզովէ կաթուղիկէ և առաքելական եկեղեցի։

գոյութենէ ասեն լինել կամ արարեալ կամ փոփոխելի կամ այլայլելի զՈրդին Աստուծոյ, զայնպիսին նըզովէ կաթուղիկէ եկեղեցի[1]։

Տարբերութիւնն ահագին է, վասն որոյ և բաւական է այդ ապացուցելու, որ Նիկիոյ ժողովը Հայոց ականատես հայրերից առանձին իմն հեղինակաւոր նշանակութիւն չէ ստացել և համարուել է միւս տասնեակ ժողովների շարքում, որոնք առօրեայ էին քրիստոնէական աշխարհում։ Այդ պարզ երևում է նաև Հայոց հնագոյն մատենագրութիւնից, մանաւանդ Գրիգոր Լուսաւորչի ճառերից որոնց մէջ որ և է ժողովի յատուկ հեղինա-

[1] Գրչագիր յարքայական մատենադարանի ի Բերլին № 32, Թերթ 206.

կութիւն տալ չկայ։ Ինչ տեսակէտից էլ նայենք այդ հաւատամքների վրայ, մեր եզրակացութիւնը կմնայ անփոփոխ։ Դոյն այդ ճշմարտութեան վկայում է նաև պատմութիւնն, ըստ որում տեսնում ենք որ Ռստակէս, ըստ վերնոյն, միայն ժողովի կանոններն է բերել իւր հետ, որոնք և փոփոխութեամբ վաւերացուեցան Գրիգոր Լուսաւորչից նաև Հայոց համար, որպէս հին ժամանակ սովորութիւն կար զանազան եկեղեցեաց զգուշացուցիչ կանոններից օգտուիլ։ Արդ աւելորդ չէ բերել և պատմութեան վկայութիւնք։

Ագաթանգեղոսը պատմում է ճարտասանօրէն (գլ. ճիէ). (Ռստակէս) «հրթեալ հասանէր ի ժողովն մեծ Նիկիոյ ընդ եպիսկոպոսն ամենայն, ուր ամենայն տիեզերացն կարգեցաւ ընդունելութեան աւանդութեան հաւատք, կարգք լուսաւորութեան, կանոնք պայմանաւորք աստուածատուր զօրութիւն հանդերձ Աստուծոյ անչափ բարձրութեանցն։ Ուր և մեծ կայսրն Կոստանդիանոս...... Իսկ երանելին Ռստակէս գայր հասանէր պայծառ ծագեալ հաւատովքն և հաստատուն աստուածահաճոյ նիկիական կանոնօքն երեւեալ ի Հայաստան երկրին. առաջի դնէր Թագաւորին և կաթուղիկոսին սրբոյ զբերեալ աւանդութիւնսն։ Որով ս. Գրիգորի ի նոյն լուսաւորական կանոնսն յաւելեալ, առեալ զիւր վիճակն զՀայաստան երկիրն պայծառացուցեալ հանդերձ արքայիւն Տրդատաւ, զամենայն աւուրս կենաց իւրոց լուսաւորէր»։

Պարզագոյն ևս հաղորդում է «Պատմութիւն վարուց և նահատակութեանց երջանիկ հայրապետացն...» այնտեղ ասուած է. «Զայսու ժամանակաւ յայտնեալ լինէր Արիոս Աղեքսանդրացի, որ դաւաճանեալ լինէր ի դիւէ անտի, ոչ գոլ ասէր զՈրդի ի բնութենէ Հօր, և ոչ հաւասար նմա..... վասն այսորիկ իսկ ապէս

ժողով եպիսկոպոսաց լինի ի հրամանէ Կոստանդիանոսու ի Նիկիայ Բիւթանացւոց, ընդ որս և մերն Առիստակէս կոչեցաւ. և անդ հայրք երեք հարիւր ութ և տասն ըստ հոգւոյն սրբոյ տուչութեան քակեալ զաղանդն Արիոսի՝ նզովեալ մերժեն զնա ի հաղորդութենէ եկեղեցւոյ..... Իսկ ապա մերն Առիստակէս դարձեալ գայր, բերելով ընդ իւր զարժանընկալ քսան կանոնեալ գլուխս ժողովոյն. ընդ որ յաւէտ խրախ լեալ Գրիգորի, յաւելոյր այլ ևս գլուխս ի նոյն՝ ի զգուշութիւն վիճակելոց իւրոց» (Մով. Ժ. 48)։ Համաւաբար Նիկիոյ ժողովը գումարուեցաւ իսկապէս Արիոսի պատճառով. Ռստակէս ևս վերադառնալով, բերաւ ժողովի քսան կանոնները։ Որ ժողովն միայն Արիոսի պատճառով է գումարուել, յիշում է նաև Բիւզ. արագանցիկ (III. Ժ)։ Սակայն թէ հնագոյն դրութիւններից քաղելով և թէ Գրիգոր Լուսաւորչի երրորդ աշակերտաց պատմածները լսելով, ամփոփում է պատմահայրն Մով. Խորենացի հետևեալը. «Յայնժամ գայ հասանէ հրովարտակ ինքնակալին Կոստանդիանոսի առ մեր արքայն Տրդատ, զի զսուրբն Գրիգոր առեալ ընդ իւր ի ժողովն երթիցէ. զոր ոչ առ յանձն Տրդատ.... բայց և ոչ սուրբն Գրիգոր հաւանեցաւ երթալ. զի մի զառաւել պատիւ վասն խոստովանողական անուանն ի ժողովոյն ընկալցի. որպէս զի այսպէս փափաքանօք և մեծաւ փութով կոչէին։ Այլ նոքա առաքեն փոխանորդ իւրեանց զՌըստակէս, հանդերձ ճշմարիտ խոստովանութեամբ երկոցունց՝ գրով։

Երթեալ Ռստակէս ընդ մեծին Ղևոնդի, հասանէ ի քաղաքն Նիկիացւոց, ուր հղեն ժողովեալ հարք երեքհարիւր և ութևտասն ի քակտումն արիանոսաց զորս նզովեալ մերժեցին ի հաղորդութենէ եկեղեցւոյ. սապէս և ինքնակալն արտասահմանեաց ի մետաղս։ Ապա

դարձեալ Ռոստակեայ արժանահաւատ բանիւ և քսան կանոնեալ գլխովք ժողովոյն, զայ Հանդիպի Հօրն և արքային ի Վաղարշապատ քաղաքի։ Ընդ որ ուրախացեալ սրբոյն Գրիգորի սուղ ինչ գլուխս յինքենէ ի կանոնս ժողովոյն յաւելու, վասն առաւել ողջուշութեան իւրոյ վիճակին» (II. ՁԹ)։

Արդ Արիոսի պատճառով գումարեալ այդ ժողովին Հրաւիրուեցաւ Տրդատ Լուսաւորչի Հետ գնալու. Հրաւէրը թախանձագին էր։ Նոքա ուղարկեցին Ռոստակէսին իւրեանց գրաւոր խոստովանութեամբ Հանդերձ։ Ռոստակէս բերաւ 20 գլուխ կանոնները արժանահաւատ գրութեամբ[1], զորոնք և ս. Գրիգոր աւելացումներով յարմարեցրեց իւր վիճակին։ Բոլոր այդ վերև պատմածք Համառօտում է և Յովհան. կաթուղիկոս (Թ) և ասում.« Իսկ ապա մեկին Առիստակէս դարձեալ անտի գայր բերելով ընդ իւր զարժանընկալ քսանական կանոնեալ զգլուխս ի ժողովոյն, ընդ որ յաւէտ խրախ լեալ սրբոյն Գրիգորի՝ յաւելոյր այլ ևս գլուխս ի նոյն ի զգուշութիւն վիճակելոց իւրոց»։

Եզրակացութիւնը պարզ է. Հայք ոչ մի կապ չունեին Նիկիոյ ժողովի Հետ, այլ մասնակցեցին քրիստոնէական նախանձախնդրութեամբ, որպէս սովորութիւն էր, զի Հայք ևս նման ժողովներ ունէին, որոնց Հոռոմոց Հայրերն ևս երբեմն մասնակցել են։ Ռոստակէս նպաստեց ուղղափառութեան յաղթանակին և Արիոս պարտեցաւ, ուստի Նիկիոյ ժողովը յարգուեցաւ ազատամիտ եկեղեցիներում իբրև «ս. ժողով» և այդ ևս երբ արևմտեանք Հին Հաւատքը խախտեցին։

---

[1] Էմինը Թիւրիմացութեամբ և կամակութեամբ թարգմանում է այդ խօսքը՝ «արժանահաւատ խոստովանութեամբ» — «съ достовѣрнымъ исповѣданіемъ», յէջն 157. Մով. Խոր, ոսկէքն թարգմանութեան։

## Գ.

## Կ. ՊՕԼՍԻ 381 ԹՈՒԻ ԺՈՂՈՎԸ.

*«Եւ ոչ յայլմէ ումեքէ այնպէս երկնչիմ ես՝ որպէս յեպիսկոպոսաց, բաց ի սակաւուց»:*

ՈՍԿԵԲԵՐԱՆ.

*Կոստանդիանոսից յետոյ երկպառակութիւնք շարունակուեցան. Աղեքսանդրիոյ միահեծան գահակալն Աթանաս* (326) *պահում էր ամբողջ պետութեան եկեղեցական գործերն իւր ձեռքում, որպէս ժառանգել էր իւր նախորդից. Նա այնպէս զօրացել էր, որ այլ ևս իւր աթոռի թշնամի արիոսականութեան վերահաստատման հնար չէր թողնում, թէև կայսրները պետութեան խաղաղութեան համար երբեմն ձգտում էին առ այդ: Աքսորւում էին մերթ Արիոսեանք մերթ Աթանասեանք, բայց անօգուտ: Արքունի քաղաքականութիւնը պահանջում էր ընկճել Աղեքսանդրիոյ զօրութիւնն, սակայն Կոնստանց Աղեքսանդրիոյ աթոռին ույժ տալով, խանգարում էր Կ. Պօլսի աթոռի միահեծանութեան ձգտելուն: Երբ Կոնստանցի հովանաւորութեան ներքոյ Աթանաս վերադարձաւ աքսորանքից և նորա մեռնելուց յետոյ կրկին աքսորուեցաւ Կոնստանցիոսից, Եգիպտացիք վտարանջեցան և միայն զէնքի տակ խաղաղուեցան: Թէ ինչպիսի սարսափ էր ձգել Աթանասը Կոստանցիոսի սիրտն, երևում է նորանից, որ անապատ քաշուելուց զկնի ոգևորում էր իւր ժողովրդին, այնպէս որ կայսրը գլխագին նշանակեց,*

սակայն ոչ ոք յանձն չառաւ հզօր եպիսկոպոսի գլուխը բերելու. Աթանասեանք նեռն էին անուանում կայսրին։ Եկաւ հեթանոս կայսրն Յուլիանոս, ապա հետևեցաւ արիոսեանը՝ Վաղէս և խռովութիւնն առաւել սաստկացաւ մինչև Թէոդոս Մեծն (379)։ Վէճերն այնպէս տաղտկալի էին որ շատ եպիսկոպոսք զզուելով քաշւում էին հասարակական ասպարէզից։ «Ոյք երեկ մէկալօր, ասում է Գրիգոր Նիւսացին, արհեստանոցից են դուրս եկել, թեկն են անում իսկոյն դաւանաբանութեան ուսուցչի։ Ոյք թերևս ստրուկներ են եղել և ծառայութիւնից փախել, խորին պատուով իմաստաբանում են անըմբռնելի իրաց վրայ։ Ձեզ անշուշտ անծանօթ չէ, թէ ինչ մարդկանց վրայ է մեր խօսքը. ամբողջ քաղաքը՝ շուկան և փողոցները լիք են այդպիսիներով — հնոտիավաճառների, ըզգեստավաճառների, դրամափոխների, նպարավաճառների վրայ է իմ խօսքը։ Եթէ հարցնում ես թէ ինչքան օբալ (դրամ) պիտի ստանայ, իմաստաբանում է ծնեալի և անծինի վրայ» և այլն։ Այսպիսի խառնակ վիճակում էր գտնւում պետութեան եկեղեցական աշխարհն. իսկ ժողովնե՞րը. «ես, եթէ ճշմարտութիւնն ասել պէտք է, ասում է նա, այնպէս տրամադրուած եմ, որ եպիսկոպոսների ամենայն մի ժողովից փախչում եմ, վասն զի դեռ երբէք չեմ տեսած, որ մէկ ժողով որ և է լաւ վերջ ունեցած լինի կամ թէ չարիքը նորանով վերացած լինի, այլ միշտ դոքա աւելի ևս բազմացել են, զի վիճասիրութիւնն և իշխանասիրութիւնը, (մի կարծիր թէ ես սաստ կոշտ եմ արտայայտւում) այդ ժողովներում ամենայն նկարագրութիւնից վեր է և մարդ աւելի շուտով նախատինքի և գանգատի կենթարկուի, եթէ համարձակուի այլոց վատութեան դէմ խօսելու, քան թէ յաջողութիւն կունենայ այդ վատութիւնքը յաղթելու։ Ուստի և ես յետ եմ քաշուել և դորանում եմ միայն իմ հոգու

հանգստութիւնը գտել[1] » . . . . Այս էր իրերի վիճակը. վէճեր յարուցանել և «Հաւատոյ գործերը[2]» զոհել սովորական էր այդ՝ խառն ժամանակ։

Այս իսկ միջոցին Թէոդոս Թագաւորելով, շուտով հրաման հանեց 380-ին փետր. ի հաստատութիւն Նիկիականին, բայց երբ այդ չօգնեց, 381-ին 10 յունուարի վերստին հրովարտակով արգելեց բոլոր աղանդներն և հականիկիականաց պաշտամունքները[3]։ Այսու հանդերձ նորա երկուտարուայ բոլոր ջանքերն անօգուտ անցան. Նա չկարեցաւ խաղաղութիւն հաստատել և ճարահատեալ դիմեց ժողովի օգնութեան։ 381-ի մայիսին գումարեց Կ.Պոլսի ժողովը։ Բացի խաղաղութիւն վերականգնելը պիտի և Աղեքսանդրիոյ աթոռը յետ քաշէր, ուստի և որոնց նորա հակառակորդ արևելեան եկեղեցիների օգնութիւնն, որոնք անվստահ էին և միայն Աղեքսանդրիոյ աթոռին չենթարկուելու էին ձգտում։ Թէոդոս տուաւ ժողովի նախագահութիւնն ոչ թէ Աղեքսանդրիոյ եպիսկոպոսին, այլ Անտիոքայ Մելիտիոսին, որին և արևելեան բաժնի գլուխ կարգեց։ Անտիոքայ օգնութեան անհրաժեշտութիւնն արտայայտեց նա, երբ մերժեց եպիսկոպոսաց խնդիրը՝ ժողովն Աղեքսանդրիայում գումարելու։ Թէոդոսի հոգը—Կ.Պոլսի գերիշխանութիւնն էր. այդ էր պէտք կայսրակցի աթոռը խորտակելու համար. դորան նպաստաւոր եղաւ Մելիտիոսի մահն, որից յետոյ նախագահեց ժողովին Պօլսի Նեկտարիոս եպիսկոպոսը։ Իշխող ժողովականք արտայայտեցին ժողովի բանահիմն անդաղրում բացականչութիւններով՝ «արևելքից է ծնում արեգակն, արևելքից է մարմնացեալն Աստուած լուսաւորել»։ Թէոդոս Մեծն այդ իսկ արևելքն զօրացնելու համար՝ բարձրացրեց Պօլսի եպիս-

[1] Նամակ 5ծ, 381-ից յետոյ գրեալ: Տես և Նազիանց ճառ XXII. 4. 416. 14. 423. — [2] Նազիանզ. Նամ. 65. ճառ XXXII. 4. 581.
[3] Cod. Theod. XVI. 1, 2: 5, 6:

կոպոսին ևս, այլ և Երուսաղէմի «մայր ամենայն եկեղեցեաց» հաստատեց, հակառակ Աղեքսանդրիոյ աթոռին, որ ձգտում էր Պաղեստինի վրայ իշխելու։ Ժողովը նզովեց Մակեդոնին, առաջին կանոնով հաստատեց Նիկիականը. երկրորդ կանոնով արգելեց եպիսկոպոսներին իրար գործերին խառնուելու. երրորդ կանոնով որոշեց որ Կ. Պոլսի պատրիարքն որպէս Նոր-Հռովմայ աթոռակալ, Հին-Հռովմայ հետ հաւասարապէս յարգուի։ Իսկ փոքր ինչ ուշ դուրս եկաւ Թէոդոսի հրովարտակն, որով նա պատրիարքութիւն տուաւ Երուսաղէմի եպիսկոպոսին։ Այս էր Կ.Պոլսի ժողովի 150 ընտրովի եպիսկոպոսաց գործը. Նիկիան քայլ մի առաւ և Աղեքսանդրիոյ շարքում դրաւ Հռովմայ և Անտիոքայ աթոռները. Կ.Պոլսի ժողովն ևս փոքր ինչ աւելի առաջ գնաց։ Սակայն դեռ դարանով Աղեքսանդրիոյ գերիշխանութիւնը չընկուեցաւ. Նա 1/2 դար ևս իւր առաջնակարգ դերը պետութեան մէջ կատարեց, մինչև որ սրի զօրութեամբ նուաճուեցաւ։

Այդ Կ.Պոլսի այդ ժողովի եպիսկոպոսաց 150 թիւը պարզ ցոյց է տալիս որ պետութեան ամբողջութեան մասնակցութեամբ չէ եղել։ Այժմ տեսնենք արդեօք Հայք մասնակցեցին Բիւզանդական այդ ժողովին։ Անկանասեռ պատմիչը Փաւստոս, որ իւր պատմութեան ամբողջ կէսը նուիրել է Հայոց կաթուղիկոսաց և անսահման շաղակրատութեամբ պատմում է նոցա կենաց պարագայք, տակաւին չէ յիշատակում որ և է ժողովի մասնակցութիւն։

Խորենացին դար մի յետոյ գրում է (III. ԼԳ). Թէոդոս «դարձեալ զամենայն հարս սուրբս, որք յաղագս ուղղափառութեանն արտասահմանեալ էին. ընդ որս և զմեծն Ներսէս ածեալ առ իւր ի Բիւզանդիոն, պահէ մեծաւ պատուով, մինչև ճշմարտութեանն ստուգեցաւ հաւատ, որ յաղագս ամբարշտին Մակեդոնի հայհոյութեանցն . . . »։ Այնուհետև պատմելով վարդապետու-

թիւնը, յարում է. «Եւ ժողովեալ սուրբ հարքն ի թագաւորեալ քաղաքն Բիւզանդիոն, Դամասիոս Հռով-մայ(՞), Նեքտառիոս Կ. Պօլսի . . . . և այլ եպիսկոպոսք, միանգամայն 150 հարք, որք նզովեալ մերժեցին զՄակեդոն և զամենայն հոգեմարտսն»։ Ուրեմն Խոր. ևս չէ յիշում թէ Ներսէս որ և է ժողովի մասնակցած լինի. ըստ նորին այդքան միայն՝ որ Թէոդոս Ներսիսի միջոցով ստուգեց թէ որն է ճշմարիտ հաւատը։ Բայց Վաղէս մեռաւ 378-ին օգոստ. 11-ին, իսկ Պօլսի ժողովը գումարուեցաւ 381-ին մայիսում, ըստ որում Ներսէս չէր կարող ամբողջ 2 տարի տարաբութեան մէջ մնալ և իւր երկրի խռովութիւնք մոռանալ, մանաւանդ որ այդ միջոցին ոչ ոքի մոքով, որպէս տեսանք, ժողովի գումարումը չէր անցնում։

Սոյնը հաստատում են և հետագայ դարերի գրուածները։ Յովհան կաթուղիկոսն աւելի քան 4 դար յետոյ գրում է (գլ. ԺԲ). «ընդ որս և զմեծն Ներսէս ածեալ առ իւր պահէր, մինչև ի ձեռն նորա զամբարիշտ հայհոյութիւնն Մակեդոնի ի ստուգութիւն հաւատոյ ճըշմարտութեան դարձուցէ։ Եւ ապա ժողով եպիսկոպոսացն միանգամայն ՃԾ ի Բիւզանդիոն արարեալ, նզովեալ մերժեցին ի բաց զՄակեդոն . . . . .» որ և ամենապարզ կերպով արտայայտում է մեր հետևութիւնը։ Բայց Փաւստոս պատմում է, որ Վաղէս «զառաջինն մեծապայծառ փառօք մեծաւ շքով մեծարեաց զնոսա» (IV, Ե.). իսկ Ներսիսի վարուց պատմիչն ասում է. «Վաղէս զառաջինն մեծարեաց յոյժ զնախարարսն Հայոց Մեծաց, և եդ զաթոռ մեծին Ներսիսի ի վեր քան զմետրապօլտացն և քան զպատրիարքին» (էջ 53). և ապա վերստին գրում է. Թէոդոս ածեալ առ ինքն և եդ զաթոռ մեծին Ներսիսի ի վեր քան զամենայն եպիսկոպոսացն որ ժողովեալ էին և զպատրիարքին ևս, որ վասն հոգէմարտին Մակեդոնի էին գումարեալ» (էջ 62)։ Այս երկրորդ մեծարանքը չէ

յիշում Փաւստոս, այլ գրում է որ Վաղէսի մահից յետ Ներսէս ինքն դարձաւ։ Համեմատելով այդ երկու մեծարանքները, տեսնում ենք որ յար և նման են և կրկնութիւն. բայց և այնպէս երկրորդ կէտում «ածեալ առ ինքն» «և եդ զաթոռ» . . . . . խօսքերի մէջ անկարելի է 2 տարի թողել. ըստ որում և պարզ է որ կայսրական խորհրդակցութիւն կամ կաճառ է եղել Մակեդոնի պատճառով, վասնորոյ և միայն մ ի պ ա տ ր ի ա ր ք է ներկայ եղել։ Այսու հանդերձ բոլոր պատմիչները գիտեն որ Արշակ արքան բանտարկուեցաւ Շապուհ Բ-ի օրով. այդ Շապուհ Բ թագաւորեց 309—379։ Մեծն Ներսէս թագաւորեցրեց Պապին դարձեալ Շապուհ Բ-ի օրով. ընդ նմին Ներսիսի դառնալու միջոցին Արշակն էր շքով հանդէպ գնացողը։ Այնուհետև Ներսէս դժկամակած Արշակից, հեռացաւ արքունիքից (Բ. IV, ԺԵ. ԾԱ.), ըստ որում նորա տեղը բռնեց Զունակ անունով «սուտանուն քահանայ» մի (Բ և Խ. III, ԻԴ.)։ Արշակ անդադրում պատերազմ ունեցաւ Պարսից դէմ և նախարարք դժգոհութեամբ դիմեցին առ Ներսէս (Բ. IV, ԾԱ)։ Հուսկ ուրեմն երբ Արշակ բռնուեցաւ, Մուշեղ ժողովեց նախարարաց և գնաց առ կայսրն, խնդրելով թագաւորեցնել Պապին. անտի դառնալով, «գային և ի մի վայր բովանդակէին, և լինէին ի խնդիր սրբոյն՝ մեծի հայրապետին Ներսիսի» . . . «ապա մեծաւ ջանիւ հազիւ հաւանեցուցանէին զնա երթալ նմա ընդ նոսա ի բանակն արքունի. զի յաւուրց ժամանակին ի մահուանէն Գնելոյ մինչև յայն ժամանակն թագաւորութեան Պապայ ոչ էր երթեալ նա ի բանակն արքունի» . . Այսպէս Փաւստոս նմին նման պատմում է և Խորենացին թէ՝ «Մեծին Ներսիսի առեալ զամենայն նախարարսն, որք կամակից էին ընդ տէրութեանն Պարսից և որք ոչն, և զապրեալ Կամսարականն Սպանդարատ, սոցա միաբանութեամբ ածէ զՊապ յաշխարհս Հայոց (Խ. III, ԼԷ)»։

Հետեւաբար Մեծն Ներսէս Արշակի մահուան ժամանակ, որ 379-ից առաջ է յիշատակւում, արդէն հայաստանումն էր։

Սակայն Ներսէս Մեծն 381 թուին ոչ միայն Կ.Պոլսում չէր, այլ և վաղուց արդէն վախճանուած էր։ Այս հաստատական իրողութիւն է։

Փաւստոս պատմում է (IV. Ե, Զ.), որ Վաղէս աքսորեց Ներսէսին, ինչպէս և ամենայն ժողովրդոց առաջնորդաց իսկ «զնոցա տեղիսն կալան մշակք սատանայի»։ Փաւստոս յիշում է այդ աքսորանքից յետոյ (IV, Ը, Թ.), որ Վաղէս կեսարիայումն էր և քննութեան ենթարկեց Եւսեբիոս եպիսկոպոսին և բանտարկեց, ընդ նմին և սաստիկ նեղեց քրիստոնէից։ Եւսեբիոսին յաջորդեց Բասիլիոս, որ նոյնպէս բանտարկուեցաւ։ Այդ հաստատ գիտենք, որ Վաղէս իւր հալածանքն ու աքսորելն սկսաւ 368-ից ոչ յետոյ. Բասիլիոսն ընտրուեցաւ 370-ին (†379-ին). քանի որ Ներսէս աքսորուեցաւ Բասիլիոսից առաջ, ուրեմն 370-ից ուշ չի կարող լինել։ Այդ խոստովանում է և Փաւստոս, ըստ որում ասում է որ Ներսէս աքսորանքից վերադարձաւ 9 տարի յետոյ, հաշուելով նորա աքսորուելու տարին 368-ը և վերադարձը Վաղէսի մահից զկնի 378-ին։ Եւ որովհետև Փաւստոս զանազան առասպելների հետեւելով, շեղւում է պատմական ճշտութիւնից, Ներսէսի դարձն այդպէս ուշ դնելով և Վաղէսին մեռած համարելով, այլ եւս իւր պատմութեան բացը լրացնել չէ կարենում և չէ յիշում թէ այնուհետև որ կայսրն էր պատերազմի մէջ։ Ներսէսի գալուց յետոյ եւս Արշակ արքայի բոլոր գործերը պատմում է և ասում է թէ 34 տարի պատերազմ վարեց Ներսէսի առանձնացած ժամանակ, Վարդանի մահից յետոյ և ապա թէ Շապուհ թէ Արշակ մինչև V դարու սկիզբն ապրում են Փաւստոսի երևակայութեան մէջ։

Սակայն եթէ Ներսիսի աքսորանքն եղելութիւն է և ինը տարին չափազանցութիւն ինն ամսուայ, հաւանանալի է որ նա դարձել էր արդէն 369-ին։ Խորենացին, որ աշխատում է Հայոց պատմութիւնը համաձայնեցնել Բիւզանդականին, ունեցել է իւր աչքի առաջ Փաւստոսի յիշարկած աղբիւրը (գուցէ Ներսիսի կենսագրութիւնը (Սոփերք))։ Ուստի և չափազանցութիւնք ուղղագրելով և անգիտացած կայսրի անունը Թէոդոսին ճանաչելով, Ներսիսի կեանքը ձգում է մինչև 385-ը։ Այդ զարմանալի չէ, վասն զի նա չգիտէ որ Վաղէս քանի մի տարիներ Հայաստանի կողմերումն է եղել, որ Փաւստոսին քաջ յայտնի է։ Բայց Փաւստոսի, «ամս ինն»ը ուղղելով «ամիս ինն», բանը չէ վերջացնում. ինքը լաւ գիտէ որ Ներսէս ոչ թէ ուղղակի Կ. Պօլիս գնաց, այլ Կապադովկիայ. և թէ այդ 368-ին էր, ի՞նչպէս կարող էր 9 ամսից յետոյ Վաղէսի մահուամբ վերադառնալ։ Այդ լաւ գիտենալով, ահա չէ յապաղում և Ներսիսին երկու 'անգամ է տանում դէպի արևմուտք, ընդ նմին երկու անգամուայ դեսպանութիւնն էլ պատմում է լիովին յար և նման կրկնութեամբ (III, ԻԱ—ԻԹ)։ Այլ Ներսէս այդ ժամանակ ոչ մի անգամ էլ Կ. Պօլիս չէ գնացել, վասն զի հաստատ է, որ Վաղէս 370 թուից առաջ արևելք գնալով, մինչև 376 թիւը Պարսից պատերազմներում է եղել, ըստ արևմտեան պատմագրաց, իսկ այս 376 թուին արագապէս արևմուտք գնաց յարձակուող Գոթաց դէմ և մեռաւ մի ճակատում։

Արշակ բռնուեցաւ յունա-պարսկական պատերազմի միջոցին. Վաղէս թագաւորեցրեց Պապին, որի յաղթութեան ժամին Ներսէս նորա հետ էր և աղօթում էր Նպատի վրայ։ Այնուհետև Փաւ. յիշում է Ներսիսի մահն։ Բայց շատ չանցաւ և ահա Պապն էլ իւր վերջակէտն ունեցաւ. «Իշխանքն Յունաց և զօրքն նոցին տակաւին

էին յերկրինն Հայոց», և երբ կայսրի հրամանն եկաւ գաղտուկ, խնջոյքի միջոցին սպանեցին նորան։ Այդ բոլորը կատարուեցաւ ըստ պատմական ամենայն տեղեկութեանց Շապուհ Բ-ի օրով։

Այսպէս ուրեմն Ներսէս Մեծի մահն ոչ մի կերպ չէ կարելի Թէոդոսի ժամանակ դնել։ Բայց աւասիկ Յունաց ականատես Ամիանոս Մարցելինոս լատինագիր պատմիչն, որ աւանդել է 353—378 դէպքերը, հաղորդում է որ Պապ սպանուեցաւ 374-ին. ուրեմն հաստատ է որ Ներսէս վախճանուեցաւ 373-ին։

Այս մանրամասն բովանդակութիւնից յետոյ, այլ և աւելորդ է Կ. Պօլսի ժողովի մասնաւոր նշանակութիւնը բացատրել. բայց և այնպէս յիշենք և մի կէտ ի լրումն ամենայնի։ Մեզ համար մասնաւորապէս ապահով աղբիւր են ժողովների ստորագրութեանց տախտակներն. արդ 325-ի Նիկիոյ ժողովի հայրերի անուանք գտնում ենք ճշտօրէն նոցա ստորագրութեան տախտակում, ի շարս որոնց կայ և Ռստակէսի անունը բոլոր թարգմանութեանց և բնագրաց մէջ միաձայն հայերէնին, իսկ Կ. Պօլսի այդ ժողովի ստորագրական տախտակի մէջ Հայոց անուան հետք չկայ։



## Դ.

## ԻՐԵՐԻ ՎԻՃԱԿ Դ ԴԱՐՈՒ ՑԱՆԳՄԱՄԲ.

*«Յարդեանցն փործի ճշմարտութիւն»:*

ԴԱՒԻԹ ԱՆՅԱՂԹ.

Յոյն-պարսկական պատերազմը վերջացաւ Դ. դարում Հայոց կորստաբեր մի խաղաղութեամբ։ Հայք ձեռքից տալով Պարսից դաշնակցութիւնն և Հռոմոց հաւատալով, դաւաճանուեցան և մնացին երկու թշնամեաց մէջ։ Բիւզանդ նախ փորձեց Հայոց ձգել Պարսից սրի տակ (Բիւզ. IV, ԻԱ) թուլացնելու համար և ապա համաձայնելով բաժնեց Հայաստանը Պարսից հետ, նկատելով թէ «լաւ է զի այսու եղծանել և խանգարել կարասցուք զայս թագաւորութիւնս. նախ ընդ երկու բաժանել երկու թագաւորաքս Արշակունիք՝ զորս կացուցաք, ապա և նոցա կրծել ջանասցուք, աղքատացուցանել, ի մէջ արկանել ի ծառայութիւն, զի մի՛ կարասցեն ի մէջ մեր ամբառնալ զգլուխս» (Բիւզ. V, Ա III, ԽԱ.)։

Այս ծանր հարուած էր, որ ոչ թէ տապալեց, այլ զարթեցրեց Հայոց և զարկ տուաւ նոցա ներքին ոյժ կազմելու, ամրացնելու սուրբ Գրիգորի ներշնչած հոգին ազգի մէջ։ Երկու ատեցող ազգերի մէջ «տատանէաք, որք կեղէին զկեանս մեր զանազան վշտօք, վասն որոյ եղկելի գտաք քան զամենայն ազգս» . . . . . . գրում է ժամանակակից մի ճառախօս (Սոփերք. Բ, 7)։ Հոգի էր պէտք որ անձեռնմխելի մնար։ Ս.Սահակն որ վշտահար, բայց քաջակամ ականատես էր այս ամենին, օգնում էր

ամենայն առթից, ս. Ներսիսի նման, իւր ժողովրդի մէջ շրջելու և աստուածային ամրութիւն տալու նորան. սակայն բան մի պակասում էր Հայոց, որ շատ հարուածում էր ազգի ինքնուրոյնութեան, կախեալ պահելով նորան օտարներից. այդ էր Հայոց տառերի պակասութիւնը։ Հայք մինչև այդ ժամանակ կիրարկում էին ասորերէն և մասամբ յոյն տառեր. իսկ Հայոց հին նշանագիրք պակասաւոր գոլով, անուշադիր էին մնացած։ Նոյն իսկ Վռամշապուհ թագաւորին այս հոգ պատճառեց և նա պատեհ առթից օգտուելով, ձգտում էր ինքնուրոյն տառեր հնարել տալու։ Սակայն այդ ձգտումն առաւել փառուեցաւ ս. Մեսրոպի մէջ, երբ նա նկատեց որ իւր կամ ս. Սահակի բացակայութիւնը զրկում էր ժողովրդին Ս. Գրքի քաղցրութիւնից, զի այդ ընթերցուածները կատարւում էին ասորերէնի վրայով թարգմանաբար։ Նա հետամուտ եղաւ և Վռամշապուհի և ս. Սահակի քաջալերութեամբ անցաւ Ասորիք, հարցափորձ արաւ և Հայոց հին գրերը գտնելով, բերաւ և առ ժամանակ ուսուցման հետևից ընկաւ։ Իսկ երբ դոցա պակասութիւնը նկատեց, վերստին հետամտեց և ոչ մէկից բաւարարութիւն չգտնելով, յոյսը դրաւ իւր և Աստուծոյ վրայ և Սամոսատ քաղաքում գրերին լրացումն տուաւ, ոչ միայն պակասորդները յօրինելով, այլ և եղածը կոկելով, ուստի և իւր ժամանակակիցներից ամբողջ այբուբէնքի հեղինակ հանդիսացաւ։ Վռամշապուհի է տարին, (Կորիւն 21) որ թագաւորեց 383-ին (Խոր. III, Ծ. ԾԱ.) Հայոց լեզուն յարակայ շունչ ստացաւ. իւրաքանչիւր հայ անհատ անգամ ապահովութիւն ինքնիշխան ազատութիւն ստացաւ, որպէս Ճառախօսն է ասում, թէ «աչք կուրաց բացցին, և ականջ խլից լուիցեն. այժմ երազեսցէ կաղութիւն լեզուիս մերոյ . . . . . այժմ ոչ կարօտասցի ոք թարգմանութեան և ոչ ընթասցի ոք առ ոք թէ ընթերցիր ինձ զայս»։

Զօրաւոր միջոց անհատի ազգային-պատմական ինքնագիտակցութեան — ահա այդ մեծ գործի էութիւնն, որ հիմնաքար եղաւ Հայոց եկեղեցու սրբազգաւիթ դպրոցների։ Սուրբ էր այդ միջոցն, սրբութեան մէջ և դրոշմուելով երևեցաւ, երբ ս. Մեսրոպ իւր Յովհան և Յովսէփ աշակերտների հետ Թարգմանեց Հին Կտակարանն և տուաւ առաջին հայաբարբառ ընթերցարանը հայի ձեռքը[1]։

Երբ ս. Մեսրոպ իւր Նոր դպրոցում խումբ մի ուսեալ վարդապետներ պատրաստեց, տուաւ նոցանից քանի մին և դիմեց դէպի հիւսիս, քարոզեց ի Վրաստան և Աղուանք, գտաւ նոցա համար ևս գրեր, բացաւ դպրոցներ և իւր աշակերտաց ոմանց եպիսկոպոս ձեռնադրեց նոցա՝ գործի յառաջադիմութեան ի նպաստ. ապա դառնալով հանդիպեց ս. Սահակին Նոր Կտակարանը Թարգմանելիս (Խոր. III, ԾԴ.)։ Այս յաղթող գործունէութիւնից խոցուեցաւ Բիւզանդ և սկսաւ չարիք նիւթել Հայոց լուսաւորութեան դէմ. նա բանի միջոցների դիմեց և ստիպեց իւր բաժնի Հայոց ոչ թէ ասորերէն գրեր, այլ և յունարէն գործածել, սակայն Հայաստանեայց եկեղեցու քաջարի ամոլն օգնութեան հասաւ իւր հօտին և իւր մի խումբ պատրաստի աշակերտներով անցաւ Հայոց անիշխանութեան միջոցին դէպի արևմուտք (շուրջ 410 թուին)։ Բիւզանդ, որ մինչև այդ ժամանակ տակնահան էր գործում Հայոց դէմ, այժմ դիմակը վերցրեց և արգելեց ս. Սահակին իւր եկեղեցական վիճակներում քարոզելու. «այնչափ ատեցեալ զմեզ, մինչ զնշանագիրս անգամ ոչ ընկալան», գրում էր վշտացած ս. Սահակը։ Հարկաւ այդ անիրաւութիւնը նորան չյուսահատեցրեց և նա իսկոյն ս. Մեսրոպի և Վարդան Մամիկոնեանի հրեշտակութեամբ հակիրճ բողոք մի առաքեց առ կայսրն

1 Խոր. III, 53.

Թէոդոս, պահանջելով չխառնել իւր եկեղեցական իշխանութիւնն իւր վիճակներում։

Թէոդոս մեղադրում է ս. Սահակին նախ՝ որ նա «ամենայն պատիւ» միտել էր առ Պարսից Թագաւորն և չէր կամեցել գոնէ մի Թղթով ինքեան՝ կայսրին ծանօթանալ. և 2), որ արհամարհել էր Յունաց ճարտարներին և գրերի գիւտն Ասորիքում որոնել։ Ատտիկոս պատրիարքն ևս մեղադրում է ս. Սահակին, զի նա Ոսկեբերանի օգնութեան չէր դիմել. և քանի որ Ոսկեբերանը մեռաւ 407-ին, անշուշտ այս նամակագրութիւնը շատ ուշ քան 410 թիւը չէր կարող լինել։ Բայց աստուածային աջն էր որ միշտ օգնում՝էր Հայոց. Աստուծոյ տաճարն էր՝ որ պատսպարում էր Հայոց ցրուեալ հօտին, Աստուծոյ Թևն էր՝ որ հովանաւորում էր Հայոց գործերն. և ահա այստեղ ևս Աստուած է օգնութեան հասնում, որպէս գրում է Թէոդոս չար նախանձով. «բայց զի յետոյ պատմեաց մեզ Մեսրոպ, թէ կատարումն արուեստից ի շնորհաց վերնոյն եղև, գրեցաք զի ամենայն փութով ուսցին, և զքեզ պատուով ընկալցին...» (Խոր. III, ԾԷ.)։ Այսպէս աստուածային շնորհաց հովանաւորութեան ներքոյ Հայոց եկեղեցւոյ հանճարաւոր ամոլը յառաջ տարաւ ազգի ինքնուրոյնութեան գործը, եկեղեցու գաւթում ժողովրդի ինքնագիտաստութեան զօրութիւն տալով։ Անսասան հիմքն աստուածային բազկով դրուեցաւ, շինութիւնը բարձրացաւ ամրապէս, ազգը իւր հոգու մէջ իւր պատիւը ճանաչեց և ապահովուեցաւ. այնուհետև վտանգ չկար մարմնաւոր հօսանքի դիմաց։ Ս. Մեսրոպ վերադարձաւ շուտով և բերաւ Ս. Գրոց նոր օրինակներ, որոնց համեմատեցին վերստին Հայոց Թարգմանութիւնը (Կոր.)։ Երբ 420-ին Թագաւորեց Արտաշէս, Մեսրոպ շարունակեց իւր քարոզչական գործունէութիւնը պետութեան Թոյլ կողմերում. ապա ուղարկուեցան Յովսէփ և Եզնիկ յԵդեսիա, ասորա-

կան գիրքերը թարգմանելու, որոնք պատուէրը կատարելով ուսումնական նախանձախնդրութեամբ դիմեցին ի Բիւզանդ նոցա հետեւեցին նոյնպէս ինքնակամ՝ Ղեւոնդ և Կորիւն (Մելիտինէից), մինչդեռ ուղղակի առաքուածք՝ Յովհան և Արձան շատ ուշ հասան Կ. Պոլիս։ Ըստ երեւոյթին այս առաջին աշակերտաց անցուդարձը եղել է 425—434 միջոցին (Խոր. III, Կ։ Կր. 28) եկեղեցեաց ս. Հարց գրուածների ստոյգ օրինակներ, որոնց թարգմանութեան համար առաւել նախապատրաստութիւն էր պէտք, վասն որոյ ուղարկեցին Խորենացուն և ընկերներին յԱղեքսանդրիա «վերաբանութեան» կամ բարձր աստուածաբանութեան (Anagogie) ճեմարանը (Խոր. III, ԿԱ)։

427-ին Հայոց անմիտ նախարարքը, որոնք խելահասութիւն չունէին հասկանալու, թէ ազգի պետի վատութիւնից վատթարագոյն է նորա անկումն, որոնք առժամանակեայ դոլով, չգիտէին որ ազգի գահը չէ կարելի վոհել նորա անցաւոր-մահկանացու գահակալի տապալման, որոնք վատին ընտանեբար խրատելու խանդն ու եռանդը չունէին, հանրականն անձնականին զոհեցին, առանց վարանման՝ ազգային գերդաստանի ներքին գործն արտաքին օտար դատաւորի ձանկը ձգեցին և թշնամու դրան ամբաստանեցին իւրեանց հարազատ արքային։ Վատ էր Արտաշէս, բայց իւր վատութեամբ հանդերձ գահապահ էր. անկաւ նա, անկաւ և Արշակունեաց հզօր գահն, որ ինչպէս էլ լինէր, քաջալեր պահապան էր ազգի։ Իսկ ս. Սահակ, որի սկզբունքն էր «ինձ քաւ լիցի մատնել գայլոց զիմ մոլորեալ ոչխար» (Խոր. III, ԿԳ), սրբազան բանահիմն, իւր անվեհեր հաւատարմութեան համար արգիլուեցաւ Պարսից դրանը։ Բայց շատ չանցաւ և նոյն գահազրուժ նախարարաց աղաչանօք դարձաւ 430-ին։ Այնուհետեւ թողնելով ս. Մեսրոպին ս. Էջմիածնի ընդհանրական եկեղեցում, ինքն ևս շարունակեց «զհոգեւոր կաթնն տի-

Թէոդոս, պահանջելով չխափանել իւր եկեղեցական իշխանութիւնն իւր վիճակներում։

Թէոդոս մեղադրում է ս. Սահակին նախ՝ որ նա «ամենայն պատիւ» միտել էր առ Պարսից թագաւորն և չէր կամեցել գոնէ մի թղթով ինքեան՝ կայսրին ծանօթանալ. և 2), որ արհամարհել էր Յունաց ճարտարներին և գրերի գիւտն Ասորիքում որոնել։ Ատտիկոս պատրիարքն ևս մեղադրում է ս. Սահակին, զի նա Ոսկեբերանի օգնութեան չէր դիմել. և քանի որ Ոսկեբերանը մեռաւ 407-ին, անշուշտ այս նամակագրութիւնը շատ ուշ քան 410 թիւը չէր կարող լինել։ Բայց աստուածային աջն էր որ միշտ օգնում էր Հայոց. Աստուծոյ տաճարն էր՝ որ պատսպարում էր Հայոց ցրուեալ հօտին, Աստուծոյ թևն էր՝ որ հովանաւորում էր Հայոց գործերն. և ահա այստեղ ևս Աստուած է օգնութեան հասնում, որպէս գրում է Թէոդոս չար նախանձով. «բայց զի յետոյ պատմեաց մեզ Մեսրոպ, թէ կատարումն արուեստից ի շնորհաց վերնոյն եղև, գրեցաք զի ամենայն փութով ուսցին, և զքեզ պատուով ընկալցին...» (Խոր. III, ԾԷ.)։ Այսպէս աստուածային շնորհաց հովանաւորութեան ներքոյ Հայոց եկեղեցւոյ հանճարաւոր ամոլը յառաջ տարաւ ազգի ինքնուրոյնութեան գործը, եկեղեցու գաւթում ժողովրդի ինքնագիտակցութեան զօրութիւն տալով։ Անսասան հիմքն աստուածային բազկով դրուեցաւ, շինութիւնը բարձրացաւ ամրապէս, ազգը իւր հոգու մէջ իւր պատիւը ճանաչեց և ապահովուեցաւ. այնուհետև վտանգ չկար մարմնաւոր հոսանքի դիմաց։ Ս. Մեսրոպ վերադարձաւ շուտով և բերաւ Ս. Գրոց նոր օրինակներ, որոնց համեմատեցին վերստին Հայոց թարգմանութիւնը (Կոր.)։ Երբ 420-ին թագաւորեց Արտաշէս, Մեսրոպ շարունակեց իւր քարոզչական գործունէութիւնը պետութեան թոյլ կողմերում. ապա ուղարկուեցան Յովսէփ և Եզնիկ յԵդեսիա, առաքա-

կան գրքերը թարգմանելու, որոնք պատուէրը կատարելով ուսումնական նախանձախնդրութեամբ դիմեցին ի Բիւզանդ, նոցա հետեւեցին նոյնպէս ինքնակամ՝ Ղեւոնդ և Կորիւն (Մելիտինէից), մինչդեռ ուղղակի աշակերտք՝ Յովհան և Արձան շատ ուշ հասան Կ. Պօլիս։ Ըստ երեւոյթին այս առաջին աշակերտաց անցուդարձը եղել է 425 — 434 միջոցին (Խոր. III, Կ։ Կր. 28) եկեղեցեաց ս. Հարց գրուածների ստոյգ օրինակներ, որոնց թարգմանութեան համար առաւել նախապատրաստութիւն էր պէտք, վասն որոյ ուղարկեցին Խորենացուն և ընկերներին յԱղեքսանդրիա «վերաբանութեան» կամ բարձր աստուածաբանութեան (Anagogie) ճեմարանը (Խոր. III, ԿԱ)։

427-ին Հայոց անմիտ նախարարք, որոնք խելահասութիւն չունէին հասկանալու, թէ ազգի պետի վատութիւնից վատթարագոյն է նորա անկումն, որոնք առժամանակեայ գոլով, չգիտէին որ ազգի գահը չէ կարելի զոհել նորա անցաւոր-մահկանացու գահակալի տապալման, որոնք վատին ընտանեբար խրատելու խանդն ու եռանդը չունէին, հանրականն անձնականին զոհեցին, առանց վարանման՝ ազգային գերդաստանի ներքին գործն արտաքին օտար դատաւորի ճանկը ձգեցին և թշնամու դրան ամբաստանեցին իւրեանց հարազատ արքային։ Վատ էր Արտաշէս, բայց իւր վատութեամբ հանդերձ գահապահ էր. անկանա, անկաւ և Արշակունեաց հզօր գահն, որ ինչպէս էլ լինէր, քաջալիր պահապան էր ազգի։ Իսկ ս. Սահակ, որի սկզբունքն էր «ինձ քաւ լիցի մատնել գայլոց զիմ մոլորեալ ոչխար» (Խոր. III, ԿԳ), սրբազան բանահրին, իւր անվեհեր հաւատարմութեան համար արգելուեցաւ Պարսից դրանը։ Բայց շատ չանցաւ և նոյն գահազրուժ նախարարաց աղաչանօք դարձաւ 430-ին։ Այնուհետեւ թողնելով ս. Մեսրոպին ս. Էջմիածնի ընդհանրական եկեղեցում, ինքն ևս շարունակեց «զհոգևոր կաթնն տրե-

ցուցանել մանկանց եկեղեցւոյ», գործելով Բագրեւանդում «ուր ծագեաց յերկնուստ լոյսն ի մկրտել ս. Գրիգորի զՏրդատ արքայ և զբոլոր Հայս» (Խոր. III, ԿԶ.)։ Նորա գործունէութեան կնիքն է նորա վերջին խօսքն, որով պատուիրեց Հայոց հաւատարիմ մնալ ս. Գրիգոր Լուսաւորչի վարդապետութեան և օրհնեց ասելով. «որդեակք, փոխանակ իմ տէր հովուեսցէ զձեզ և ինքնին վերակացու լինիցի ձեզ...» (Փարպ. 104)։ Նա սլացաւ իւր փառաւոր նախնեաց կարգը 439-ին, ընդ նմին «մահկանացու ծնեալ, անմահ զիւրն յիշատակ եթող» (Խ. III, ԿԷ)։

Ս. Սահակի վերջին ամաց են պատկանում և Եփեսոսի 431-ի ժողովի պարագայք։ Վերագոյն բերուած տեսութեանց հիման անշեղ հետեւանք է, որ Բիւզանդական հետագայ ժողովներին հետ առընչութիւն չունեցան Հայք։ Սակայն երբ Եփեսոսի ժողովից հալածուեցան նեստորական աղանդաւորք՝ Թէոդորէտ և այլք, եկան նոքա ի Հայաստան հող որոնելու։ Այդ ժամանակ դառնում էին Հայոց թարգմանիչք իւրեանց ուսումը վերջացնելուց զկնի, ըստ որում և Կիւրեղ Աղեքսանդրացին, Պրոկղոս Կ.Պօլսին և Ակակիոս Մելիտինացին պատեհ առթից օգտուելով, թուղթ գրեցին առ ս. Սահակ և զգուշացրին նորան յիշեալ աղանդաւորներից։ Սակայն շուրջ 560-ին և ս ոմն Լիբերատոս սարկաւագ զանազան բաղանք յօրինեց, (տե. Մանսի IX, 639 եւայլն.), որ իբր թէ Հայք ժողով են գումարել և դեսպան ուղարկել Ղեոնդիոսին և Աբերիոսին (?) ի Կ. Պօլիս հարցնելու Պրոկղից թէ արդեօք Թէոդորի, Ռաբուլասի թէ Ակակիոսի գրութիւնք են հարազատ և այլն, ըստ որում այս ևս մի հետեւանք է Յունաց այն ջանքերին, որով ճգնում էին ցոյց տալ թէ Հայք առանց Բիւզանդի օգնութեան նոյն իսկ սէն ապիտակից զանազանել չէին կարենում։ Բայց, որպէս պիտի տեսնենք, Հայք բնաւ չխաբուեցան։ Սակայն ահա երկու այլ թղթեր ա-

րոնք ս. Սահակին են վերագրում հրատարակողք (Սոփ. I, 150). և մէկին մասնակից է դուրս գալիս, մինչդեռ մինը միւսի կրճատումն է։ Աւելորդ չէ այդ թղթոց աչք մի դարձնել տեսնելու համար՝ թէ որպիսի կարճամիտ անձինք էին այդ կեղծողք։ Հետազօտելով այդքերկ, զարմանում ենք թէ ինչ անբովանդակ գրութիւնք էին շինում, միայն որ և է բանակռուական և խաբուսիկ նպատակի համար։ Թուենք միայն քանի մի կէտեր, որ դոքա տգէտի մի հերիւրանքներ են. Նախ որ այդ թուղթք նպատակ չունին. ս. Սահակ պէտք չունէր նեստորականութեան դէմ Եփեսոսի ժողովից յետոյ բան գրելու, զի հոռոմք արդէն նզովել էին Նեստորին. պէտք չունէր և իւր հաւատը հաղորդելու, զի նոքա գիտէին որ հայք նեստորական չէին. բնական էր միայն այն, եթէ ս. Սահակ շնորհակալութիւն յայտնէր նոցա թղթին, որ չկայ այդ թղթերում։ 2. այդ թղթերը բնաւ նման չեն ս. Սահակի միւս թղթերին (Խոր. III, Կ.) ոչ ձևով, ոչ ոգով, ոչ ոճով։ 3. լիովին անըմբռնելի և օտարոտի է, թէ ինչո՞ւ ս. Սահակ անգամ մի միայնակ է գրում և միւսը ս. Մեսրոպի հետ։ 4. յիշում է, որ իբր թէ ս. Սահակ թղթեր է գրել և զգուշացրել իւր հօտն և այդ է միայն նորա միջոցք ընդդէմ հերձուածողաց մախանաց, մինչ պատմութիւնն ասում է՝ հալածեց վռնդեց նոցա իւր երկրից։ 5. բայց թուղթն իսկ ինքեան հակասում է, ասելով՝ «այլ յաղանդոյն որ գրեցեր զատչել՝ առ ժամանակս ի շնորհս Աստուծոյ այնպիսի ինչ չև է հասեալ»։ 6. թղթերը յորդորում են հոռոմոց հալածել հերձուածողաց, մինչդեռ նոքա էին ս. Սահակին նոյնը յորդորել։ 7. Թղթում նկատում է որ պարտ է վերացնել եկեղեցեաց մէջ գայթակղութիւնն, որ այն ժամանակի պատմութիւնը չգիտէ։ 8. հերետողն ընթերցող հային իւրեանից տգէտ կարծելով և այնչափ իբր հային դիւրական ինչ շինելով,

այժմ սկսում է իւր քմահաճութեան ծառայել. ս. Սահակ, որ քաջարի ախոյեան էր գիտութեան, որ ձեռքն ընկած ուսումնատենչին ուղարկում էր գիտութիւն սովորելու և կանոնով պարտաւորիչ էր հաստատել եկեղեցականաց ուսումը (Սոփ.II, 81.), հանդիսանում է թշնամի և ատելող բարձր ուսման, առարկելով որ իբր թէ քանի առաւել ուսում են առնում հոռոմք, այնքան աւելի հերձւում են և հերձաքանում, ըստ որում այդ անյաջող թուղթը յօրդորում է նոցա մեծ ուսում չտալ մարդկանց: Հերերոդն այս ողորմելի ստով է զարկում Հայոց հաճոյական երակին: Գ. Հեղինակը դաւաճանում է իւր հոռոմ լինելն, ըստ որում չափազանց ես նախատացնում է ս. Սահակին, որ մինչեւ իւր հալածեալ ժամանակ հակիրճ, կտրուկ, մեծանձնութեամբ էր գրում առ իւր հալածող կայսրն, աստ այնքան խղճանում է՝ այն էլ իւր վեհութեան տարիներում, որ նոյն իսկ գրում է. «և եթէ ինչ ըստ չափոյ թղթոյդ առ տգիտութեանս(!) վրիպեալ իցէ՝ ուղղել կամեսջիր»: Զենք սխալուիլ՝ եթէ նկատենք, որ հեղինակը պարզ վանական մի է: Բայց թողնենք այս. բաւ է որ Հայոց ոսկեդարու պատմագիրք, ս. Սահակի և Մեսրոպի մօտաւորյն աշակերտք բնաւ նման թղթեր չեն յիշում, որով և եթ իսկ լիովին խորտակում են այդ թղթոց հարազատութիւնը: Միայն Ժ դարումն ենք հարեւանցի յիշատակութիւն մի գտնում (Ասող. III, ԻԱ.), եթէ այդ տողերը խծբծուած չեն, ուրեմն և այդ շրջանումն են հրապարակուել այդ շինծու թղթերը:

Արդ որ այդ թղթերին ոչ մի կերպ հարազատութիւն վերագրել անկարելի է, այդ ակներև է. մնում է գտնել յերկարման նպատակն, զոր գտնում ենք թղթերի մէջ իսկ. «Ջան կրցի մեզ խզել կխոչն, և զգայթակղութիւն գայն (??) ի միջոյ ի բաց կորուսանել, զի միաբանութիւն ուրպէս ձերում ի միջի փառաքանի, և զմեզ.

ի հաւատարութիւն փառաւորութեան առ Աստուած հաւատացանել արժանի արասցէ»։ Այս բիւզանդական խրատ էր ս. Սահակի ղեկավարութեամբ։

Ի վերջին հաստատութիւն վերոյիշեալ հեղինակին աւելորդ չէ յառաջաբերել ականատես և գործակից աշա-կերտների մեծարգոյ վկայութիւնը։

Խորենացին գրում է. «վասն զի ոչ հանդիպեցան յայնմ ժողովի մեծն Սահակ և Մեսրոպ, գրեն առ նոսա Կիւրեղ Աղեքս. և Պրոկղոս Կ. Պօլսի և Ակակ Մելտինոյ եպիսկոպոսք, զգուշացուցանել զնոսա, քանզի լուան, եթէ ոմանք ի չարափառացն աշակերտացն առեալ զգիրս Թէոդորոսի . . . զվարդապետին Նեստորի և զաշակերտին Թէոդորի, գնացին յաշխարհն իւրեանց։ Ապա եկեալ թարգմանիչքն մեր՝ Յովսէփ, Եզնիկ, Ղևոնդ, Կորիւն (Յովհան և Արձան), գտին զմեծն Սահակ և զՄեսրոպ յԱշտիշատ Տարօնոյ, և մատուցին զթուղթն և զկանոնս ժողովոյն Եփեսոսի՝ վեց սահմանեալ կանոնաւ գլխով, և զստոյգ օրինակս գրոց» (III, ԿԱ.)։

Բայց ինչու հեռու գնանք. աւասիկ ինքն թղթաբերին Կորիւն գրում է (25). «Յայնմ ժամանակի բերեալ երեւեցան հայաստանեայց աշխարհին գիրք սուտապատումք, ընդունայնախօս աւանդութիւնք առն ուրումն հոռոմի, որում Թէոդիոս անուն։ Վասն որոյ սուտհողատական հայրապետաց եկեղեցւոյն սոցա նշանակեալ ազդ առնէին՝ ճշմարտահաւատ փառաւորչացն Սահակայ և Մաշտոցի։ Եւ նոցա ճշմարտասէր փութով զայն ի միջոյ բարձեալ՝ աշխարհահալած արտաքոյ իւրեանց մերժեցին, զի մի՛ ի լուսաւոր վարդապետութիւն՝ ծուխ ինչ սատանայական մերձեսցի»։ Կորիւն մինչև անգամ չէ յիշում թէ արդեօք թղթաբերը թարգմանիչներ էին թէ այլք։

Ուրեմն թարգմանիչք, որոնց անուանք մի առ մի յիշուած են, վերադառնում էին 434—435-ին. Նոքա

տեսակցեյան Եփեսոսի ժողովի հարց հետ և ստացան գրոց օրինակներ և ժողովի կանոններ. սակայն լսելով որ ժողովի նզոված հերձուածողք հող որոնելու գնացին ի Հայաստան, «առաքեալ Թուղթս ազդ առնէին ճշմարտահաւատ փառաւորչացն Սահակայ և Մեսրոպայ»: Այս իմանալով, Սահակ և Մեսրոպ իսկոյն հալածեցին այդ «սատանայական ծուխն» իւրեանց աշխարհէց:

Այժմ ամփոփենք մեր ասածները. ժողովներ գումարւում էին քրիստոնէական եկեղեցեաց մէջ շատ յաճախ. այդպիսի ժողովներ ունէին և Հայք[1]: Հռոմայ կայսրը պետութեան եկեղեցեաց վրայ իշխելու միջոց գտնելու համար, իւր մայրաքաղաքի ժողովը բարձրացրեց գաւառականաց վրայ և վարչական մարմնի փոխեց: Այդ ժողովն եկեղեցական ծերակոյտ էր քաղաքականի նմանութեամբ և դորա միջոցով «կայսր ու քահանայապետք» վարում էին եկեղեցական գործերն և դատում էին պատրիարքաց կամ եպիսկոպոսաց: Այն ժողովք, որոնց սահմանները պետութեան մէջ միշտական նշանակութիւն ունէին և վերաբերում էին ամբողջ երկրին, պարտաւորիչ էին հրատարակւում կայսրներից պետութեան մէջ. այդպիսի ժողովք մասնաւորներից որոշելու համար Դ դարուց սկսան կայսրները «տիեզերական» հրատարակել՝ այսինքն՝ պարտաւորիչ ամբողջ պետութեան մէջ: Դոքա «տիեզերական» էին հրատարակւում ոչ թէ իսկոյն, այլ յաճախ շատ ուշ, այն է՝ երբ կայսրները կարեւոր էին համարում: Օտարերկրեայ եկեղեցիք գործ չունէին այդ ժողովոց հետ, իսկ թէ երբեմն երբեմն մասնակցում էին, այդ լինում էր քաղաքական իրաց բերմամբ, ուղղադաւանութեան նպաստելու համար և կամ լոկ պատահական հանդիպմամբ, ըստ որում օտար եկեղեցեաց նկատմամբ որ և է գործ

[1] Սոփ. II, 82. Փաւս. Բիւզ. IV, 4. 63—64.

տեղի չէր ունենում այդ ժողովներում։ Սակայն դոքա, որպէս ասուեցաւ, ազատամիտ օտար երկրներում եւ յարգւում էին, եթէ մի որ և է քրիստոնէական լու-
գործ էին կատարում, ուստի և յետին դարերում ի հեծուկս Հռոմոց սկսան Ասորիք և Հայք տանել, որպէս սուրբ ժողովներ, սուրբ՝ զի նոցա կատարածը սուրբ գործ էր։

Ականատես և ժամանակակից Հայք սակաւ նշանակութիւն են տուել այդ ժողովոց, ուստի և հարևանցորէն են յիշում դոցա իրագործութիւնք — այդ եւ ի քաջալերութիւն քրիստոնէական նախանձախնդրութեան։ Երբ վերջին ժամանակներում Հայաստանի քանի մի մասերն ընկան հռովմէական իշխանութեան ներքոյ, Բիւզանդ սկսաւ իւր հպատակ հայոց եւ ժողովները պարտաւորել. այնուհետև սկսուեցաւ մաքառումն այդ բռնութեան դէմ, որ յետոյ պիտի տեսնենք։ Հայք բանակռիւ ունեցան և օրըստօրէ կրկնուեցան այդ ժողովոց անուանք, զորոնք յառաջ բերելով, ջանում էին Բիւզանդական զէնքով Բիւզանդիոնի դէմ կռուել, այսինքն ցոյց տալ որ վերջինս իւր եկեղեցական բարձրագոյն հեղինակութեան դաւաճանել է և շեղուել ճշմարիտ հաւատքից։ Այնուհետև Նիկիոյ 325-ի ժողովը յիշուեցաւ որպէս առաքելական հաւատքի միութեան մի ապացոյց, որին աւելի եւ ոյժ էին տալիս Կ. Պոլսի 381-ի և Եփեսոսի 431-ի ժողովները, վասն զի վերջինքս յիշւում էին որպէս առաջնի հաստատողք։ Այդպիսով, այդ ժողովք ոյժ ունէին միմիայն Բիւզանդիոնի դէմ բանակռուի մէջ։

Քանի բանակռիւը սաստկացաւ Հայոց և Բիւզանդացւոց մէջև, այնքան յաճախ յիրարկուեցան այդ ժողովներն, որպէս յենարաններ։ Ժ դարից յետ բանակցութիւնն յաճախեցաւ և Բիւզանդական գրութիւնք սպրդեցին իւրեանց արտայայտութիւնք և Հայոց մէջ. այդպէս եղաւ

նաև «տիեզերական» բառի հետ։ Սակայն՝ ո՛ զարմանք, այդ ժամանակի եկեղեցականք ևս հասկանում էին գործի էութիւնը։ Նոցա գրուածները կրկին և կրկին հաստատում են նոյնը։ Ոչ մի տեղ չէ գտնւում տիեզերական բառը Կ.Պօլսի 381-ի և Եփեսոսի 431-ի ժողովոց յատկացրած, ընդ նմին և «տիեզերական» կոչելով միայն Նիկիոյ 325 ժողովը, Գրիգորիս կաթուղիկոս յիշատակում է «տիեզերական ժողովոյդ», «տիեզերական եկեղեցւոյդ», «տիեզերական տէրութեանդ» խօսքերը, «տիեզերական» բառին ճարտասանական նշանակութիւն տալով, որ ինչպէս ծառը է երևում. տիեզերական էին կոչւում և Հայաստանում ոչ միայն եկեղեցին, այլ և Հայոց տեղական ժողովները, Կիլիկիոյ Տարօնի Հայոց ժողովն, այլ և այս ու այն վանք, ինչպէս օրինակ Մարմաշէն վանքն[1]։ Բագրատունի թագաւորն կոչում էր զինքն «ես Աշոտ թագաւոր թագաւորաց ամենայն տիեզերաց[2]»։ Երբ Բիւզանդացիք գրում էին սովորաբար, ընդունել «3 տիեզերական ժողովոց հետ և 4-րդն», Գրիգորիս կաթուղիկոս, չկարենալով քաղաքական խառն դրից պատճառով, պատասխանել կոշտութեամբ՝ որ ոչ երեք տիեզերական ժողով է ճանաչում և ոչ չորք, նուրբ քաղաքագիտութեամբ գրեց, որ ամենայն եկեղեցեաց մէջ եղած ուղղափառ հայրերի ուղղափառութեան ձայնակցում է և նոցանից նզովեալներին նզովում է և ինքն, վասն զի նոքա «արդարև յարդարեցին ըզդժուարինս ի դիւրինս և զարտապարն ի հարթ ճանապարհս, և խլեցին զորոմն ապականիչ որք են գայլք ի հանդերձս գառանց, յորոց զգուշացուցին զբանաւոր հօտս ոչխարաց[3]» և պարզապէս միայն, իսկ օտար եկեղեցեաց իրաց

[1] Շահխաթունեան, Ստորագր. Արարատայ II. 271 ևայլն. — [2] Անդ իսկ, էջ 305. — [3] Ընդհանրականք. ս. Էջմիածին. 1872. էջ 252.

Հետ գործ չունի այլապէս, որ և վեհութեամբ ասում է՝ «զԹադկեղոն ոչ գիտեմ, և ոչ զՆեռոն ճանաչեմ. իսկ եթէ բարիք են՝ անձանց և ժողովրդեանն, և եթէ չարիք են՝ անձանց և ժողովրդեանն[1]»։

Իսկ թէ այդ 3 ժողովները նոյն նշանակութիւնն ունին Հայոց համար, որպէս և այլ ամենայն քրիստոնէական ժողով, այդ ևս ամենայն ստուգութեամբ որոշում է Գրիգոր կաթուղիկոսն, ասելով. «զտանիս և այլ և այլ ժողովոց կանոնադրութիւնք ի մէջ մեր և ընդունելիք են՝ որք զդանազան կարգս եկեղեցւոյ հաստատեցին և զպէսպէս հերձուածս հերքեցին. որպէս և անկիւրեայ ժողովն ի հերքումն Լիկիանոսի ամբարշտութեանն՝ որ ի զոհս կռոցն բռնադատէր զերիցունսն. և Կեսարիայն ընդդէմ յուռթից կանանց. և Նէոկեսարեայն ընդդէմ անխտիր պոռնկութեան և այլն»։ Այդչափ նշանակութիւն ունին և այդ 3 ժողովներն, որոնք դոցա կարգումն են գտնւում տարբերկրեայ եկեղեցեաց նկատմամբ։ Իսկ Հայի ս. պարտքն է իւրոց հաւատարիմ մնալ, որպէս ասում է Գրիգոր. «առ մեզ մի՛ լիցին խոտելիք մերն ս. լուսաւորիչք և հարք. այլ պատուելիք և պաշտելիք, ս. Գրիգոր և զարմն իւր սուրբ. ս. Ներսէս և Սահակ, և որ ըստ նոցայն քարոզեսցի քաջութիւն յեկեղեցիս մեր, և յաղագս նոցա բանակռուեսցուք եթէ գտցին հակառակք[2]»։



[1] Թ. առ Տուտէորդի. Վեն. 1865. 50, 65. — [2] Անդ՝ էջ 59.

## Ե.

## ՀՌՈՎՄԷԱԿԱՆ ՊԵՏՈՒԹԵԱՆ ԱԹՈՌՆԵՐԻ ԻՐԱՒԱԿԱՆ ՎԻՃԱԿԸ IV-դ ԴԱՐՈՒՄ.

*Նիկիոյ ժողովն որոշեց իւր 6-րդ կանոնով պետութեան եպիսկոպոսական աթոռների իրաւասութիւնը, վճռելով. «Նախընթաց սովորութիւնք պահեսցին որպէս յԵգիպտոս, ի Լիբիա, և ի Պենտապօլիս, զի Աղեքսանդրիոյ եպիսկոպոսն ունիցի զիշխանութիւն ի վերայ սոցա ամենեցուն, վասն զի և Հռովմայեցւոց եպիսկոպոսին այս սովորութիւն է, նոյնպէս և յԱնտիոք և յայլ ևս գաւառս պահեսցին իշխանութիւնք և պատիւք և մեծութիւնք իւրաքանչիւր եկեղեցեաց»։ Կ. Պօլսի ժողովն ևս նոյնը վերստին նորոգելով, յիշատակեց նաև յականէ յանուանէ — «որք յԱսիոյ են եպիսկոպոսունք որ ինչ յԱսիա միայն կարգաւորութիւն է, տնօրինեսցին, և եպիսկոպոսունք Թրակիոյ զԹրակիա միայն կարգաւորեսցին, և Պոնտոսին զՊոնտոս»։ Ընդ սմին և ինքնակալ իշխանութիւն տուաւ Կ. Պօլսի աթոռին, որ մինչև այդ ժամանակ գտնւում էր Հերակլեոյ աթոռի իրաւասութեան ներքոյ։*

*Ըստ այս կանոնաց Աղեքսանդրիոյ աթոռը տարածւում էր իւր իրաւունքը գրեթէ ամբողջ հիւսիսային Աֆրիկէի վրայ և ունէր 10 վիճակ և գերիշխանութիւն Հաբեշստանում։*

*Հռովմայ աթոռն ունէր 10 վիճակ, այն է 1. Տուսկիա և Ումբրիա, 2. Կամբանիա (Կապուա), 3. Լուկա-*

նիա և Բրիտիւն (Թէզիում), 4. Ապուլիա և Կալաբրիա, 5. Սամնիում, 6. Պիկենում, 7. Վալերիա, 8. Սիկիլիայ, 9. Սարդինիայ, 10. Կորսիկայ և Իտալիայ կոչուած աթոռն, որ իւր ներքև ունէր 3 թեմեր՝ Վենեցիա և Հիստրիա, Ֆլամինիա և Պիկենում, Այպէս Կոդիա։ Հարկաւ որչափ յաջողւում էր Հռովմայ եպիսկոպոսներին արևմտեան Եւրոպայի քրիստոնէից հռովմէական դարձնելու, այնչափ և ընդարձակւում էր նորա իրաւասութիւնը։ Աքուիլէա, Կիպրոս, Թրակիա, Հերակլէա, Մայլանդ, Կարթագինէ և այլն ինքնակախ աթոռներ էին և ձգտում էին պատրիարքութեան։

Պետութեան արևելեան մասում ևս կային քանի մի ինքնագլուխ աթոռներ։ Անտիոքիան ունէր 12 վիճակներ. 1. Առաջին Ասորիք, 2. Բ Ասորիք (Ապամէա), 3. Ա Փիւնիկէ (Տիւրոս), 4. Բ Փիւնիկէ (Դամասկոս), 5. Արաբիա (Բոստրա), 6. Ա Կիլիկիայ (Տարսոն), 7. Բ Կիլիկիայ (Անաւարզ), 8. Եփրատայ վիճակ (Հերապօլիս), 9. Օսրօյէնք (Եդեսսայ), 10. Միջագետք (Ամիդա), 11. Իսաւրիայ (Սելևկիայ), 12. Պաղեստին, որ 381-ին անկախութեան իրաւունք ստացաւ 4 վիճակներով, որոնք են՝ 1. Ա Պաղեստին (Կեսարիա Պաղեստ.), 2. Բ Պաղեստին (Սկիւթոպօլիս), 3. Գ Պաղեստ. (Պետրա), 4. Կիպրոս։ Բայց վերյիշեալ վիճակներից ոմանք երբեմն ինքնագլուխ են եղել։

Ասիոյ կամ Եփեսոսի աթոռն ևս տարածում էր իւր իրաւունքը 10 վիճակաց վրայ, որոնցից շատերն սկզբում անկախ էին։ Վերջապէս պետութեան արևելեան մասում գտնւում էին քանի մի ինքնագլուխ աթոռներ. որպէս առաջին Կապադովկիան՝ ունէր իւր ինքնագլուխ աթոռն ի Կեսարիա. սա աշխատում էր իւր իրաւասութիւնը պահել երկրորդ Կապադովկիայի ի Տիանայ աթոռի վրայ։

Սկզբնաբար անկախ աթոռ էին նաև Ա և Բ կոչուած Հայք գաւառները, իւրեանց աթոռներով ի Սեբաստիա և ի Մելիտինէ, որոնք ենթարկուեցան Կեսարիայի աթոռի գերիշխանութեան Դ-րդ դարու վերջերում: Կեսարիայի աթոռի ներքոյ էին գտնւում և Գաղատիա (Անկիւրիա), Պոնտոս (Նիոկեսարիա և Պափլագոնիա (Գանգրա):

Ահա այս և նման բոլոր եպիսկոպոսական մեծ աթոռներին տուին վերոյիշեալ երկու ժողովք ինքնագլուխ, պատիւ և հաւասար իրաւունք Աղեքսանդրիայի, Հռոմայ, Անտիոքայ և ապա Կ. Պոլսի աթոռների շարքում: Սակայն այդ եպիսկոպոսաց վէճերը թուլացրին վիճողներին այնքան, որ Հռոմ, Աղեքսանդրիա և Կ. Պոլիս սկսան նոցա գործոց մէջ խառնուել, ըստ որում և վերջինս սակաւ առ սակաւ տարածեց իւր իրաւասութիւնք իւր հարեւանների վրայ, զօրանալով կայսեր թեկնութեամբ: Անձամբ իւր եպիսկոպոս մէկ նոր քայլ արաւ այդ ուղղութեամբ. Ոսկեբերանը ձեռք մեկնեց դէպի Եփեսոս և Պոնտոս. Ատտիկոս պատրիարքն ևս (406—26) գրաւեց Իլլիւրիկան, որ Հռոմայ գերիշխանութեան ենթարկուելու տրամադրութիւն ունէր: Վերջապէս Քաղկեդոնի 451-ի ժողովը մեկնաբանելով Նիկիոյ և Կ. Պոլսի յիշատակեալ կանոնք, վճռեց. «Պոնտական և Ասիական և Թրակեան վիճակաց մետրապոլիտք միայն և նաև եպիսկոպոսունք նախայիշատակեալ վիճակաց որ են ի Բարբարիկ աշխարհըս, ընկալցին զձեռնադրութիւն—ի գահէն եկեղեցւոյն Կ. Պոլսոյ, իսկ ի նահանգս իւրաքանչիւր մետրապոլիտք վիճակաց ընդ եպիսկոպոսաց որ ի նահանգին տացեն զձեռնադրութիւն եպիսկոպոսաց որ յիւրաքանչիւր գաւառս իցեն»...: Կ. Պոլիսն այդ ժամանակ ունէր արդէն 30-ից աւելի թեմեր իւր այդ բոլոր վիճակներում: Իսկ յիշեալ Բարբարիկ երկրներում ևս կային քանի մի ա-

թոռներ, որոնք են. Գոթերի մէջ մէկ աթոռ, Ձեխերի երկրում 3, Լազերի երկրի մէջ 1 ի Փազիս, 1 ևս Աբազգիայում: Այսպիսով Կ. Պոլսի պատրիարքի գործը յաջողեցաւ այն միջոցին, երբ Հռովմ ևս զարթեցաւ և Լէօ Ա. սկսաւ ջանք գործ դնել իւր աթոռը բարձրացնելու, ըստ որում դիմեց առ արևմտեան կայսրն Վալենտինիանոս Գ. և 445-ին «տիեզերական առաջնորդ» (Rector universalis) տիտղոսն ստացաւ նորանից, ձգտելով Հռովմէական պետութեան «տիեզերքի» վրայ գահերիցութեան: Սակայն պետութեան եկեղեցական տիեզերականութիւնը Կ. Պոլսոյ պատրիարքին էր վիճակուած...:



Սկզբնաբար անկախ աթոռ էին նաև Ա և Բ կոչուած Հայք գաւառները, իւրեանց աթոռներով ի Սեբաստիա և ի Մելիտինէ, որոնք ենթարկուեցան Կեսարիայի աթոռի գերիշխանութեան Դ-րդ դարու վերջերում: Կեսարիայի աթոռի ներքոյ էին գտնւում և Գաղատիա (Անկիւրիա), Պոնտոս (Նիոկեսարիա և Պափլագոնիա (Գանգրա)։

Ահա այս և նման բոլոր եպիսկոպոսական մեծ աթոռներին տուին վերյիշեալ երկու ժողովք ինքնագլուխ, պատիւ և հաւասար իրաւունք Աղեքսանդրիայի, Հռոմայ, Անտիոքայ և ապա Կ. Պոլսի աթոռների շարքում: Սակայն այդ եպիսկոպոսաց վէճերը թուլացրին վիճողներին այնու, որ Հռոմ, Աղեքսանդրիա և Կ. Պոլիս սկսան նոցա գործոց մէջ խառնուել, ըստ որում և վերջինս սակաւ առ սակաւ տարածեց իւր իրաւասութիւնք իւր հարևանների վրայ, զօրանալով կայսեր թիկնութեամբ: Անձնիւր եպիսկոպոս մէկ նոր քայլ արաւ այդ ուղղութեամբ. Ոսկեբերանը ձեռք մեկնեց դէպի Եփեսոս և Պոնտոս. Ատտիկոս պատրիարքն ես (406—26) գրաւեց Իլլիրիկան, որ Հռոմայ գերիշխանութեան ենթարկուելու տրամադրութիւն ունէր: Վերջապէս Քաղկեդոնի 451-ի ժողովը մեկնաբանելով Նիկիոյ և Կ. Պոլսի յիշատակեալ կանոնք, վճռեց. «Պոնտական և Ասիական և Թրակեան վիճակաց մետրապոլիտք միայն և նաև եպիսկոպոսունք նախայիշատակեալ վիճակաց որ են ի Բարբարիկ աշխարհըս, ընկալցին զձեռնադրութիւն— ի գահէն եկեղեցւոյն Կ. Պոլսոյ, իսկ ի նահանգս իւրաքանչիւր մետրապոլիտք վիճակաց ընդ եպիսկոպոսաց որ ի նահանգին առցեն զձեռնադրութիւն եպիսկոպոսաց որ յիւրաքանչիւր գաւառս իցեն»...: Կ. Պոլիսն այդ ժամանակ ունէր
30-ից աւելի թեմեր իւր այդ բոլոր
յիշեալ Բարբարիկ երկրներում և

թոռներ, որոնք են. Գոթերի մէջ մէկ աթոռ, Ջեխերի երկրում 3, Լազերի երկրի մէջ 1 ի Փազիս, 1 եւս Աբազգիայում։ Այսպիսով Կ. Պոլսի պատրիարքի գործը յաջողեցաւ այն միջոցին, երբ Հռովմ եւս զարթեցաւ և Լէօ Ա. սկսաւ ջանք գործ դնել իւր աթոռը բարձրացնելու, ըստ որում դիմեց առ արեւմտեան կայսրն Վաղենտիանոս Գ. և 445-ին «տիեզերական առաջնորդ» (Rector universalis) տիտղոսն ստացաւ նորանից, ձգտելով հռովմէական պետութեան «տիեզերքի» վրայ գահերիցութեան։ Սակայն պետութեան եկեղեցական տիեզերականութիւնը Կ. Պոլսոյ պատրիարքին էր վիճակուած...։





## Զ.

## ՀՌՈՎՄԱՑ ԽԱՒԱՐԸ.

*«Որ հաւատացին յՈրդին Աստուծոյ՝ նոքա վայելեսցեն ի բարութիւնսն անպատումս. և որ յայսց հաւատոց վրիպեցան՝ զանկոխ և զանխուլ գնացին և զարտուղի անկան. խրամատեցին իւրեանց ցանկս անկարկատս, և զբազումս ի ճշմարիտ հաւատոց թիւրեցին»:*

ԳՐ. ԼՈՒՍԱՒՈՐԻՉ.

Բիւզանդական ժողովների էութեան վրայ արած բանավարութիւնից յետ հարկ չկայ իսկապէս այս աշխարհակործան ժողովի վրայ առանձնապէս խօսելու, զի այդ ժողովն ըստ ինքեան ոչ մի վերաբերմունք չունի առ Հայաստանեայց եկեղեցին։ Սակայն Բիւզանդիան, ըստ իւր դարաւոր՝ և այժմ բազմաց ժառանգած՝ քաղաքականութեան՝ սկսաւ Զ դարից զկնի Հայոց ազգն իւր հետ ձուլել աշխատիլ, օգտուելով նորա պետական զօրութեան անկումից, ըստ որում և նկատելով որ Հայաստանեայց եկեղեցին հզօր խոչնդոտն էր իւր այդ տմարդկային ձգտման և անկաշառ՝ անընկճելի պահապան Հայոց, ջանահնար եղաւ քրիստոնէական սիրոյ և միաբանութեան թափանցիկ քօղի տակ ծպտեալ, յարիւն և ի քրտինք մտնելով վտանգել այդ անաղարտ եկեղեցու ժողովրդականութիւնն, ազգայնութիւնն և ճշմարտութիւնը. բնականաբար Քաղկեդոնի ժողովն, որպէս նորահնար վարդապետութեան մի հեղինակող, այդ ձգտման իրագործման ոլորտակէտ դարձաւ։ Վասն որոյ և այդ ժողովի պատմութիւնը հետաքննական

է նոցա համար, որոնց շահագրգռում է այն արիւնահեղ և պանծալի մաքառումն, զոր վարեց մշտապէս Հայաստանեայց եկեղեցու. Հաւատարիմ հօտն իւր ինքնապահպանութեան համար Բիւզանդական ձգտմանց և անողոք հալածանաց դէմ։

Քաղկեդոնի ժողովում յեղաշրջուող խնդիրն է Քրիստոսի բնութիւնը. դորա վրայ առաջին անգամ խօսք բարձրացրեց Պօլսի Նեստոր պատրիարքը 428 թուին, չուզենալով յիրարկել Մարիամ Կոյսի նկատմամբ Աստուածածին բառը։ Նորա դէմ հզօրապէս դուրս եկաւ Աղեքսանդրիոյ Կիւրեղ պատրիարքն, որին Նեստոր չկարենալով միայնակ ընդդիմադրել, հրաւիրեց Հռովմայ Կոլեստին պապին իւր հետ Կիւրեղի դէմ դուրս գալու։ Սակայն Կիւրեղ պահանջեց Կոլեստինից հին հաւատքին նախանձախնդիր լինելու և ինքն գրեց Նեստորի դէմ 12 տուն նզովք։ Դորա դէմ գրեց Նեստոր 12 պատասխաններ։ Կոլեստին ևս յարձակուեցաւ Նեստորի վրայ, հիմն ի վեր տապալելով Նորա վարդապետութիւնը։ Նեստոր խռովութեան սաստկանալը տեսնելով, սկսաւ իւր վարդապետութիւնից սակաւ առ սակաւ յետ քաշուիլ, ըստ որում պատրաստ էր իւր սխալ քայլը բոլորովին ուղղելու, միայն թէ խռովութիւնը վերջանար. Նա գրում էր իւր երկրորդ նամակում առ Կոլեստին. «Երկաքանչիւր բնութիւնքն, որք բարձրագոյն և անշփոթ կապակցութեամբ պատուին ի մի անձնաւորութեան»[1]. սակայն այս խօսքերը մերժուեցան Կոլեստինից, որ և գրեց նորան ի պատասխան այնպիսի մի նզովալից նամակ (Մանսի, IV, 1026), որ ոչ մի եպիսկոպոսի պատիւ բերել չէ կարող։ Ընդ նմին և գումարեց 430-ին մէկ ժողով և պահանջեց Նեստորից յետ

[1] «Utraque natura quae per conjunctionem summam et inconfusam in una persona unigeniti adoratur.» *Մանսի*. IV, 1024.

այժմ սկսում է իւր քմահաճութեան ծառայել. ս. Սահակ, որ քաջարի ախոյեան էր գիտութեան, որ ձեռքն ընկած ուսումնատենչին ուղարկում էր գիտութիւն սովորելու և կանոնով պարտաւորիչ էր հաստատել եկեղեցականաց ուսումը (Սոփ.II, 81.), հանդիսանում է թշնամի և ատելող բարձր ուսման, առարկելով որ իբր թէ քանի առաւել ուսում են առնում հոռոմք, այնքան աւելի հերձւում են և հերձաքանում, ըստ որում այդ անյաջող թուղթը յորդորում է նոցա մեծ ուսում չտալ մարդկանց: Հերբերոդն այս ողորմելի ստով է զարկում Հայի հաճոյական երակին: 9. հեղինակը դաւաճանում է իւր հոռոմ լինելն, ըստ որում չափազանց եւս նուաստացնում է ս. Սահակին, որ մինչդեռ իւր հալածեալ ժամանակ հակիրճ, կտրուկ, մեծանձնութեամբ էր գրում առ իւր հալածող կայսրն, առա այնքան խղճանում է՝ այն էլ իւր վեհութեան տարիներում, որ նոյն իսկ գրում է. «և եթէ ինչ ըստ չափոյ թղթոյդ առ ոգիտութեանս(!) վրիպեալ իցէ՝ ուղղել կամեսջիր»: Ձենք սխալուիլ՝ եթէ նկատենք, որ հեղինակը պարզ վանական մի է: Բայց թողնենք այս. բաւ է որ Հայոց ոսկեղարու պատմագիրք, ս. Սահակի և Մեսրոպի մօտաւորյն աշակերտք բնաւ նման թղթեր չեն յիշում, որով և եթ իսկ լիովին խորտակում են այդ թղթոց հարազատութիւնը: Միայն ժ դարումն ենք հարևանցի յիշատակութիւն մի գտնում (Ասող. III, ԻԱ.), եթէ այդ տողերը խծբծուած չեն, ուրեմն և այդ շրջանումն են հրապարակուել այդ շինծու թղթերը:

Արդ որ այդ թղթերին ոչ մի կերպ հարազատութիւն վերագրել անկարելի է, այդ ակներև է. մնում է գոյա յերկարման նպատակն, զոր գտնում ենք թղթերի մէջ իսկ. «Ջան լիցի մեզ խզել կխոչն, և զգայթակղութիւն դայն (??) ի միջոյ ի բաց կորուսանել, զի միաբանութիւն որպէս ձեռում ի միջի փառաբանի, և զմեզ

ի հաւատարութիւն փառաւորութեան առ Աստուած հասուցանել արժանի արասցէ»։ Այս բիւզանդական խրատ էր ս. Սահակի դիմադրութեանը։

Ի վերջին հաստատութիւն վերոյիշեալ կէտերին աւելորդ չէ յառաջաբերել ականատես և գործակից աշակերտների մեծաբարբառ վկայութիւնը։

Խորենացին գրում է. «Տեսեալ զի ոչ հանդիպեցան յայնժամ ժողովի մեծն Սահակ և Մեսրոպ, գրեն առ նոսա Կիւրեղ Աղեքս. և Պրոկղոս Կ. Պօլսի և Ակակ Մելիտինոյ եպիսկոպոսք, զգուշացուցանել զնոսա, քանզի լուան, եթէ ոմանք ի չարափառացն աշակերտացն առեալ զգիրսն Թէոդորոսի . . . զվարդապետին Նեստորի և զաշակերտին Թէոդորի, գնացին յաշխարհն իւրեանց։ Ապա եկեալ թարգմանիչքն մեր՝ Յովսէփ, Եզնիկ, Ղևոնդ, Կորիւն (Յովհան և Արձան), գտին զմեծն Սահակ և զՄեսրոպ յԱշտիշատ Տարօնոյ, և մատուցին զթուղթսն և զկանոնս ժողովոյն Եփեսոսի՝ վեց սահմանեալ կանոնաւ գլխով, և զստոյգ օրինակս գրոց» (III, ԿԱ.)։

Բայց ինչու հեռու գնանք. աւասիկ ինքն Թղթաբերն Կորիւն գրում է (25). «Ցայնմ ժամանակի բերեալ երեւեցան հայաստանեայց աշխարհին գիրք սուտապատումք, ընդունայնախօս աւանդութիւնք առն ուրումն հոռոմի, որում Թէոդիոս անուն։ Վասն որոյ սինհոդոսական հայրապետաց եկեղեցւոյն սոցա նշանակեալ ազդ առնէին՝ ճշմարտահաւատ փառաւորչացն Սահակայ և Մաշտոցի։ Եւ նոցա ճշմարտասէր փութով զայն ի միջոյ բարձեալ՝ աշխարհահալած արտաքոյ իւրեանց մերժեցին, զի մի՛ ի լուսաւոր վարդապետութիւն՝ ծուխ ինչ սատանայական մերձեսցի»։ Կորիւն մինչև անգամ չէ յիշում թէ արդեօք Թղթաբերը թարգմանիչներ էին թէ այլք։

Ուրեմն թարգմանիչք, որոնց անուանք մի առ մի յիշուած են, վերադառնում էին 434—435-ին. նոքա

տեսակցեյան Եփեսոսի ժողովի հայրց հետ և ստացան գրոց օրինակներ և ժողովի կանոններ. սակայն լսելով որ ժողովի նզոված հերձուածողք հող որոնելու գնացին ի Հայաստան, «առաքեալ Թուղթս աղդ առնէին ճշմարտահաւատ փառաւորչացն Սահակայ և Մեսրոպայ»։ Այս իմանալով, Սահակ և Մեսրոպ իսկոյն հալածեցին այդ «սատանայական ծուխն» իւրեանց աշխարհից։

Այժմ ամփոփենք մեր ասածները. ժողովներ գումարւում էին քրիստոնէական եկեղեցեաց մէջ շատ յաճախ. այդպիսի ժողովներ ունէին և Հայք[1]։ Հռոմայ կայսրը պետութեան եկեղեցեաց վրայ իշխելու միջոց գտնելու համար, իւր մայրաքաղաքի ժողովը բարձրացրեց գաւառականաց վրայ և վարչական մարմնի փոխեց։ Այդ ժողովն եկեղեցական ծերակոյտ էր քաղաքականի նմանութեամբ և դորա միջոցով «կայսր ու քահանայապետք» վարում էին եկեղեցական գործերն և դատում էին պատրիարքաց կամ եպիսկոպոսաց։ Այն ժողովք, որոնց սահմանները պետութեան մէջ մշտական նշանակութիւն ունէին և վերաբերում էին ամբողջ երկրին, պարտաւորիչ էին հրատարակւում կայսրներից պետութեան մէջ. այդպիսի ժողովք մասնաւորներից որոշելու համար Դ դարուց սկսան կայսրները «տիեզերական» հրատարակել՝ այսինքն՝ պարտաւորիչ ամբողջ պետութեան մէջ։ Դոքա «տիեզերական» էին հրատարակւում ոչ թէ իսկոյն, այլ յաճախ շատ ուշ, այն է՝ երբ կայսրները կարևոր էին համարում։ Օտարերկրեայ եկեղեցիք գործ չունէին այդ ժողովոց հետ, իսկ թէ երբեմն երբեմն մասնակցում էին, այդ լինում էր քաղաքական իրաց բերմամբ, ուղղադաւանութեան նպաստելու համար և կամ լոկ պատահական հանգիտմամբ, ըստ որում օտար եկեղեցեաց նկատմամբ որ և է գործ

---

[1] Սոփ. II, 82. Փաւս. Բիւզ. IV, 4. 63—64.

տեղի չէր ունենում այդ ժողովներում։ Սակայն դոքա, որպէս ասուեցաւ, ազատամիտ օտար երկրներում և յարգւում էին, եթէ մի որ և է քրիստոնէական լաւ գործ էին կատարում, ուստի և յետին դարերում ի հեճուկս Հռոմոց սկսան Ասորիք և Հայք տօնել, որպէս սուրբ ժողովներ, սուրբ՝ զի նոցա կատարածը սուրբ գործ էր։

Ականատես և ժամանակակից Հայք սակաւ նշանակութիւն են տուել այդ ժողովոց, ուստի և Հարևանցորէն են յիշում դոցա իրագործութիւնք — այդ և ի քաջալերութիւն քրիստոնէական նախանձախնդրութեան։ Երբ վերջին ժամանակներում Հայաստանի քանի մի մասերն ընկան Հռովմէական իշխանութեան ներքոյ, Բիւզանդ սկսաւ իւր Հպատակ Հայոց ևս ժողովները պարտաւորել. այնուհետև սկսուեցաւ մաքառումն այդ բռնութեան դէմ, որ յետոյ պիտի տեսնենք։ Հայք բանակռիւ ունեցան և օրըստօրէ կրկնուեցան այդ ժողովոց անուանք, զորոնք յառաջ բերելով, ջանում էին Բիւզանդական զէնքով Բիւզանդիոնի դէմ կռուել, այսինքն ցոյց տալ որ վերջինս իւր եկեղեցական բարձրագոյն հեղինակութեան դաւաճանել է և շեղուել ճշմարիտ հաւատքից։ Այնուհետև Նիկիոյ 325-ի ժողովը յիշուեցաւ որպէս առաքելական հաւատքի միութեան մի ապացոյց, որին աւելի ևս ույժ էին տալիս Կ. Պօլսի 381-ի և Եփեսոսի 431-ի ժողովները, վասն զի վերջինքս յիշւում էին որպէս առաջինի հաստատողք։ Այդպիսով, այդ ժողովք ույժ ունէին միմիայն Բիւզանդիոնի դէմ բանակռուի մէջ։

Քանի բանակռիւը սաստկացաւ Հայոց և Բիւզանդացւոց մէջև, այնքան յաճախ յիրարկուեցան այդ ժողովները, որպէս յենարաններ։ Ժ դարից յետ բանակցութիւնն յաճախեցաւ և Բիւզանդական գրութիւնք սպրտեցին իւրեանց արտայայտութիւնք և Հայոց մէջ. այդպէս եղաւ

Սկզբնաբար անկախ աթոռ էին նաև Ա. և Բ կոչուած Հայք գաւառները, իրենց աթոռներով ի Սեբաստիա և ի Մելիտինէ, որոնք ենթարկուեցան Կեսարիայի աթոռի գերիշխանութեան Դ-րդ դարու վերջերում: Կեսարիայի աթոռի ներքոյ էին գտնւում և Գաղատիա (Անկիւրիա), Պոնտոս (Նիոկեսարիա և Պափլագոնիա (Գանգրա)։

Ահա այս և նման բոլոր եպիսկոպոսական մեծ աթոռներին տուին վերոյիշեալ երկու ժողովք ինքնագլուխ, պատիւ և հաւասար իրաւունք Աղեքսանդրիայի, Հռովմայ, Անտիոքայ և ապա Կ. Պոլսի աթոռների շարքում: Սակայն այդ եպիսկոպոսաց վէճերը թուլացրին վիճողներին այնչափ, որ Հռովմ, Աղեքսանդրիա և Կ. Պոլիս սկսան նոցա գործոց մէջ խառնուել, ըստ որում և վերջինս սակաւ առ սակաւ տարածեց իւր իրաւասութիւնք իւր հարևանների վրայ, զօրանալով կայսեր թիկնունութեամբ: Անձնիւր եպիսկոպոս մէկ նոր քայլ արաւ այդ ուղղութեամբ. Ոսկեբերանը ձեռք մեկնեց դէպի Եփեսոս և Պոնտոս. Ատտիկոս պատրիարքն ևս (406—26) գրաւեց Իլլիրիկան, որ Հռովմայ գերիշխանութեան ենթարկուելու տրամադրութիւն ունէր: Վերջապէս Քաղկեդոնի 451-ի ժողովը մեկնաբանելով Նիկիոյ և Կ. Պոլսի յիշատակեալ կանոնք, վճռեց. «Պոնտական և Ասիական և Թրակեան վիճակաց մետրապոլիտք միայն և նաև եպիսկոպոսունք նախայիշատակեալ վիճակաց որ են ի Բարբարիկ աշխարհըս, ընկալցին զձեռնադրութիւն—ի գահէն եկեղեցւոյն Կ. Պոլսոյ, իսկ ի նահանգս իւրաքանչիւր մետրապոլիտք վիճակաց ընդ եպիսկոպոսաց որ ի նահանգին տացեն զձեռնադրութիւն եպիսկոպոսաց որ յիւրաքանչիւր գաւառս իցեն»...: Կ. Պոլիսն այդ ժամանակ ունէր արդէն 30-ից աւելի թեմեր իւր այդ բոլոր վիճակներում: Իսկ յիշեալ Բարբարիկ երկրներում ևս կային քանի մի ա-

թոռներ, որոնք են. Գոթերի մէջ մէկ աթոռ, Չեխերի երկրում 3, Լազերի երկրի մէջ 1 ի Փազիս, 1 եւ Աբազգիայում։ Այսպիսով Կ. Պոլսի պատրիարքի գործը յաջողեցաւ այն միջոցին, երբ Հռոմ եւս զարթեցաւ եւ Լէօ Ա. սկսաւ ջանք գործ դնել իւր աթոռը բարձրացնելու, ըստ որում դիմեց առ արեւմտեան կայսրն Վաղենտիանոս Գ. եւ 445-ին «տիեզերական առաջնորդ» (Rector universalis) տիտղոսն ստացաւ նորանից, ձգտելով հռովմէական պետութեան «տիեզերքի» վրայ գահերիցութեան։ Սակայն պետութեան եկեղեցական տիեզերականութիւնը Կ. Պոլսոյ պատրիարքին էր վիճակուած...։



## Զ.

# ՀՌՈՎՄԱՑ ԽԱՒԱՐԸ.

« Որ հաւատացին յՈրդին Աստուծոյ՝ նոքա վայելեսցեն ի բարութիւնսն անպատումս. և որ յայսց հաւատոց վրիպեցան՝ զանկոխ և զանխուլ գնացին և զարտուղի անկան. խրամատեցին իւրեանց ցանկս անկարկատս, և զբազումս ի ճշմարիտ հաւատոց թիւրեցին »:

ԳՐ. ԼՈՒՍԱՒՈՐԻՉ.

Բիւզանդական ժողովների էութեան վրայ արած բանավարութիւնից յետ հարկ չկայ իսկապէս այս աշխարհակործան ժողովի վրայ առանձնապէս խօսելու, զի այդ ժողովն ըստ ինքեան ոչ մի վերաբերմունք չունի առ Հայաստանեայց եկեղեցին։ Սակայն Բիւզանդիան, ըստ իւր դարաւոր՝ և այժմ բազմաց ծառանգած՝ քաղաքականութեան՝ սկսաւ Զ դարից զկնի Հայոց ազգն իւր հետ ձուլել աշխատիլ, օգտուելով նորա պետական զօրութեան անկումից, ըստ որում և նկատելով որ Հայաստանեայց եկեղեցին հզօր խոչնդոտն էր իւր այդ տմարդկային ձգտման և անկաշառ՝ անընկճելի պահապան Հայոց, ջանահնար եղաւ քրիստոնէական սիրոյ և միաբանութեան թափանցիկ քողի տակ ծպտեալ, յարիւն և ի քրտինք մտնելով վտանգել այդ անաղարտ եկեղեցու ժողովրդականութիւնն, ազգայնութիւնն և ճշմարտութիւնը. բնականաբար Քաղկեդոնի ժողովն, որպէս նորահնար վարդապետութեան մի հեղինակող, այդ ձգտման իրագործման ոլորտակէտ դարձաւ։ Վասն որոյ և այդ ժողովի պատմութիւնը հետաքննական

է նոցա համար, որոնց շահագրգռում է այն արիւնահեղ և պանծալի մաքառումն, զոր վարեց մշտապէս Հայաստանեայց եկեղեցու հաւատարիմ հօտն իւր ինքնապահպանութեան համար Բիւզանդական ձգտմանց և անողոք հալածանաց դէմ։

Քաղկեդոնի ժողովում յեղաշրջուող խնդիրն է Քրիստոսի բնութիւնք. դորա վրայ առաջին անգամ խօսք բարձրացրեց Պօլսի Նեստոր պատրիարքը 428 թւին, չուզենալով յիրարկել Մարիամ Կոյսի նկատմամբ Աստուածածին բառը։ Նորա դէմ հզօրապէս դուրս եկաւ Աղեքսանդրիոյ Կիւրեղ պատրիարքն, որին Նեստոր չկարենալով միայնակ ընդդիմադրել, հրաւիրեց Հռովմայ Կոլեստին պապին իւր հետ Կիւրեղի դէմ դուրս գալու։ Սակայն Կիւրեղ պահանջեց Կոլեստինից հին հաւատքին նախանձախնդիր լինելու և ինքն գրեց Նեստորի դէմ 12 տուն նզովք։ Դորա դէմ գրեց Նեստոր 12 պատասխաններ։ Կոլեստին ևս յարձակուեցաւ Նեստորի վրայ, հիմն ի վեր տապալելով նորա վարդապետութիւնը։ Նեստոր խռովութեան սաստկանալը տեսնելով, սկսաւ իւր վարդապետութիւնից սակաւ առ սակաւ յետ քաշուիլ, ըստ որում պատրաստ էր իւր սխալ քայլը բոլորովին ուղղելու, միայն թէ խռովութիւնը վերջանար. նա գրում էր իւր երկրորդ նամակում առ Կոլեստին. «Երկաքանչիւր բնութիւնքն, որք բարձրագոյն և անշփոթ կապակցութեամբ պատուին ի մի անձնաւորութեան»[1]. սակայն այս խօսքերը մերժուեցան Կոլեստինից, որ և գրեց նորան ի պատասխան այնպիսի մի նզովալից նամակ (Մանսի, IV, 1026), որ ոչ մի եպիսկոպոսի պատիւ բերել չէ կարող։ Ընդ նմին և գումարեց 430-ին մէկ ժողով և պահանջեց Նեստորից յետ

[1] ‹Utraque natura quae per conjunctionem summam et inconfusam in una persona unigeniti adoratur.› *Մանսի*. IV, 1024.

առնել իւր ասածները, սպառնալով նորան բանադրել։ Նեստորի ժողովուրդը խռովեցաւ և զայրանալով Կիւրեղի գործունէութեան դէմ պահանջեց կայսրից մեծ ժողով կազմել։ Կայսրն Թէոդոս Բ դժկամակած Կիւրեղից, հրաւիրեց 431-ի Եփեսոսի ժողովը, մտադրելով Կիւրեղին վայր գլորել։ Կիւրեղ եկաւ 50 եպիսկոպոսներով և առանց Նեստորին և նորա մտակից անտիոքացոց բացաւ ժողովը 200 ժողովականաց մասնակցութեամբ, քննեց Նեստորի վարդապետութիւնն և հակառակ գտնելով եկեղեցու հայրերի վարդապետութեան և Նիկիականին, միաձայնութեամբ բանադրեց նորան։ Երբ ապա բացակայ եպիսկոպոսք եկան, Նեստոր միացաւ նոցա հետ, ժողով կազմեց կայսեր յանձնարարների յառաջմամբ և բանադրեց Կիւրեղին։ Յաղթութիւնը գոգցես հակւում էր առ Նեստոր, սակայն Կիւրեղ չյապաղեցաւ, գումարեց վեստին ժողովն, յորում և կարդացուեցան գործերն, ընդ նոցին և Հռովմայ Կոլեստինի և Կարթագինէի Կապրէօլոսի թղթերը (Մանսի IV, 1207)։ Ժողովը բանադրեց Նեստորին և գոհութիւն յայտնեց Կիւրեղին և Կոլեստինին, որպէս «հաւատոյ պահակներին։»

Աղմուկը չդադարեցաւ. կայսրն աքսորեց Կիւրեղին, սակայն տեսնելով կիւրեղեանց զօրութիւնը, կրկին վերադարձրեց նորան և Նեստորին նորա վիճակին փոխարինեց։ Այժմ էլ Անտիոքացիք չխաղաղուեցան, սկսուեցաւ բանակցութիւն. սոքա չէին ուզում Նիկիականից զատ ինչ ճանաչել, սակայն ըստ կայսեր կամաց մէկ բացատրութիւն (Մանսի V, 303) տուին, որ խառնուրդ է ճշմարիտ հաւատքի և նեստորականութեան. դորա մէջ ասուած է որ Քրիստոս միացեալ մէկ բնութիւն ունի, միայն թէ նորա ստացած թշնամանքները վերաբերում են մարդկութեան, իսկ փառաւորումն աստուածութեան։ Այս բացատրութեան ստիպուեցաւ Կիւրեղ ստորագրել մասնաւորապէս

հայեր պահանջմամբ, սակայն շուտով բարձաթող արուե-
ցաւ Եփեսոսի վճռի «տիեզերականութեան» հրատարակ-
մամբ։ Նեստորի գրութիւնք այրուեցան և նորա հետեւողք
կոչուեցան «Սիմոնեանք»։

Աղեքսանդրիոյ աթոռն իւր առաքելահաւատ նախանձախնդրութեամբ հասել էր իւր փառաց և գերիշխանութեան կատարին։ Կիւրեղին (†444) յաջորդեց Դիոսկորոս քաջարի եպիսկոպոսն «խաղաղութեան և մաքառման» անձն, որ շարունակեց իւր աթոռի ժառանգական քաղաքականութիւնն, ըստ որում հակառակ լինելով պետական ձգտումներին և Կ. Պոլսի նորընծիւղ աթոռի զօրանալուն, ճգնում էր արքունեաց ձեռնահարութիւնն եկեղեցական գործերի մէջ յետ մղել։ Նոյն այդ ձգտումն ունէր և Հռոմ և երբ Նեստորով ընկաւ Կ. Պոլսի աթոռն, ամէնքի նախանձը շարժեց Աղեքսանդրիոյ գերիշխանութիւնը։ Բայց Կ. Պոլսի աթոռի թիկունքն էր կայսրն, ըստ որում ամենայն ժամ կարող էր զօրանալ. վասնորոյ և երեք հզօրագոյն պատրիարքութիւններ կանգնած էին իրար դիմաց գերիշխանութեան համար զինուած։ Այս անորոշ վիճակը հարկաւ պիտի լուծուէր, ուստի և խաղաղութիւնն երկար չտևեց։

Ընդհարման խնդիր տուաւ Եւտիքէս, Կ. Պոլսի վանականն։ Եւտիքէս մաքառելով նեստորականութեան դէմ, ինքն ևս սուզուեցաւ Ապողինարի վարդապետութեան մէջ, ըստ որում ասում էր թէ Քրիստոսի մարդկութիւնը սպառուել է նորա աստուածութեան մէջ, որպէս կաթիլ մի մեղր անսահման ծովում։ Այս նկատելով Անտիոքայ Դոմնոս եպիսկոպոսը գրեց առ կայսր 448-ին. գանգատը ներգործութիւն ունեցաւ, երբ նորան ձայնակցեց Դորիլէոնի եպիսկոպոս Եւսեբիոսը, բողոքելով Կ. Պոլսի պատրիարք Փլավիանոսին Եւտիքէսի դէմ։ Եւտիքէսի վրայ յարձակուեցաւ երդուեալ Նեստորական՝ Կիւրոսի եպիս-

կոպոս Թէոդորէտն (†457) և նորա վարդապետութիւնն աղանդակցյա Հրատարակեց. սորան աջակից էր Նեստորականաց միւս գլուխն՝ Եդեսիոյ եպիսկոպոս Իբասն(436—457)։ Փլավիանոս դժուարացաւ սկզբում իւր Հայեացքն որոշակի արտայայտելու, բայց յետոյ ձեռնարկեց գործը. նա միտք ունենալով իւր պաՀի յարգն ու վարկը բարձրացնել, շտապեց, կազմեց 448-ին մէկ ժողով և Հերքեց Եւտիքէսի վարդապետութիւնը։ Իսկ Դիոսկուր, որ Հին Հաւատքի վրայ Հաստատ մնալով ճանաչում էր իւր խնդիրը, խորտակեց իւր թշնամու՝ Թէոդորէտի ազդեցութիւնն արքունիքում, որտեղ և օգնական գտաւ Հզօր ներքինի Քրիւսափիոսին (440—450) և Եւդոկիա կայսրուՀուն, մանաւանդ որ այդ ներքինին պետական նախարար էր և դաւաճանելով պետութեան, ձգտում էր դժ տալ Դիոսկուրին և ճնշել կայսեր՝ Հեղինակութիւն ստանալու միտք։ Դիոսկուր իրաւունք ստացաւ «տիեզերական» ժողով կազմելու։

Հռովմայ Լէօ I ցայժմ վարանում էր Եւտիքէսի նկատմամբ իւր կարծիքն յայտնելու, զի վերջինս սակաւ առ սակաւ յապաւելով իւր վարդապետութեան մոլար կողմերը, ջանում էր զօրանալ իւր ատելի թշնամեաց դէմ, ըստ որում և մօտենում էր Դիոսկուրին։ Լէօի դրութիւնը դժուարին էր. նա տեսաւ որ Աղեքսանդրիոյ աթոռն ընկճելով պետութեան արևելեան եկեղեցիք, զօրանում էր Հսկայական քայլերով, իսկ Կ. Պոլսի աթոռն արդէն թօրշոմում էր. մարտի ասպարէզը մնում էր ուրեմն իւրեան և Դիոսկուրին։ Ծրագիրն որոշ էր. պէտք էր Հռովմայ դաշնակցութեան նշանակութիւնը բարձրացնել արքունիքում նորա բաժանման սպառնալիքով։ Այս ի Հարկէ, յաջող ապագայ էր խոստանում. Լէօ սկսաւ բանակցութեան դուռը բանալ. նամակներ գրեց առ Փլավիանոս (Մանսի V, 1359), նորան իւր բարեկամն և ըն-

կերին անուանելով. գրեց և առ կայսրն և առ Կ. Պօլսի վանահայրերն, առ արևելեանք, առ Յուլիանոս եպիս. Կոսացին, և այլն, ամենայն կերպ իւր աջակցութիւնը խոստանալով։ Սակայն նախատեսելով, որ Դիոսկուրի ազդեցութիւնն անխափան լայնանում էր, ջանացաւ ժողովը խանգարել։ Այս նամակների 33-դը մեկ գեղեցիկ օրինակ է թէ ինչպիսի ստախօսութեանց էր դիմում Հռովմ իւր նպատակներին հասնելու համար։ Նա կեղծում է իրերի այն վիճակը, յորում հրաւիրւում էր ժողովն, ասելով՝ իբր թէ կայսրը դիմել է իւրեան՝ Լէօին Եւտիքէսի վէճի պատճառով, որպէս Պետրոսի յաջորդին և իբր թէ ինքն Լէօ խնդրոյն Պետրոսի հաւատալեաց հիման վրայ պարզել է մարդեղութեան ճշմարիտ վարդապետութիւնն և Եւտիքէսին հերքել. ըստ այսմ, հետևցնում է սրամտութեամբ Լէօ, Եւտիքէս դատապարտուած է և այլ հարկ չկայ նոյնը ժողովով կրկնելու։ Բայց այսպիսի զրպարտութիւնք անհետևանք էին մնում քաղաքական դրից պատճառով. այդու հանդերձ Դիոսկուր գումարեց 449-ին Եփեսոսի երկրորդ ժողովն, ինքն նախագահեց և Հռովմայ պատուիրակներին տուաւ երկրորդ տեղը։ Լէօ նկատելով որ կրկին Աղեքսանդրիոյ աթոռը պիտի բարձրանար այդ ժողովով, չշտապացաւ պատուիրակաց առաքմամբ և գրեց իւր անուանի չարեացապարտ տումարը։ Մինչդեռ նա իւր գրութեանց մէջ յիշարկում էր՝ թէ «բնութիւնն Որդւոյն Աստուծոյ խառնումն է մարմնոյն»[1] «ընդ միոյ բնութեան խառնեցաւ միւսն», այժմ իւր այդ տումարի մէջ փոխեց բոլորովին իւր հին վարդապետութիւնն, անտարակոյս, Դիոսկուրին հակառակ գտնուելու և ինքեան հեղինակութիւն տալու համար, վասն զի նա քաջ գիտէր, որ Դիոս-

1) „Dei filius natura carnis immixtus“; „naturae alteri altera miscebatur“. Serm. 34, 4:

կուր Կիւրեղի դաւանանքով է զինուած։ Այդ տումարը գրելուց յետոյ միայն մէկ ճանապարհ, մէկ ելք կար, այն է՝ կամ Դիոսկուր կամ Լէօ. Դիոսկուրի հետ կապուած էր հին վարդապետութիւնն, Աթանասի, Կիւրեղի և այլ եկեղեցական հայրերի գրութեանց վրայ հիմնուած. Լէօի հետ կապուած էր մէկ նոր վարդապետութիւն, որի հիմքը խախուտ էր և կատարածն անորոշ. մէկի անկումը, միւսին բարձրութիւն պիտի տար։

Արդ ի՞նչ էր այդ հին և նոր վարդապետութեանց էութիւնը. քանի որ Եփեսոսի 431-ի ժողովում Կիւրեղ Աղեքսանդրացու 12 նզովքները հաստատուեցան և ամբողջ Հռովմէական պետութեան համար ընդունեալ հրատարակուեցան և քանի որ այստեղ խօսքը լոկ այդ պետութեան եկեղեցեաց և ժողովների վրայ է, այդ իսկ պատճառով համեմատենք դոյն այդ եկեղեցեաց ս. հայրերի քարոզածն և նոցա ժողովով հաստատուած վարդապետութիւնը Լէօի տումարի հետ։

Կիւրեղի 12 նզովքների գլխաւորներն են. 1) «Եթէ ոք ոչ խոստովանեսցի՝ ի մարմնի բնութեամբ միանալ բանին Աստուծոյ Հօր, և մի Քրիստոս զնոյն հանդերձ իւրացեալ մարմնովն Աստուած միանգամայն և մարդ, նզովեալ լիցի»։

2) «Եթէ ոք զմի Քրիստոս բաժանեսցէ յերկուս բնութիւնս յետ միանալոյն. և միայն մերձաւորութիւն և յարելութիւն ասիցէ, իբրև պատուով և կամ ձոխութեամբ զօրութիւն գտեալ, և ոչ միութիւն բնութեամբ, նզովեալ. լիցի»։

3) «Եթէ ոք որոշէ զբանս աւետարանչացն, զոմանս ասել ի դէմս աստուածաբանութեանն և զոմանս ի դէմս մարդկութեան և կամ զանուանսն Փրկչին մերոյ որ ի գիրս, զաստուածավայելուչս աստուածութեանն, և զմարդկաբարսն մարդկութեանն յետ անճառ միաւորութեան, նզովեալ լիցի»։ (Մանսի VI, 1082 և. ըստ Նախն. Թարգմ.)։

Նոյն Կիւրեղ գրում է և այլուրեք. «այլ ասեն հակառակորդքն, եթէ մի բնութիւն է մարմնացելոյ բանին Աստուծոյ՝ հարկ է ամենայնի շփոթումն ընդունել և խառնակումն, որպէս ծախեցելոյ և ի ներքս գողացելոյ մարդկայնոյ բնութեանն. և անգիտանան՝ որք զուղիղն թիւրեն, թէ ըստ ճշմարտութեան ասէ՝ «մի բնութիւն մարմնացելոյ բանին Աստուծոյ»[1]:

Արդ մի բնութիւն էին քարոզում բոլոր հին հայրերն, ըստ որում և ասում էին թէ նոյնը չարչարուեցաւ, նոյնն անչարչարելի մնաց, նոյնը մեռաւ, նոյնն և կենդանի էր. նոյնը թաղուեցաւ, նոյնն և մնաց իւր աստուածութեան մէջ, վասն զի խաչուող, մեռնողն ո՛չ թէ բանն Աստուած էր սոսկապէս, այլ աստուածամարդն. և դաւանում էին «զնոյն Որդի Աստուծոյ, զնոյն և Որդի մարդոյ. զնոյն յերկնից, զնոյն յերկրէ. զնոյն չարչարելի, զնոյն անչարչարելի. ոչ զայլ ոք և այլ և. այլ»:

Իսկ Լէօի տումարը ժխտում է «մի բնութիւն» ասել և դաւանում է երկու բնութիւնք, «եկեալք առ իրեարս ի մի անձնաւորութիւն». «Քանզի, գրում է նա, թէպէտև ի տէր մեր Յիսուս Քրիստոս մի անձն է Աստուծոյ և մարդոյ, այլ՝ այլ այն է՝ որով երկոցունցն ևս հասարակ են թշնամանքն, և այլ այն՝ որով հասարակ են փառքն»:

«Զի երկոքին կերպարանքն գործեն հաղորդութեամբ միւսոյն զայն որ ինչ իւրն է, այսինքն բանն գործէ զոր բանին է, և մարմինն կատարէ զոր մարմնոյն է»:

«Որպէս զի որ մերոց դարմանաց ի դէպ էր՝ մի և նոյն միջնորդն Աստուծոյ և մարդկան մարդն Յիսուս Քրիստոս, կարող լիցի մեռանիլ միովն և մի՛ լիցի կարող մեռանիլ միւսովն»:

---

1 Քրիստոսի բնութեան վրայ Կիւրեղի գրածները թարգմանուած են ի նախնեաց և ձեռնարկ են եղել վիճաբանութեան ընդդէմ հակառակորդաց:

Ուրեմն ըստ Լէօի, անարգուող, Թշնամանու ողը մարդկային բնութիւնն է, իսկ փառաւորուողն, երկրպագուողն աստուածային բնութիւնն. քաղցող, ծարաւող, մեռնողն այլ է, հրաշագործող, մարգարէացող, յառնողն այլ. բանն Աստուած գործում է իւրը, մարդն Քրիստոս կատարում է իւրը. բայց մի է դէմն Քրիստոս, միջնորդն երկուքին, որպէս Լէօ հարցնում է Եւտիքէսին. «Ո՞ր այն բնութիւն բևեռեալ կախեցաւ ի վերայ խաչափայտի ևայլն»: Ցայտ է որ տումարի քարոզածը Կիւրեղին հիմնովին և լիովին հակառակ է, ոչ միայն այնու, որ մերժում է մի բնութիւն ասել բանին մարմնացելոյ, այլ մանաւանդ այնու որ որոշում է նորա մէջ երկու բնութիւնք և միայն միաւորութիւն, հաղորդութիւն, յարելութիւն վերագրում նոցա, որով ի Քրիստոս երկուութիւն է շեշտւում իրապէս: Բայց Բիւզանդական բոլոր հին հայրերն, որպէս ցոյց է տալիս Եփեսոսի 431 Թուի ժողովի վճիռը, լիապէս միաձայն են Կիւրեղի 12 նզովներին. նոքա ամենքը ժխտել են երկու բնութեան վարդապետութիւնն, այսպէս, օր. Նազեանց ասում է. «Եթէ զանազանութիւն՝ աննմանութիւն, և եթէ աննմանութիւն՝ ոչ պարզութիւն, և եթէ ոչ պարզութիւն՝ ի բազմաց դրութիւն, որ լինի բազում դլութիւն»: Եւ մի ուրիշը «որ երկու բնութիւն ասեն՝ գտանի ըստ նոցա մտացն չորս դեմս՝ ասել չորրորդութիւն և թէ այս մասունս յամառին, պարտին փառս տալ չորրորդութեան. և պարտ է նոցա ասել՝ փառք Հօր և Որդւոյ և միւս Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ»: Ս. Հայրերի գրուածոց մէջ «երկու բնութեան» հետք բնաւին չէ կարելի գտնել, ոչ մի տեղ չկայ այդպիսի մի վարդապետութիւն: Սակայն Լէօ հիմնւում է միմիայն այն հռովմէական եկեղեցու երեք հայրերի վրայ՝ Տերտուլիանոսի, Ամբրոսիոսի և Օգոստինոսի. սոցա վրայ էր յենւում և Նեստոր: Արդ Ամբրոսիոս († 397) և Օգոստինոս († 430)

Տերտուլլիանոսի վրայ են յենւում (†220—), ուրեմն Հնագոյն պատճառն այդ վարդապետութեան՝ է Տերտուլլիան. բայց սա ևս երկու բնութիւն չէ ասում, սորա ասածն այլ է. սա յիշարկում է մէկ խօսք իրաւաբանական առածութեամբ և ոչ թէ իմաստասիրական-աստուածաբանական մտօք. այդ խօսքն է՝ «երկու գոյացութիւն ի մի անձնաւորութեան». արդ գոյացութիւն (substantia) անձնաւորական ինչ չէ, այլ ստակութիւն է, իսկ անձն գոյացական չէ (substantiell), առ իրաւաբանաց, այլ իրաւատէր, կարող ենթակայ, որ զանազան գոյացութիւնք կարող է ունենալ, ըստ որում և մէկ գոյացութիւն կարէ շատ ենթակաների ունեցուածքը լինել։ Ընդ սմին Տերտուլլիան յիշարկում է «մահ Աստուծոյ» խօսքեր, սակայն «բնութիւն» բառը չենք գտնում նորա գրուածներում։

Ցայտ է ուրեմն, որ այն Հայրերն, որոնց վկայութեամբ Նեստոր ջանում էր իւր մոլորութիւնը հաստատել, այդպիսի բան չեն ասում։ Նեստոր պնդում էր. «երկաքանչիւր բնութիւնքն—բարձրագոյն և անշփոթ կապակցութեամբ պատուին ի մի անձնաւորութեան». նա մեռաւ և ահա Լեօ ըստ Հռովմէական ճարտարութեան այդ 3 Հայրերի անունները միայն տալով և առանց վկայաբերութեան ձգնում է իւր Նեստորական մոլորութեամբ կործանել բազմաթիւ Հայրերի և ընդունել ժողովոց վարդապետութիւնը։

Դիոսկուրին վիճակուած էր չդաւաճանել իւր նախնեաց։ Սակայն նա չուզեցաւ իւր ներքին պժգոհութիւնը յայտնել, այլ խոհեմութեամբ, գոցցես նշանակութիւն չտալով խոթեց Լեօի գրութիւնն առանց կարդալու գործադրութեան մէջ։ Ժողովի գործավարութիւնն եղաւ ճիշտ ինչպէս սովորաբար Բիւզանդական միւս ժողովներինը. Նիկիոյ և Եփեսոսի ժողովներն ընդունեալ հաստատուեցան վերստին և ապա սկսուեցաւ Եւտիքէսի գործը։ Եւ-

տիքէս, որ արդէն կամաց-կամաց թողել էր իւր մոլորութիւնք, որոնց թէ երեսանց նզովեց Նեստորին, Ապողինարին, Մանէսին և Վալենտինին և ընդունեց Կիւրեղի դրութիւնք, ըստ որում ժողովը հաստատեց միաձայնութեամբ Կիւրեղի 12 նզովքները, բանադրելով երկու բնութեան քարոզողներին, սակայն Հռովմայ պատուիրակները հրաժարուեցան այս հաստատութեան ձայն տալու: Ապա Դիոսկորը առաջարկեց ժողովականաց, որ անձնիւր եպիսկոպոս գրաւոր բացատրէ, թէ արդեօք Նիկիական վարդապետութիւնից դուրս եղողներին պատժել պէտք է: Այս խնդրին չընդդիմացան և Հռովմայ պատուիրակներն, ըստ որում ժողովը պաշտօնանէ արաւ Կ. Պօլսի Փլավիան պատրիարքին և Դօրիլէումի Եւսեբիոս եպիսկոպոսին, որպէս Նեստորականաց: Հռովմայ պատուիրակները չեկան այլ ևս միւս նիստին. իսկ Բ. և Գ. նիստերում պաշտօնանէ արին Իբասին, Սաբինեան Պեռացուն, Թէոդորէտին (որ Կիւրեղի 12 նզովքներին հակառակորդ էր եղել ի պաշտպանութիւն Դիոդոր և Թէոդորոս երկաբնակաց). (Մանսի XI, 252), Դօմնուս Անտիոքացուն և այլ համախոհից. բոլոր այդ բանադրուածները, տեսնելով Հռովմայ պատուիրակների դժկամակութիւնը, դիմեցին իսկոյն Լէօի բանակը, վերջինիս խնկարկելով և ներբողելով: Դիոսկուր հաստատելով հին հաւատալիքն, առանց որ և է փոփոխութեան խաղաղացրեց արևելքն, իսկ Փլավիանոսին տեղ, որ ըստ պատմութեան կայսրական ոստիկաններից ծեծուելով, մեռել էր, նշանակեց Աղեքսանդրիոյ երէց Անատոլիոսին: Աղեքսանդրիոյ աթոռը փառաց ի փառս բարձրացաւ: Որպէս կայսրն Թէոդոս սկզբում հրամայել էր, գրելով առ Դիոսկուր. «Մենք կոչում ենք Քո երկիւղածութիւնդ, ըստ որում շնորհակալութեամբ յարգում ենք քեզ որպէս հօր և ձեր աշխատանքն իբրև մեր սեփականը նկատում, մէկ շրջաբերական պատրաստել հա-

ւաստոյ բովանդակութեամբ...... որ ոչ ոք չհամարձակուի այդ հաւատքին բան աւելացնել կամ պակասեցնել, կամ մեկնել, զի նա ինքն իւր մեկնիչն է և ամէնքին հասկանալի»... այդպէս և վճռեցին և ուրիշ ոչինչ, թէև ժողովականք պնդում էին օրինակ. այրուի Իբասն Անտիոքիայի մէջ... Դևերը Քրիստոսին Աստուած են ճանաչել, Իբասն ոչ... Ով Իբասին չէ ատում, դև է: Ով Իբասին սիրում է, սատանայ...: Նեստորիոսն և Իբասը պիտի միասին այրուին... Պատրիարքը, կանգնի՛ր ուղղափառութեան համար» ևայլն: Ժողովի ելքն յայտարարուեցաւ կայսրին և հաստատուեցաւ: Դաւանական վէճը վերջացել էր. այլ ևս դորա վրայ հարց չկար. այժմ խօսքը գերիշխանութեան վրայ էր. որի համար վէճը նորոգել պէտք էր:

Տեսնելով որ իւր բանակը բաւական ստուարացել է, Լէօ անուանեց այդ ժողովն «աւազակաժողով»: Նա շտապեց մէկ ժողովով եղածը մերժել, ուստի և բանադրուեցաւ Դիոսկորից: Լէօ խիստ երկիւղի մէջ իւր աթոռի վտանգաւոր վիճակը նկատելով, որպէս պարզ երևում է նորա 43—72 նամակներից, վասն զի, ինչպէս տեսանք, Եփեսոսի 2-դ ժողովն ուրիշ բան չէր արել, այլ միայն վերստին հաստատել էր Նիկիոյ և Եփեսոսի առաջին ժողովների հաւատալիքը: Ուրեմն Լէօ մերժելով Դիոսկորի արածը, մերժում էր նաև Նիկիոյ և Եփեսոսի ժողովները. այս վտանգաւոր շահատակութիւն էր, զոր միայն արքունի սուրը կարող էր ապահովել: Այս լաւ գիտէր Լէօ. ուստի դիմելով Հռովմայ կայսրական ընտանեաց (Վաղենտ. III) նամակներ գրել տուաւ առ Թէոդոս և աշխատեցաւ Իտալիայում ժողով մի գումարել տալ, ըստ որում ջանում էր ուղղել իւր սխալը, հաւատացնելով անդադար թէ ինքն ևս Նիկիոյ ժողովին էր հետևում. վասնորոյ և զգուշանում էր այժմ Եփեսոսի

վճռին հակառակ ինչ գրելուց, այլ միայն ուզում էր Եւտիքէսին բանադրել, որպէս աղանդաւորի և մանիքեցիութիւն էր վերագրում նորան: Սակայն Թէոդոս II չխաբուեցաւ և բացատրեց ի պատասխանի իւր ազգականաց նամակներին, որ ժողովը վերականգնել է հինն և խորտակել է Ֆլավիանոսի նոր վարդապետութիւնը. խաղաղութիւնը հաստատուած է, այս ուրեմն և պէտք չկայ որ և է ժողովի:

Բայց Լէօի բախտը բանուկ էր. Թէոդոս մեռաւ 450-ին և իրերի վիճակը փոխուեցաւ: Պուլխերիան գահ բարձրացաւ, Մարկիանոսն եւս նորա թեւը մտաւ. Թէոդոսի բարեկամները սոյա թշնամիքն էին, ուստի և սկսուեցաւ նոր քաղաքականութիւն: Քրիսափիոս սպանուեցաւ: Լէօ սկսաւ իւր գործունէութիւնը. նա գտաւ արքունիքի թոյլ երակն, այդ Պուլխերիան էր. և ահա բացաւ Լէօ նամակների ճանապարհն և շողոքորթութեան լայնալիր պարկը[1]: Պուլխերիան ամենայն ինչ էր Լէօի համար, նորա աստուածուհին էր. նա բարձրացաւ այն անխարականութեան, որի ժառանգը պիտի դառնար Լէօ յաջորդն 19-դ դարում... Լէօ գրում էր 13 ապրիլի 451 թուին առ Պուլխերիան[2]. «Խոստովանեցաք մեք, եթէ հաւատք քրիստոնէականք, քանզի Դուք ի պաշտպանութիւն նոցա պատրաստեալ կայք ի Տեառնէ, մոլորիլ ոչ կարեն»: Պուլխերիան բարեկամացաւ Լէօի հետ. Մարկիանոսի առաջ բացուեցաւ մէկ նոր ճանապարհ. արեւելքից վտանգ չկար. խօսքն Աղեքսանդրիոյ և Հռովմայ վրայ էր, որոնք երկուքն էլ վտանգաւոր էին արքունիքի համար: Հռովմը դնել Աղեքսանդրիոյ տեղ—անմտութիւն կլինէր, ուրեմն հարցն Աղեքսանդրիոյ «լինել և չլինել»-ի վրայ էր. «լինելը» պի-

---

1 79 նամակ... 2 Cognovimus christianam fidem vobis... in difensionem ejus a Domino praeparatis non passe turbari.

տի բաժանէր արեւմուտքը պետութեան միութիւնից. «չլինելը» պիտի բարձրացնէր նորան. միակ ելքն էր, նորա չլինելը Պօլսի բարձրացմամբ։ Աղեքսանդրիան Դիոսկուրն էր, որ սերտ ձուլուել էր առաքելական հաւատալեաց հետ. Հռովմը Լէօն էր, որ անբաժան էր իւր տումարից. իսկ Պօլիսը կայսրն էր իւր սրով։ Եթէ ընկնէր Դիոսկուր, կորած էր և առաքելական հաւատալիքը. Լէօի անկումը, նորա տումարի անարգումն կլինէր. իսկ դոցանից մէկի բարձրանալն վտանգ էր պետութեան միութեան։ Դիոսկուր ատելի էր Մարկիանոսի աչքում, աւելի ևս ատելի դարձաւ, երբ իւր յաղթութեամբ հպարտացած սկսաւ գրգռել Եգիպտոսի ժողովուրդը Մարկիանոսի դէմ, ուստի վերջինս գրեց Լէօին մի նամակ և նորան տուաւ այն գահերիցութիւնը, զոր Թէոդոս շնորհել էր Դիոսկուրին. ընդ նմին խոստացաւ նաև նորա խնդրած ժողովը գումարել։

Լէօն տեսաւ որ գործերը կարգի են և ամենայն ինչ իւր սրտովն է. սակայն այժմ էլ մէկ նոր ցաւ պաշարեց նորան. Թէոդոսի օրով նորա խնդրած ժողովն այժմ պէտք չէր և աննպաստ էր, վտանգաւոր էր իւր տումարին, ուստի և սկսաւ ջանալ դորա աւելորդութիւնը հաստատել (Նամ. 82—86), ասելով թէ ինքն արդէն ինչ որ պէտք էր նամակներով արել վերջացրել է, ըստ որում և ինքն իւր համար դատում էր եպիսկոպոսներին, ներում էր ամենքին և հեռատեսութեամբ Կ. Պօլսի պատրիարքին իւր հրամանատարն էր հրատարակում։ Նորա երկիւղն աւելի ևս սաստկացաւ, երբ նկատեց որ տումարի հականիկիական լինելը տարածուել էր ամենուրեք։ Սակայն նորա բոլոր ջանքերը ժողովը խափանելու զուր անցան. կայսրը չխաբուեցաւ։ Այս տեսնելով Լէօ սկսաւ իւր տումարն պաշտպանելու աշխատել, ըստ որում գրեց[1] ամենայն կողմ,

---

1 Նամ. 89—95։

որ ով Եւտիքէսին նզովէ և Նիկեան ընդունէ, օրթոդոքս է։ Միւս կողմից ևս հաստատում էր[1] Եփեսոսի ժողովի կիւրեղեան նզովքն, որպէս զի ինքեան նեստորական չհամարին։ Բայց Լէօին պաշարեց այժմ ևս մի այլ երկիւղ, վասն զի նկատեց որ Մարկիանոս ձգտում էր Կ. Պօլսի պատրիարքութեան գերիշխանութիւն տալ։ Դորա դէմ կռուելու զէնք չունէր Լէօ—նա յաղթուեցաւ կայսեր կամաց զօրութեան տակ։

Մարկիանոս նշանակեց ժողովն ի Նիկիայ, որի հեռուութիւնն կայսրից սարսափեցրեց Լէօին. սա դիմեց և խնդրեց ժողովը Կ. Պօլսին մօտիկ գումարելու։ Այս խնդիրն, որ կայսեր ևս հաճոյ էր, չմերժուեցաւ. ժողովը հրաւիրուեցաւ ի Քաղկեդոն 8 հոկտ. 451-ին։ Հռովմ նշանակեց 4 պատուիրակ և քանի որ կայսրն Լէօին էր տուել նախագահութիւնը, վերջինս նշանակեց Պասքասինոս եպիսկոպոսին։ Լէօ բանեցրեց ամենայն զգուշութիւն. նա մինչև անգամ պատուիրեց իւր նուիրակներին բերել տալ Դիոսկորին որպէս յանցաւորի և ոչ որպէս ձայնատու եպիսկոպոսի[2]. այս արդէն բաւ է Լէօի երկիւղը հասկանալու։

Դիոսկորը հրաւիրուեցաւ ժողովին. կայսեր հրեշտակը ջանացաւ թոյլ չտալ նորան եպիսկոպոսաց հետ միասին գալու[3]. նա խորամանկութեամբ նստեցրեց Դիոսկորին մէկ նաւում. իսկ միւս եպիսկոպոսաց մի ուրիշում և պատուիրեց նաւավարին, որ Դիոսկորի նաւի ծովեզերքին հասնելուն պէս, միւս նաւը յետ վարէ։ Սակայն չնայելով նորա աշխատանաց, Դիոսկորի մէկ ուղեկիցը,

---

[1] Նամ. 93: [2] Մանսի VI, 580: [3] Հանդէս եգիպտաբան.(ֆրանս.) 1882. էջ 22. Դիոսկուրի ճառը, զոր ասել է նա ի Գանգրա, լսելով ծերունի Մակարի խոստովանական մահն, արձանագրեալ Թէոպեստոսի և Պետրոսի ձեռքով: Այդ ճառը կարդացւում է ամենայն տարի կոպտական եկեղեցում տօնախմբութեամբ:

Ծերունին Մակար, որ ս. Կիւրեղի հետ 431-ի Եփեսոսի ժողովական էր, չուզեցաւ միւս եպիսկոպոսաց նաւը նստել. սա մէկ եռանդուն եպիսկոպոս էր, որ արդէն յայտնի էր, որպէս հաւատոյ քաջարի դիմադրող և ինչպէս Դիոսկորոսն է ասում՝ «եթէ հանուր երկիրը լիք լինէր հերետիկոսներով ու դևերով, կզտուէր նորա աղօթքից. և եթէ ամբողջ աշխարհն բռնուէր սրերով ու նիզակներով, նա բնաւ չէր վախենալ այնոցիկ առաջ»: Ծերունի շահատակը մտաւ իւր հայրապետի նաւը: Դիոսկորի հետ էին նաև Թէոպիստոս և Պետրոս: Այս փոքրիկ խմբի, առաքելական հաւատքի այդ քաջոգի դիւցազունների հոգեկան տրամադրութեանց արդիւնք մի էր Ծերունի Մակարի երազը: Մինչդեռ նա ննջում էր նաւի մի անկիւնում, երևում է նորան ս. Աթանաս, բանում է դժոխքի դուռը, մատնացոյց անելով հրէշաւոր եռանգի մի (դրակոն), որի երախում գտնւում էր դժաշունչ տումարը, նորա յետևն ևս ձայն մի՝ «առ այս գիրքը, Պուլխերիա, և տուր Մարկիանոսին»: (Հանդ. եգիպ. 1882. 25):

Վերջապէս հասան Կ. Պոլիս և հրաւիրուեցան արքունիք առանձին մի ժողովի: Մակար կեղտոտ շորերում էր և երբ Պետրոս յիշեցրեց նորան զգեստաւորուիլ կայսեր ներկայանալու համար, նա պատասխանեց. «կայսեր սիրտն առաւել կեղտոտ է քան իմ հագուստը. հաւատա՛, որդեակս, որ եթէ ես կեղտոտագոյնն ունենայի, այն կը հագնէի, որպէս զի արժանանամ մի օր փառահեղ զգեստաւորուելու, երբ երթամ առ Ճշմարիտ Թագաւորն Քրիստոս» (1883. 18): Դրան մօտ կայսերականք խանգարեցին Մակարին ներս մտնելու, որ և իսկոյն պատասխանում է անվրդով. «երեքտակ պարանը դժուար է կտրւում. եթէ ինձ արգելում էք մտնելու, ահաւասիկ երեքն իմ գաւառից այնտեղ են, որոնք տեղեակ են հաւատոյ ուղղափառութեան առաւել քան ամենայն եպիսկոպոսք և գի-

տունկք»։ Սակայն նորա բացակայութիւնը զգալի էր Դիոսկուրին, ըստ որում և խսկոյն հրամայեց սա ներս թողնելու նորան, ասելով որ իւր թղթերը նորա մօտ են։

Դահլիճում ներկայ էին Մարկիանոս, Գուլխերիա, Մաքսիմոս Անտիոքացի, Ստեփաննոսն Եփեսոսի, Անատոլիոսն Կ. Պոլսի, Իւվենալին Երուսաղէմի և այլք։ Սակար ներս մտնելով հայհոյեց և նզովեց ամենքին և ապա գնաց ու նստաւ եպիսկոպոսների յետև. «Մահն, ասում է Դիոսկուր, երևում էր նորան քաղցր որպէս խնձոյք կամ հարսանիք, թերևս ասում էր նա իւր սրտում «եթէ ես մեռնեմ Քրիստոսի՝ աստուածորդուն հաւատոյ համար—այդ մեծ նահատակութիւն կլինի» (1883. 19)։ Հարկաւ Մակարի հայհոյանքները կոպտերէն էին, իշխողներին անհասկանալի։

Մարկիանոս տեսնելով սոցա տրամադրութիւնը, հրամայեց Դիոսկուրին յայտարարել իւր դաւանանքն և հիռանալ. վերջինս պատասխանեց. «մեր հայրերի հաւատքն է մինչև այս ժամս, որին մենք հետևում ենք. դու ասում ես թէ ուղղադաւան չեն մեր այն հայրերն, որոնք մեզ հաւատք են աւանդել, այն է՝ Աղեքսանդր, Աթանաս, Թէոփիլոս, Կիւրեղ, Յուլիոսն Հռովմայ, Իննոկենտիոսն, Կոլեստին». ըստ որում և առաջարկեց լսել դոցա ասածները, քննել և դատել արդեօք ուղղադաւան են, թէ ոչ։ Այս խօսքերն արդէն ցոյց են տալիս թէ ինչ պատրաստութիւն էր տեսնւում արքունիքում. լաւ յայտանիշ է մանաւանդ եպիսկոպոսներից մէկի խօսքը, ի պատասխան Դիոսկուրին, կայսեր հետ փախսալուց յետոյ, թէ «նախնիք այլ ևս չկան. տեսնում ես, որ մենք այժմ նոր մարդիկ ենք». ուրեմն նոր հաւատք էին ուզում այդ նոր մարդիկ նորապէս փրկուելու համար...։ Դիոսկուր հրաժարուեցաւ նոցա հաւատախախտման աջակցելու։ Բերին տումարը կարդալու, սակայն Դիոսկուր վեր թռաւ

և խլելով զայն, շպրտեց մէկ կողմ՝ ասելով՝ «Մի՛ յառաջարերէք այն մարդու խարդախութիւնն, ապա թէ ոչ կբանադրենք այս ամբողջ քաղաքն և կերթանք»։ Ցանդուգն էր Դիոսկուրի արարքն, ուստի սպառնացաւ Պուլխերիան նորան ևս Ոսկեբերանի օրը ձգելու. սակայն նա չվախեցաւ, այլ յիշեցրեց այն տանջանքները, զորոնք քաշել էր Պուլխերիայի մայրը, Ոսկեբերանի աքսորողն և աւելացրեց. «Եթէ չես վախենում քո մօր գլխին եկածները տեսնելով, արա ի՛նչ կուզես և ինձ հետ»։ Դիոսկուր գոգցես սարսափ ձգեց թագուհու սիրտն և ապա դառնալով առ ժողովը, բացատրեց քաջաբար, որ եթէ զինքն մերժեն և բանադրեն, բանադրած կլինեն և ճշմարիտ հաւատքը, զոր դաւանել են իւր հայրերն։ «Ասա՛ միայն, ո՞րն է իմ հաւատքի մոլորութիւնը, գոչում էր նա խոյացած առ կայսրն, մի՛ մեղանչիր, ո կայսր, Աստուծոյ դէմ, որի ձեռքին է քո շունչդ. հարկաւ դու անյապաղ երեւալու ես Նորա առաջ. մի՛ խախտիր այն հաւատքն, ո կայսր, զի ես որդի եմ աշխարհի զօրաւոր ուղղադաւան հայրերի, որոնցից ունել եմ իմ հաւատքը։ Հեռացի՛ր աշխարհական. մի՛ մօտենար, քանի դեռ չես զղջացել, այն տեղին, յորում Աստուած ներկայ է»։ Սակայն լռութեան տրուեցան այս վեհաշունչ խօսքերը[1]։

Այնուհետև սկսուեցաւ հաւատոյ վիճաբանութիւն. Թէոդորետ ասում էր որ իւր «Հայրն Լէօ» վարդապետում է Քրիստոսի աստուածութեան և մարդկութեան անջատութիւն, ըստ որում ոչ թէ Քրիստոսի աստուածութիւնն, այլ մարդկութիւնն է չարչարուում. նոյնպէս և

---

1 Շնորհալին ասում է Եղեսիոյ ողբի մէջ. Աղեքսանդրիա...
Հիմն և արմատ ուղղափառաց,
Տարամերժող հերձուածողաց,
Էին գումարք հայրապետաց
Որ առ ի քոյդ նախագահի... 115։

ոչ թէ նորա մարդկութիւնն, այլ աստուածութիւնն է փառաւորուած։ Այս լսելով Դիոսկուր սկսաւ բացատրել, որպէս ինքն ուսել էր Կիւրեղից, ըստ որում նա այնպէս գեղեցկաբարբառ օրինակներով բացատրեց այդ աստուածային խորհուրդն, որ եպիսկոպոսներն ոգևորուեցան, կրակուեցան և մոռանալով ամենայն ինչ, գոչեցին՝ «յիրաւի, Դիոսկուրի հաւատքն է լաւը. նորա մէջ չկայ մոլորութիւն. խաբեբայութիւն է Փլաւիանոսի հաւատքը. մենք հաւատում ենք, որպէս մեր հայրն Դիոսկուր... Ազատեցէ՛ք կայսեր այդ շների խարդախութիւնից» (Հանդ. եզ. 88. էջ 23)։

Թէև Լէօ բացէ ի բաց չթշնամանուեցաւ, այդու հանդերձ Մարկիանոս երկիւղով տեսնում էր գործի անյաջողութիւնը. նա այլ ելք չունէր. հուննները սպառնում էին պետութեան արևմուտքին. Լէօին արհամարհել նոյն էր թէ արևմուտքը վտանգի մէջ ձգել։ Նա արձակեց ժողովը. հէնց որ Դիոսկուր հեռացաւ, հրամայեց Մարկիանոս միւս եպիսկոպոսաց կրկին յետ կանչելու. ժողովը նորոգուեցաւ. ատեանը կարդացուեցաւ և որոշուեցաւ զայն յառաջ տանելու. խօսուեցաւ նաև Մակարին կեանքից զրկելու վրայ։ Այդպիսով ծրագրեցին Քաղկեդոնում կայանալիք ժողովի գործունէութիւնն և ցրուեցան։ Դիոսկուր գիտէր այս ամենը, զի նորա հիւրընկալ Նիկետասի որդին Միսայէլն արքունի ներքինի էր և ամենայն ինչ հաղորդում էր նորան։

Քաղկեդոնի ժողովը բացուեցաւ[1] և կայսրական յանձնակատարք նորա գլուխն անցան, իսկ առաջին ձայնի իրաւունքը տուին Հռովմայ պատուիրակաց։ Սոցա առա-

---

[1] Կոպտաց պատմիչն Մակրիզի ասում է, որ Դիոսկուր նախ քան այդ բերել է տուել կայսրից պատրաստուած դաւանագիր մի իբր ստորագրելու, գրել իւրը, նոցա բանադրել և յետ յղել:

ջին ջանքն եղաւ Դիոսկուրին զրկել ձայնաւորի իրաւունքից, որ դեռ ճանապարհին հանդիսով բանադրել էր Լէօնին և իւր ուղեկից եպիսկոպոսաց ստորագրել տուել (Մանսի VI. 1006), ըստ որում գրպարտեցին թէ նա կայսեր դէմ է, ուստի և դատապարտեալ է. այդ յաջողուեցաւ նոցա և Դիոսկոր ստիպուեցաւ հակառակ Բիւզանդական սովորութեան, դատապարտեալի նստարանի վրայ տեղ բռնել։ Ժողովին հրաւիրել էին և բուն նեստորականաց, որոնք Լէօից արդէն պաշտօններ էին ստացել. երբ դոցանից Կիպրոսի եպիսկոպոս Թէոդորետ, Դիոսկուրի անողոք թշնամին, որի գրուածներից զգուշացրել էին հայոց Պրոկղ և այլք, երբ այդ կատաղի նեստորականը ներս մտաւ, սոսկալի աղմուկ բարձրացաւ. Դիոսկուր ես յիշեցրեց ժողովականաց, ասելով. «Թէոդորետ նզովել է ս. Կիւրեղին, այժմ էլ Կիւրեղի՞ն էք ուզում արհամարհել»։ Աղմուկը սաստկացաւ. ժողովականք գոչում էին. «դուրս ձգեցէք այդ հրէային, Աստուծոյ այդ հակառակորդին և մի՛ կոչէք նորան եպիսկոպոս»։ Գռչիւնները և յիշոցները շարունակուեցան մինչև որ կայսերականք նկատեցին՝ «անօգուտ և անվայել է եպիսկոպոսաց այդպիսի ամբոխային գոռիւնը...» և դժուարութեամբ կարողացան լռեցնել։ Սակայն լռեցրին նոցա, առանց Թէոդորետին դուրս անելու. սա ես տեղ բռնեց ժողովականաց մէջ, որպէս ձայնաւոր։

Թէ որոնք էին արքունի միջոցները ժողովի գործերն ըստ ծրագրին վարելու համար, տեսնում ենք նոյն իսկ ժողովի առաջին ժամին։ Եպիսկոպոսներից ոմանք անշուշտ ստիպուած սկսան գրպարտել Դիոսկուրին, որ իբր թէ վերջինս ուժով լինի նոցա ստորագրել տուած Եփեսոսի Բ. ժողովի վճռին, սակայն Եգիպտոսի եպիսկոպոսք պատասխանեցին՝ «դուք հէնց մեր առաջ էք ստորագրել, հէ ինչո՞ւ ձեր կղերականք գռչիւններ են հանում», ըստ

բոլոր պատրիարքներն անձնիւր 1—2 եպիսկոպոսով ժողովուէին, հաւատքի վրայ խորհեն և հետևանքը գրով բերեն, որպէս զի տարակուսանքի տեղիք չլինի. Հասկանալի է թէ այդ ինչ ժողով և գլուխիւն պիտի լինէին: Այդու հանդերձ հռովմէականներից Սարդէսի եպ. Ֆլորենցիոս նկատեց «յամենայն դէպս այդ ժողովը պիտի մի նոր դաւանանքի համար շատ ժամանակ ունենայ, սակայն ինքս ես կարծում եմ, որ Լէօի գրութիւնը բաւ է»: Այս խօսքերն անլուր մնացին: Կարդացին Նիկիականը, որից յետոյ հռովմէականք գոչեցին՝ «այդպէս է ուսուցել Կիւրեղն, այդ է դաւանում Լէօ»: Հապա երևան ելաւ յանկարծ մէկ Նոր հաւատամք «Պոլսական» անուամբ, որ իբր թէ Կ. Պոլսի 318 ժողովումն է հաստատուել. մէկ կողմից Կիւրեղին և Լէօին, միւս կողմից ոչ զոք չնզովելու և պետութեան հերձուածողաց հաշտեցնելու խնդիրն էր այս: Այդ մի փոփոխութիւն է Եպիփանոսի մասնաւոր հաւատամքի: Դորանով պիտի վերացնէին այն հակասութիւնն, որ ակներև էր Նիկիականի և ժողովի որոշելիք դաւանանքի մէջ: Մինչև 450 թիւը պատմիչներից ոչ ոք չէ յիշում այդ իբր Կ. Պոլսի հաւատամք[1]: Ահաւասիկ այդ հաւատամքը.

«Հաւատամք ի մի Աստուած Հայր ամենակալ արարիչ երկնի և երկրի, ամենայն երևելեաց և աներևութից. և ի մի տէր Յիսուս Քրիստոս, Որդին Աստուծոյ միածին, որ ի Հօրէ ծնեալ յառաջ քան զամենայն յաւիտեանս. լոյս ի լուսոյ, Աստուած ճշմարիտ յԱստուծոյ ճշմարտէ, ծնեալ և ոչ արարեալ, համագոյ Հօր, որով ամենայն եղև, որ վասն մեր մարդկան և վասն մերոյ փրկութեան էջ յերկնից և մարմնացաւ ի Հոգւոյն սրբոյ

---

[1] Սոկրատ V, 8. Սոզոմ. VII, 7. 9. Թէոդորետ V, 8. Գրիգ. Նազ. նամ. 102:

և ի Մարիամայ կուսէն և մարդացաւ խաչեցաւ վասն մեր ընդ Պիղատոսիւ Պոնցիոսի և չարչարեցաւ և թաղեցաւ և յարեաւ յերիր աւուր, ըստ գրոց. և ել յերկինս և նստաւ ընդ աջմէ Հօր և գալ միւս անգամ հանդերձ փառօք դատել զկենդանիս և զմեռեալս, որոյ թագաւորութեանն վախճան ոչ լինի։ Եւ ի Հոգին սուրբ, տէր և կենդանարար, որ ի Հօրէ ելանէ, որ ընդ Հօր և ընդ Որդւոյ երկրպագի և փառաւորի, 'որ խօսեցաւ մարգարէիւք։ Ի մի սուրբ, ընդհանրական և առաքելական եկեղեցի։ Խոստովանիմք մի մկրտութիւն ի թողութիւն մեղաց։ Ակն ունիմք յարութեան մեռելոց և կենաց հանդերձելոցն յաւիտենից։ Ամէն» [1]։

Մեր նպատակից դուրս է քննել այս հաւատամքը. բաւ է նկատել որ այդ հաւատամքը Նիկիականից շատ հեռու է և թշնամանող։ Այդ իսկ հաւատամքը կարդացուեցաւ և ոչ ոք չյիշեցրեց որ Պօլսի ժողովը հաւատամք չէ ունեցել։ Այս էլ անցաւ։ Կարդացին նաև Կիւրեղի երկու գրութիւնք։ Ըստ ոմանց (Մանսի. VI, 962) կարդացել են և տումարն, ընդ նմին Իլլերիկացւոց և Պաղեստինի եպիսկոպոսք յայտնել են որ տումարի մէջ Նեստորականութիւն կայ։ Այս հարկաւ անդիւրեկան է եղել, մանաւանդ երբ ոմանք ժամանակ են խնդրել՝ որ ժողովը տումարի վրայ հանգիստ խորհրդակցէ։ Այս լսելով կայսրականք յանձնարարեցին Անատօլիոսին ընտրել «պիտանիներին», որպէս զի սոքա առանձինն ուսուցանեն, խելքի բերեն տումարի նկատմամբ տարակուսողներին։ Եպիսկոպոսներին ուսուցանե՞լ... Այս սարսափեցրեց տարակուսողներին, սաստի և գոչում էին. «Ամէնքս էլ սխալուել ենք, ողորմեցէք ամէնքին. այս ասում ենք օրթոդոքս կայսեր. եկեղեցին երկպառակուել է» Լայլն։ Եւ ահա կայսրականք ո-

[1] Տես. Hahn, Bibliothek der Symbale, § 73 և 75. Hört-ի հետազօտութիւնն այդ հաւատամքի վրայ. Լայլն։

թողուած յայտարարեցին որ մէկ յանձնաժողով գումարուի դաւանանքն կազմելու համար. մասնաժողովի գլուխն էր Անատոլիոս պատրիարքը:

Ժողովականք օրստօրէ տակաւանում էին. Գ. Նիստում 600 ժողովականներից ներկայ էին միայն շուրջ երկու հարիւրը՞: Բացակայ էին նաև կայսեր յանձնակատարք: Նիստը բացաւ Կ. Պոլսի սարկաւագ Էտիոս. այս մնացորդները հրաւիրեցին Դիոսկուրին, որ և հրաժարուեցաւ, ասելով որ կգայ եթէ կայսրական յանձնակատարք և միւս եպիսկոպոսք ներկայ լինեն: Նոքա թողեցին այդ ամէնը մի կողմ և սկսան յառաջ վարել Դիոսկուրի ամբաստանութիւնը. եպիսկոպոսները յարուցանում էին զզուելի գանգատներ փողոցային մանրամասնութեամբ. դատապարտեալը ներկայ չէր և դատապարտողք արխայնել էին անդուռն բերանով յարձակուելու եկեղեցու այն մեծ հերոսի վրայ: Այս ինքնիշխան ամբաստանութիւնից յետոյ ժողովը գրեց առ Դիոսկուր՝ «սուրբ և մեծ և ընդհանուր ժողովս... առ Դիոսկուր: Ծանիր որ դու սրբազան կանոններն արհամարհելուդ և ժողովին ստուգանելուդ համար և որովհետև, բացի քո միւս պակասութիւններդ, ժողովի երիցս հրաւիրման չհետևեցար, ի 13 հոկտ. եպիսկոպոսաց սուրբ և ընդհանուր ժողովով պաշտօնանկ եղած և ամենայն հոգևոր գործերից հեռացած ես» (Մանսի. VI, 1038): Ժողովն այստեղ զգուշանում է Դիոսկուրին որ և ամբաստանութիւն գրել, բացի նորա անհնազանդութիւնը. սակայն նոյն ժողովը յայտարարեց կայսեր, հազար ու մէկ զրպարտութիւնք բարդելով Դիոսկուրի վրայ:

Արդէն Դ. նիստը զբաղեցաւ միայն դաւանանքով. Անատոլիոս ջանացաւ հին դաւանանքը կանգուն պահելու և երբ մասնաժողովի արդիւնքը բերաւ «յերկուց բնութեանց» մէկ բնութիւն (Մանսի VII, 97) հաստատելով,

Հռովմայ պատուիրակները սպառնացին Հեռանալ. սակայն յետոյ բերին և մէկ ճարտարարուեստ դաւանագիր։ Ժողովը չկամեցաւ այդ ընդունել. այս տեսնելով Հռովմայ պատուիրակները սկսան գոչել թէ յոյնքեանք եւ Կիւրեղի աղէտ են դաւանում; բայց երբ Պաղեստինի եպիսկոպոս Անաստաս առաջարկեց նոյն այդ Հրապարակով խոստովանելու, նոքա զանց արին այդ անելը։ Չնայելով սպառմանը, զոր գործ էին դնում եպիսկոպոսների վրայ, այդ դաւանագիրը չընդունուեցաւ։ բանն այնտեղ Հասաւ որ սպառնացին ժողովը Բռնալիս վերստանձնելու. Եգիպտացիք գոչում էին ողորմագին. «մենք կուզենայինք այստեղ ձեզնից, քան թէ այնտեղ սպանուել։ Թող այժմ մի արքեպիսկոպոս նշանակուի Եգիպտոսում և ապա ստորագրենք և հայնակցենք ձեզ։ Գթացէք մեր ալևոր գլխին։ Պօլսի Անատոլիոս գիտէ որ Եգիպտոսում ամենայն եպիսկոպոս պարտ է լսել Աղեքսանդրիոյ եպիսկոպոսին։ Գթացէք մեզ, մենք առաւել սիրով կմեռնենք կայսեր և ձեր ձեռքից քան տանը. կուղէք վերցրէք մեր վիճակները»… Այս խօսքերը պարզ ցոյց են տալիս թէ ինչ սարսափ էր տիրում ժողովականաց. «գթացէ՛ք մեր ալևոր գլխին… մենք առաւել սիրով կմեռնենք կայսեր և ձեր ձեռքից, քան տանը», գոչում էին այն ծերունիները. ինչպիսի բռնութիւններ էին գործ դնում, որ այդպիսի աղաչանքն բացականչութեանց տեղիք էին տալիս… Սակայն ժողովականաց ընդդիմադրութիւնն ուժգին էր. նոքա ընդունեցան պատրիարքի գրութիւնը, Հռովմէականից խոյս տալով, ըստ որում և բացականչում էին. «ով սորան Հակառակում է, նեստորական է։ այնպիսիք կարող են Հռովմ գնալ»։ Վճռական ճգնաժամն էր. սկսան եպիսկոպոսներին մի-մի առանձնացնել։ Այդ ժամանակ Եւտիքեանք ևս մէկ խնդրագիր մատուցել էին կայսեր յիշեցնելով՝ որ քրիստոնէական եկեղեցին երկպառակուում էր և միայն Հե-

շարունակեց թղթերով գրգռել կայսեր (Նամ. 148--152), սակայն վերջինս թողեց Կիւրեղեանց իշխելու: Գրեց քաղաքագիտութեամբ և ի հռովմ Տիմոթէոսի պատրիարքութեան նկատմամբ, որին հովանաւորում էր արքունիքում Ասպար պատրիկը: Լէօ վարանում էր պատասխանելու. անցաւ մի տարի և ապա գրեց 2 նամակ 458-ին 17 օգոստ. իւր հաւատարիմ Դոմեցիանոս և Գեմինիանոսի հետ, յորդորելով պաշտօնանկ անել Տիմոթէոսին, պատժել «հերետիկոսաց» ևայլն: Կայսրն յղեց նորա թուղթը Տիմոթէոսին նորա կարծիքն ևս լսելու համար (Զաք. IV, 6. Եւագր. II, 10): Տիմոթէոս, այդ զարգացած և արի եկեղեցականը գրեց մէկ հրաշալի պատասխան հիմն ի վեր տապալելով հռովմայ վարդապետութիւնը (Զաք. IV, 6): Այս նամակը ձգեց կայսեր վտանգաւոր դրութեան մէջ: Մեռաւ Անատոլիոս 458-ին և իրերի վիճակը կրկին փոխուեցաւ: Նորան յաջորդեց Գեննադիոս, բուռն քաղկեդոնականը (—471). Տիմոթէոս 459—460-ին զօրքով գահընկէց եղաւ և յաղթական երթով անցաւ Գանգրա, ուրեղ մի ժամանակ Դիոսկուրն էր. Բերիւղոսում մեծ փառքով հանդիպեց նորան Սալաթէոս եպիսկոպոսը: Գանգրայում շարունակեց իւր գործն, ուստի և հեռացուեցաւ ի Քերսոն (Զաք. IV, 9. 10): Սակայն կայսրը մտախոհութեան մէջ էր. ամբողջ արեւելեան մէջ խռովութիւնը չէր խաղաղում. թէ ձնշումն, թէ արեան նախճիրը չէին սաշտափեցնում հաւատքի հաւատարիմներին: Լևոն I մըտածում էր քաղկեդոնականութիւնը հիմնովին կործանել, որպէս ցոյց են տալիս նորա նամակները: Եգիպտացիք դրդուած իւրեանց պաշտած փառաւոր նախնեաց հաւատալիքի խափանումից, և Կ. Պօլսի պատրիարքի առաջնութեան վրայ, ձգտում էին անկախութեան: Պամփիւլիացի ժողովը գրեց կայսեր Քաղկեդոնի դէմ, առաքելով Ճշմարիտ հաւատալիքն և խորհուրդ տալով թողնել

Քաղկեդոնը միայն վէճի համար և ոչ ժողովուրդ ու-
սուցանելու (Մանսի VII, 573—)։ Նոյնպէս Բասիլիկոս 500 եպիսկոպոսաց ստորագրութեամբ նզովեց 476-ին Քաղկեդոնի ժողովն և այրեց նորա որոշումները։

Մեռաւ Լէւոն 474-ին և ահա Բասիլիկոս կայսրն հրատարակեց իւր հռչակաւոր էնկիկլիոնը 476-ին, նզովեց Քաղկեդոնի ժողովը, Լէօի տումար և հակառակորդաց յառաջ քաշեց, Տիմոթէոսին և Անտիոքայ Պետրոս Ֆուլլօին կրկին գահ բարձրացնելով։ Բայց Պօլսի պատրիարք Ակակիոսի (471—89) օգնութեամբ գահընկէց եղաւ Բասիլիսկոս, տեղն անցաւ 477 Զենոն։ Իսկ Լէօ իւր մեծագործութեանց «վաստակը» չվայելեց. գոնէ այս չարիքները չտեսնելու բախտն ունեցաւ. նա մեռաւ ցաւերի մէջ 461 թուին...։ Նորա գործած չարիքները չկարեցան տանել նորա յաջորդները...։ Զենոն հրատարակեց 482-ին Հենոտիկոն, որ խորտակեց Քաղկեդոնը, վերականգնեց Կիւրեղի 12 նզովքներն և վերստին հաստատեց Նիկիան։ Այդ ժամանակ Հռովմայ Ֆելիքս II անարգեց Հենոտիկոնը և բանադրեց Ակակիոսին, ըստ որում բաժանուեցան Հին և Նոր Հռովմը 484—519։

Միւս կողմից Աղեքսանդրիոյ Պետրոս Մանգոսի (483—90) յարաբերութիւնը Ակակիոսի հետ կրկին սաստկացրեց ատելութեամբ լի ժողովրդի խռովութիւնն, որ շարունակուեցաւ Անաստաս կայսեր ժամանակ ևս։ Զօրապետ Վիտալեան բարձրացաւ Կիւրեղեանց օգնութեամբ կայսեր դէմ։ Սակայն Հռովմայ միութիւն անհրաժեշտ էր. այդ միտքը ստիպեց Յուստինիանոսին և Վիտալեանին Քաղկեդոնն ընդունելու. Կիւրեղեանց դէմ օգնելու եկան Հռովմայ պատուիրակներ, որոնք ջնջեցին այդ հակառակորդաց անունները «սրբութիւնից» և սկսան 519 թուից փակել Աթէնքի, Անտիոքայ, Աղեքսանդրիոյ եկեղեցական դպրոցներն և ամենայն խուժադուժ միջոցներով ժողո-

վուրդը ձնշել: Այս յաջողեցաւ նոցա, սակայն ձնշուած ժողովրդի բողոքը չքարձուեցաւ. Հաւատարիմ ձայնը դեռ շարունակում էր հնչել ուխտապահ և գերեզմանաց մէջ... Քաղկեդոնի ժողովը պաշտպանեց, զի Պօլսի եկեղեցականք անպամ գիտակ էին որ այդ ժողովը դաւաճանել էր Ճշմարիտ հաւատքին, ուստի դուրս ելաւ առաջին սքօլաստիկոսը Ղեոնդիոս Բիւզանդացին (485—543) և աշխատեցաւ իմաստակօրէն «անձն» և «բնութիւն» բառերը նոյնանիշ հրատարակել և համաձայնեցնել Քաղկեդոնը Կիւրեղի նզովքների հետ: Յուստինիանոս ևս աշխատեցաւ թողնել իր նախորդների անյաջող բանութիւնք և ճարտարութեամբ հին հաւատալիքը յառաջ քաշել: Նա հրաւիրեց զանազան կողմերը միաբանելու 531-ին, քննեց և հաստատեց թէ ժողովը դարձուածքով իմն մի մարմնացեալ բնութիւն է խոստովանել. կեղծեցին նաև ժողովի արձանագրութեան մէջ «յերկու բնութիւնս» խօսքերը— «յերկուց բնութեանց» շինելով, որ մնաց ցայժմ, իսկ յունարէնն «in duabis naturis» իբր ապողինարեաններից կեղծեալ յայտարարեցին (Մանսի VIII, 817—): Եւ այլ հրովարտակներ հանեց և ինքն Կիւրեղեան հրատարակեց, առանց Քաղկեդոնի ժողովը մերժելու: Կայսրուհին ևս սկսաւ բացարձակապէս պաշտպանել Կիւրեղեանց, ըստ որում նորա սենեակում աշխատում էին «երկփեղկած վարդապետութեան» յաղթութեան օգնելու: Այնուհետև Կ. Պօլսի պատրիարք նշանակուեցաւ ջերմ Կիւրեղեան Անթիմոս և արքունիք մտաւ Սևերոս, որոնց ջանքով լիովին ընկաւ Քաղկեդոնը: Արքունիքի գործունէութիւնն զարգացաւ այս ուղղութեամբ, որ նկատելի է մանաւանդ «որ խաչեցար»ի մէջի ժամանակ, ըստ որում Հռովմայ նուիրակները հակառակ էին դուրս ձգել այդ խօսքերին, թէև այդպէս է յիշատակուած կտակարանում և ամենահին Հայրերի գրուածներում: Հռովմայ Հորմիզդաս (514—23)

չուզեցաւ իւր նուիրակաց առանց մերժել, և սկսաւ կայ-սեր պահանջներից խոյս տալ, սակայն Յովհան I (—526) կատարեց Յուստինեանի պահանջն, ընդունելով այդ խոս-քերի գործածութիւնը։

Բայց խաղաղութիւնը չէր վիճակուած Բիւզանդին. կրօնական հալածանքներն և կոտորածները պիտի շարու-նակուէին. Նորա սուրը պիտի աւերէր եկեղեցիքը, վան-քերն ու կուսանոցներն, պլատաւոններին ճանապարհ հարթելու համար... 536 թուին անձամբ եկաւ Հռովմայ Ագապետ պապան, ջանացաւ և կարողացաւ Անթիմոս պատրիարքին գահընկէց անել տալ և Կ. Պօլսի մի ժո-ղովում հաստատեց նոր պատրիարք Մեննասի նախա-գահութեամբ երկու բնութեանց վարդապետութիւնն, ընդ-նմին և նզովեցին Անթիմոսին և պետութեան խաղա-քարներին։ Ի յիշատակ այս քաջագործութեան մեռաւ Ա-գապետ ի Կ. Պօլիս († 536)։

Սակայն 543-ին նզովեց հրովարտակով Թէոդորի, Թէոդորետի և Իբասի քաղկեդոնական գրութիւնք և այդ նզովքն ստորագրեցին ստիպեալ 4 պատրիարքներն՝ Պօլսի, Անտիոքայ, Աղեքսանդրիոյ և Երուսաղէմի, նեղը ձգելով քաղկեդոնականաց։ Նորա և յաջորդ կայսրների քաղա-քականութիւնն էր Քաղկ. ժողովը չնզովել, սակայն հին հաւատքն իբր նորա վարդապետութիւն հրապարակել։ Ուստի և խռովութիւնն այժմ ընդարձակուեցաւ քաղկե-դոնականաց ընդդիմութեան ևս հանդիպելով[1]։ Այդ խռո-վութիւնը վերջ չունեցաւ մինչև Բիւզանդի անկումն։ Այս թռուցիկ հայեացքը բաւարար ուրուագիծ մի է անվերջ քրարանցման պատմութեան։

---

[1] Բիւզանդեան 553-ի Ե-դ ժողովում ծեքեց Յուստինեանոս Քաղ-կեդոնականութիւնն ՚ի մի բնութիւն վերածելով, և Հռովմայ պատերազ-մին հանդիպեց։

Ամփոփե՛նք. Քաղկեդոնի ժողովը գումարուեցաւ ոչ թէ դաւանական խնդրի առթիւ, այլ անձնական և քաղաքական շահերից դրդուած, զի բնութեան խնդիրը վերջացած էր Եփեսոսի 431 ժողովով և վերստին նոյն քաղաքում 449-ին։ Ժողով կազմողը Մարկիանոսն էր—որ ջանահնար եղաւ Կ. Պօլիսը բարձրացնել, սակայն պետութիւնն չպառակտել. ժողովի գումարման հակառակ էր Հռովմայ Լէօ I։ Թէ ինչ և թէ ինչպէս պէտք է ժողովը գործադրուէր, նախապէս ծրագրել էր կայսրը. որոշուած էր հին և նոր վարդապետութիւնը յարակից հաստատել, բայց գլուխ չեկաւ. Հռովմայ վարդապետութիւնը յառաջ տարուեցաւ։ Բոլոր հին եկեղեցականք Քրիստոսի մէջ մի բնութիւն են քարոզել. նոյն իսկ Լէօ I այլ բան չէ քարոզել, մինչև այն շահագիտական խնդրի յարուցումը։ Լէօի տումարը վարդապետում է նոյնն, ինչ որ Նեստոր գրել էր իւր վերջին նամակներում, այնպէս որ Նեստոր նզովուելով, նզովւում էր այն վարդապետութիւնը, զոր նախ նա և ապա Լէօի տումարն է քարոզել։

Ժողովում Դիոսկուր ուղղափառ պատրիարքին նստեցրին դատապարտեալի նստարանի վրայ հերետիկոս նեստորականաց գանգատի պատրուակով, որ հակառակ էր Բիւզանդական հին սովորութեանց։ Դիոսկուր արքունի ժողովից յաղթանակով էր դուրս եկել, Քաղկեդոնում և նորա գաղափարակիցները շատ էին, սակայն նորա ձայնը խեղդեցին, առանց նորա ասածները հերքել կարենալու։ Նորան վախեցնել ջանացին և ուզեցան մի այլ ժողովում, որին ներկայ չէին արքունի ոստիկանք, բռնահարելու, բայց յաջողութիւն չունեցան և ամբաստանեցին նորան կայսեր առաջ, առանց Դիոսկուրի ներկայութեան։ Եպիսկոպոսները ստիպուել էին նորան ամբաստանելու, իսկ երբ չկարեցան ապացուցանել, սկսան ստորաբար ներողութիւն խնդրել։ Ժողովը չուզեցաւ ներս թողնել նեստորականաց,

սակայն կայսրականք զանխլացան նոցա գոչիւնները։ Շատ խաբկանքների անյաջողութիւնից յետոյ, չլսեցին ժողովականաց խօսքին, որոնք պնդում էին Կիւրեղի նզովքները նորոգել և նոր բան չաւելացնել։ Ժողովում կեղծեցին հին արձանագրութիւնք և հնարեցին մէկ նոր հաւատամք Կ. Պօլսի ժողովի անունով։ Տումարի ընթերցումը կասկած յարոյց և չընդունուեցաւ, որպէս նեստորամիտ գրութիւն։ Կայսրականք սարսափեցրին կասկածող եպիսկոպոսներին, հրամայելով առանձնապէս նոցա խելքի բերել։ Այնուհետև Անատոլիոս ջանացաւ հին վարդապետութիւնը ներս սպրդել, բայց անյաջող։ Հռովմայ պատուիրակների սպառնալիքից վախեցած, յառաջ բերին արդէն պատրաստ մի այլ դաւանագիր։ Ժողովը չկամեցաւ այդ դաւանագիրն ընդունել, հռովմէականք գոչեցին որ ինքեանք ևս դաւանում են Կիւրեղի նման, իսկ երբ նոցանից պահանջեցին այդ հրապարակապէս ասելու, նոքա խոյս տուին։ Սակայն դաւանագիրը ստորագրել տուին եպիսկոպոսներին առանձին առանձին թէ բռնութեամբ և թէ խոստումներով. ստորագրողք հազիւ թէ ժողովականաց չորրորդ մասը լինէին։ Տումարն ևս կցուեցաւ դաւանագրին, ընդ նմին և Կիւրեղի նզովներն, որ հակառական էր։ Կայսրը հանդիսացաւ միահեծան քահանայապետ և վարդապետ հաւատոց, իսկ Կ. Պօլիսը բարձրացաւ հակառակ Լէօի ամենայն բաղձանաց։ Թէ ժողովի գործը, թէ նորա վարդապետութիւնն ապահովութեան կայսրական սրով։ Սարսափելի հալածանքներ յարոյց կայսրն, որ տևեց մինչև Բիւզանդիոյ անկումն. այդ ժամանակի ընթացքում Բիւզանդիոյ կայսրներից շատերը ջանացին խափանել այդ ժողովը, սակայն չյաջողեցաւ...։

Ի վերջոյ եզրափակենք, դնելով այստեղ հռչակաւոր դաւանագէտ Հառնակի խօսքերը.—«Խորտակուեցաւ, ասում է նա, արևելեան եկեղեցու հաւատքը...։ Բանին

Աստուծոյ քրիստոսաբանութեան կազմածքը փշրուեցաւ. (Նեստորի) «երկու անձինք»ն որոշապէս չնզովուեցաւ... ոչ աստուածութիւնն է յինքն ձգել զմարդկութիւնն և ոչ մարդկութիւնն է աստուածութեան վեհութեան բարձրացուել, այլ պարզապէս անձի մէջ են, ըստ որում մարդկային և աստուածային բնութիւնք միջնորդաբար միանում են մէկ անհատի մէջ։ Այդ ոչ մի երկիւղած հոռոմ՝ որ Աթանասի և Կիւրեղի դպրոցն է գնացել, չէ կարող որպէս իրաւացի միջինն ճանաչել. այդ նոյն իսկ 433 թուի խառնաձևը չէր. այդ մէկ ժխտումն էր քրիստոսաբանական բանաձևն ըստ փրկչաբանութեան խիստ զարգացնելուն։ Եւ հէնց այդ իսկ կաղ է։ Եթէ մարդկութիւնը Քրիստոսի մէջ աստուածացած չէ, այլ նորա մէջ նորա մարդկութիւնը միայն անձի միջոցով կապակցուած է, ի՞նչ արդիւնք կարող է այդպիսի կապակցութիւնը մեզ համար ունենալ...։ Մերկ, բացասական 4 որոշումները (անշփոթ, անբաժան ևայլն) որոնցով ասուելու է ամենայն ինչ, հիմնովին մոլար են ըստ զգացմանց յունաց դասական աստուածաբանների։ Դոքա զըրկուած են ջերմ, թանձրացեալ բովանդակութիւնից. դոքա այդ կամուրջն, որ հաւատացելոց հաւատն է, այդ կամուրջն որ ձգուած է երկնից յերկիրս, դարձնում են մէկ գիծ, որ սղագոյն է քան այն մազն, որի վրայով իսլամութեան խոստովանողք անգամ մի դրախտը գնալու յոյս ունին։ Արդարև կարելի է ասել. քաղկեդոնականութիւնը պահեց միայն նուազագոյն (minimum) արևելքի պատմական այն հաւատողութեան, որ կար Քրիստոսի անձի նկատմամբ, այնու՝ որ նա փրկագործութեան վարդապետութեան հետևողութիւնք անհետացրեց, որով և սպառնացաւ աւետարանի Քրիստոսին լիովին ոչնչացնել։ Իսկ Հայրերն, որոնք այդ դաւանանքն ընդունեցան, այդ չմտածեցին—բանադատուելու թուլութիւնն ունեցան,—բայց եթէ

մտածած լինէին, Թանգագոյն կլինէր այն վճարը, զոր նոքա այդր՝ համար վճարեցին. վասն զի մէկ աստուածաբանութիւն որ հիմնական հարցերում սոսկ բացասականի վրայ է յենւում, ինքն ինքեան դատապարտում է։ Աննպաստ է նաև ասել թէ ժողովը միայն խորհուրդը հաստատեց և այդու ծառայութիւն մատոյց հռոմոց եկեղեցու և աստուածաբանութեան շահերին։ Ճշմարիտ խորհուրդն երկու բնութեանց էական միութեան մէջ է և եթ..... իսկական խորհուրդը յետ մղուեցաւ, մէկ կեղծ խորհրդից...։ Իսկ այն դրութիւնն, որ հիմակ ուղղադաւան պիտի համարուէր... մէկ անձն իբրապէս երկու է դարձնում, ըստ որում և ուրանում է հին հաւատը[1]»։



[1] Միքայէլ Մեծն պատմում է, որ Պետրոս եպիսկոպոս Գազացին գրեց Հայոց. «Ի Քաղկեդոն ուրացան զՔրիստոս. դուք պինդ կացէք ի հայրենի հաւատդ՝ որ շնորհեցաւ ձեզ ի Տեառնէ և աշխարհիդ ձեր. զի որպէս երբեմն սերմն մարդկութեանս այդուստ սփռեցաւ ընդ աշխարհ, նոյնպէս առ ձեզ պահեցաւ սերմն ուղղափառ հաւատոյ. և ի ձէնջ տարածելոց է ընդ բազումս: Ողջ լերուք յանսասան վէմն Քրիստոս, որդեակք իմ»:

Է.

## ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԵԿԵՂԵՑԻՆ ՄԱՔԱՌՄԱՆ ԴԱՇՏՈՒՄ.

*«Ըստ մեծի մնասուցն և մեծ ջանք*
*և աշխատութիւնք պիտոյանան»:*
Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ.

---

*Կենաց այն ընթացքն, զոր անցցրեց Հայաստանեայց եկեղեցին խրոխտապանծ նահատակութեամբ, սոսկալի դարեր յետ գլորելով, իւր զարկն ու լարում ստացել է Գրիգոր-Սահակեան շրջանից, որ Հայոց եկեղեցու և ինքնագիտակ հայ ազգի* 16 *հարիւր ամեայ գոյութեան կենդանացուցիչ զարկերակն է։ Այդ շրջանն է, որ հոգի տուաւ Հայոց, այդ շրջանն է, որ ոգևորում էր Հային և այդ շրջանն է, որ պիտի սնուցանէ և կրթէ յաւիտեան ճշմարիտ Հային։* 449—450-*ին Մազդէզն սպառնում էր Հայոց և ս. Սահակի անմահ հետևորդք՝ մահն աչքի առաջ՝ գրում էին իւրեանց հաւատոյ խոստովանութիւնն առ մոլի այքան, շեշտելով. «յայսմ հաւատոյ զմեզ ոչ ոք կարէ խախտել, ոչ հրեշտակք և ոչ մարդիկ, ոչ սուր և ոչ հուր» (Եղ.* 67*), որ Հայոց եկեղեցու ախոյեանի անվեհեր հիմնաքարը դարձաւ։ Ասա ևս դրոշմեցին Հայք այն*

գիրքն, որի մէջ և եթ իւրեանց գոյութիւնը պահել կարէին. այդ այն խօսքն է, զոր գրում է եպիսկոպոսաց ժողովն առ Պարսիկներն. «եթէ սովին հաւատովք թողուս, ոչ յերկրի այլ տէր փոխանակեմք ընդ քեզ, և ոչ յերկինս այլ Աստուած փոխանակեմք ընդ Յիսուսի Քրիստոսի». միմիայն Պարսից իշխանութեան տակ էին հաւատում ապահովութիւն գտնել. այսչափ էին խրատուել նոքա անցեալ պատմութիւնից: Այս չհասկացաւ Յազկերտ և փորձեց:

Ընդհարումն անխուսափելի էր և Հայոց միակ աղաչանքն էր Աստուածանից որ իրագործուած տեսնեն իւրեանց բաղձանքն, որ էր. «յորում սկսաք, ի նմին և կատարեսցուք քաջութեամբ. և ոչ վատութեամբ» (Եղ. 150): Յուսահատութիւն չկար, վասն զի գիտէին «զի ոչ եթէ ընդ մարդոյ է ուխտ հաւատոց մերոց, եթէ պատրիցիմք իբրև զտղայս, այլ անլուծութեամբ ընդ Աստուծոյ, ուրում չիք հնար քակել և ի բաց. ելանել» (68): Վասնորոյ և նոցա նշանաբանն էր. «ոչ պատրիմք իբրև զտղայս, և ոչ մոլորիմք իբրև զանտեղեակս, և ոչ խաբիմք իբրև զտգէտս, այլ պատրաստ եմք ամենայն փորձութեանց» (150): Գիտէին Հայոց եկեղեցու յաւիտենականութեան դիմաց իւրեանց անցաւորութիւնը. գիտէին թէ ինչպիսի հաւատարմութեամբ էր որ նախնիք փառք ժառանգեցին, ըստ որում և խոստովանում էին՝ «չիմք ինչ լաւ մեք քան զառաջինսն, որ յայսր վկայութեան վերայ եդին զինչս և զստացուածս և զմարմինս իւրեանց» (67): Եւ ի հաստատութիւն իւրեանց այս յաւիտենական սկզբանց՝ դիմագրաւեցին՝ փառաւորապէս զոհաբերելով իւրեանց անձն Աւարայրի դաշտում: Ընկան զինաւոր զինուորաց շարքի մէջ գիտնական վարդապետք պատերազմի դաշտում և իւրեանց զինակից հոգեհրաշ Եղիշէի գրչի տակ քանդակեցին այն գաղափարը, որոնց հա-

մար քաջապէս մեռան և յաղթապանծ սլացան Նախնեաց ս. գոգը։

Մազդէզն ընկճուեցաւ Հայաստանեայց եկեղեցու վեհութեան առաջ, թէպէտ և «անարին» և «անաստուածն» Մարկիանոս, որպէս ասում է Եղիշէ, Հայոց անկումն էր նիւթում։ Անցաւոր թշնամիք կարէին այն կարճամտաց և ինքնադրուժ ժամարդյծներին լքութիւն պատճառել և ի կորուստ մատնել, սակայն Հայաստանեայց եկեղեցու վեհութիւնն և Հայ ազգի փառքն յաւիտենականութեան վրայ է հիմնադրուած և նոցա պահակք են ազնիւ և աստուածային հոգիք։ Դարեր շարունակ պիտի փշրուէին զարդարուն խեցեր, Հայաստանեայց եկեղեցու անշուք ժայռերին ընդհարուելով, և այդ ընդհարումն պիտի նորա որդոց խելամուտ անէր օտարի խարդաւանաց և խաբէութեանց։ Ներսէս-Սահակեան դպրոցն ուսոյց Հայաստանեայց եկեղեցու գաւթում հայկեան որդոց և պարզեց նոցա այն ցաւերն, զորոնք կրեցին Բիւզանդի մախանքներից և ահա Վահան Մամիկոնեան գրաւ իւր յոյսն իւր սրի վրայ, յաւ ճանաչելով «զթուլութիւնն և զխաբէութիւնն Յունաց» «թէ որպէս Նախնեաց մերոց ու խոտեցին երդմամբ և ստեցին» (Փարպ. կԶ. 362). վսեմորդ ընկաւ Վարդան արեան դաշտում և բարձրացաւ յաղթաբար՝ ճապաղեաց շեղջակոյտի վրայ՝ նորա զուգակիցն Վահան իւր սակաւաձեռն քաջերով։ Այդ երեսնամեայ պատերազմի շրջանը կնքեց հրաշախօսն Յովհան Մանդակունի (469—479 տեղակալ, 479+487) իւր ոսկեդրոշմ խօսքերով առ իւր հօտն. «եկեղեցւոյ սիրելիք, առաքելոցն որդիք, Քրիստոսի արեան գինք, մի՛ ծառայեցուցանէք զոգիս ձեր երկիւղի մարդկան. տուք զկայսերն՝ կայսեր, և զԱստուծոյն՝ Աստուծոյ։ Յեկեղեցիս օրհնեցէք զԱստուած և զտէր յաղթերացն Իսրայէլի։ Ահա սիրեցէք զեկեղեցիս, և սիրեցայք յեկեղեցւոյ. զԹագաւորս՝ քաղցրացոյց եկեղեցի, դգազանս

ընտելացելոյց, զգայլս՝ զառինս արար, զքեզ պայծառացոյց, զԹշնամիս ճշմարտութեան ամաչեցոյց» (Փար. 551)։

Հայաստանեայց եկեղեցին հանդիստ շունչ մի առաւ և սկսաւ իւր պայծառութեան աշխատիլ։ Արդէն երբ ս. Սահակի մահից զկնի Բ. Թարգմանիչք դարձան, որք նկատեցին ինքեանց, բայց չվհատուեցան հալածանաց մէջ. ողբացին այո. «Ո՜վ այսուհետև զմերս յարգեսցէ զուսումն, ո՜վ ուրախասցի ընդ առաջադիմութիւն աշակերտիս, ո՜վ զհայրականն բարբառեսցի զուարթութիւն, մատամբ յաղթահարեալ յորդւոցս». սակայն առայժմեայ էր այս ողբն և պարտաւորացումն գործունէութեան, առ որ և քաջալերւում էին խրախոյս ձայնն ի ներքուստ լսելով. «բայց գոհութիւն զարդարողին զնոսա, Աստուծոյ Հոգւոյն. զի Թէպէտ և մարմնով հրաժարեցին ի մէնջ, այլ իմաստութեամբ Հոգւոյն առ մեզ են։ Թէպէտ և քաջ սերմանողքն ննջեցին, այլ սերմանեալն ի նոցանէ ինքնին բերէ զպտուղն ըստ բանին Տեառն մերոյ Յիսուսի։ Թէպէտ և ի տեսութեանց մերոց անջատեցան, այլ անտրոհ աղօթիւքն առ մեզ են» (Խոր. III, ԿԸ. և Կարինեանի ուղղագր.)։ Նոցա նմանիլ, նոցա շաւղով ընթանալն էր իւրեանց երախտագիտութիւնն և սփոփանքն։ Գրչով խորտակեց սուրբ ամօլ իւր ահեղագոյն Թշնամոյն և ահա սոքա ևս գրչով պիտի գլորէին Թշնամու դիտումները՝ դէպի մահուան խորխորատը վարելով։ Եւ ահա ժամանակի հերձուածք ու հերետիկոսութիւնք հրապարակական աղբիւսի վրայ նետուեցան Մամբրէի, Մովսէսի, Դաւիթ Անյաղթի, Եղիշէի, Եզնիկի և այլոց երկաթէ Թիակներով. ճշմարտութեան ուսուցումն—այս էր Ե. դարու իմաստուն վարդապետաց ջանքն ու ձիգը. ժողովրդին ճանաչեցնել Հայաստանեայց եկեղեցու վարդապետութեան էութիւնը հակընդդէմ ամենայն մոլորութեան, այս էր նոցա սրբազան խնդիրը, վասն զի Հայն անպատճառ պիտի սիրէ

իւր ազգն ու եկեղեցին, եթէ ճանաչէ նոցա ճշմարտապէս։ Աւանիկ քաջագրիչն Եզնիկ արշաւում է մինչև թշնամու միրան՝ եղծելով խաւարուչին աղանդները։ Ահա և Գիւտ (459 — 479) «լուսաւորապէս ուսուցանէր բովանդակ ժողովրդոց. որոյ բանք իւր՝ նման յորդառատ անձրևի զամենայն լսօղի ծաղկեցուցեալ պտղաբերէր զոգիս» (Փարպ. ԿԲ.)։ Աւասիկ և Անյաղթն Դաւիթ փառաբանում է խաչն ու խաչեցեալն ըստ հրամանին այդ վեհախորհուրդ հայրապետին «զի բարձցի հերետիկոսաց հերձուածն, և խլեսցի յագարակաց փուշք, և որոմն սատանայական սերմանց, որ ի մարդ յուսան և ոչ յԱստուած»։ Ահա և մտաթևն Եղիշէ, վերաբանելով Քրիստոսի մարդեղութիւնը պատմական ճակատի մէջ, տապալում է հակառակորդաց երկաբանութիւնը, շեշտելով. «յարութիւն էր մարդոյ և Աստուծոյ. մարդոյ ըստ բնութեան, Աստուծոյ ըստ տնտեսութեան. և երկոցունց միացելոյ՝ ոչ են այնուհետև երկու թուին, այլ միական գոյականին»*. (Ճառք. 306)։ Աստ գեղազրոյցն Մամբրէ անձրևում է իւր շանթերը հակառակորդաց վրայ և ոգևորուած իւր վարդապետութեան ճշմարտութեամբ, գոչում է առ Նեստոր և առ նորա աշակերտն քաղկեդոնական. «ամենչեան Թէոդորիտոն. մի՛ ամբառնար զաչսդ յերկինս, Նեստորիոս, քանզի կոյր աչօք էք ի միաբանութենէ ս. երրորդութեանն. վասն կորստեան ձերոյ միաբանեցէք պատմել զամօթալից վարդապետութիւն։ Ոմն, ասեն, կարդայ՝ և ոմն լսէ. ոմն աղաչէ՝ և ոմն աղաչի. ոմն խանդաղատի, և զոմն ի խանդաղատանս ածէ...» (Ճառք. 50.)։ Բայց մեր Հրաշաքանը դնում է և իւր գաւազանիքն արևմտեան բոլոր խաւարութեանց վրայ, վերաձայնելով. «ընդ անքաւելի մեղօք անկեալ այնուքիկ են՝ որք յանբաժանելի բնութիւն բաժինս արկանեն. երբեք ունել ոչ են ձեռնհաս տանել խաւարութիւն, ինքեանք յանձինս իւրեանց խաւսեալ տագ-

նայլին, ի մարդկանէ հայհոյին. և յԱստուծոյ դատապարտին և ջնջին ի դպրութենէ կենաց» (51. 71.)։ Անդ ազգային և աստուածային գործունէութեան մէջ լեզուի և գրչի աշխատանքից դադար չառնելով հանդերձ, պայքարատենչն Մովսէս Խորենացի՝ արածով չէ շատանում և ասպարիզի կարօտով ողբում է. «այժմ մարտք ի ներքուստ և արհաւիրք արտաքուստ. արհաւիրք ի հեթանոսաց և մարտք ի հերձուածողաց, և խորհրդականն չէ ի միջի՝ որ խրատէր և յարդարէր ի պատերազմ։»

Բայց հերիք. չերկարաբանենք. սակայն յիշելով պիտի յիշել Թարգմանչաց գլուխ գործոցն, որպէս համայնական աշխատութիւն՝ այն բազմավաստակ գրուածքն, որ դարեր շարունակ Հայոց վարդապետաց ջատագովական սեղանի զարդն է կազմել. գրութիւն մի, որի մէջ ջանքով ժողովուած են քրիստոնէական եկեղեցեաց առաքելական հայրերի խօսքերն ի հաստատութիւն Հայաստանեայց եկեղեցու հաւատոյ առանձնական խնդիրների—«վկայութիւնք վասն ուղղափառ Հաւատոյ» կամ պարզապէս «գիրք վկայութեանց»[1], որից յարաժամ օգտուել են Հայոց եկեղեցականք կռուաբանական յաղթական հանդիսում։

Եւ ի՞նչ սկզբունքով էին առաջնորդւում այս մեծաջան գործոց նուիրեալ անմահ Թարգմանիչք և նոցա փառակից ժառանգները։ Ինքեանք իսկ թող պատասխանեն։ Եթէ մի կողմից հիմնաքար է եղել քրիստոնէական ազատամտութեան մի գաղափար՝ «զի՞նչ պէտք են խընդրել և բանակռիւ լինել. հաւատալն է օգտակար և պաշտելն և երկրպագել լռութեամբ.» միւս կողմից զգացել են բարոյական կենսագին պարտիք մի՝ ճշմարտութեան ամրութեան աշխատիլ, որպէս ասում էին առ հակառա-

1 Մատենադարան ՝ս. Էջմիածնի № 1945. երկաթագիր-մագաղաթ։ Օրինակք առ J. B. C. Pitra, Anal. Sacra. P. IV.

կորդ.ք՝ «եթէ զցանկ հալոցն ոչ էիք պատառեալ և բաժանեալ զմի Տէրն՝ և զՔրիստոս և զԱստուած ի զանազանութիւնս՝ ոչ աշխատութեամբ ընդդէմ ամրութիւն ցանկոյ և փականս պիտոյ էր դնել. զի և վասն ախտից գիւղ.ք» (Աստղ. III, ԻԳ.)։ Այդ անմատչելի փականքներով և տոչորիչ տեղերով հարուստ էր Հայաստանեայց եկեղեցին և պատրաստ՝ հիմն ի վեր տապալելու Թշնամու հոգեկորուստ մոլորութիւնք և ախտերը։

Հայոց այս քաջարի գործունէութիւնն օրէցօր զօրանում էր, քանի աճում էր Թշնամու խարդաւանանքը։ Ե. դարու Բ. կիսում Հայաստանը լիապէս պաշարուած էր հերձուածողներով. մէկ՝ Եդեսիայումն էր նեստորականութիւնն եռում Նեստորի մոլի աշակերտ Իբասի († 457) ուսուցմամբ, որ Քաղկ. ժողովում արդարացաւ և վերստին իւր վիճակն ստացաւ իբրև ջերմ քաղկեդոնական. մէկ՝ բազմիցս յիշուած՝ հռչակաւոր Թէոդորէտն էր, հաստատուեալ ի Կիւրոս Եփրատի վրայ, իւր եռանդուն դպրոցով խռովութեան կրակը վառ պահում († 457). մէկ՝ Մծբինի կատաղի եպիսկոպոսն Բարսումա (435+489) արիւնռուշտ մաքառմամբ հնձում էր Պարսից տէրութեան, մանաւանդ ասորի քրիստոնէից, և նոյն իսկ Հայաստանի հեռաւոր անկիւններին սպառնում։ Եւ ի՞նչ էր դոյա գործունէութիւնը։ Ապականել ամբողջ արևելքն և, որպէս գրում է ականատեսն Յակոբ Սրճեցին շուրջ 515 († 521), 45 տարի շարունակ նիւթում էին այդ մախողք, Թարգմանելով երկրաբանութեան հիմնադիր Դիոդորի († 394) գրուածները խաղաղ ժողովրդի մէջ խառնակութիւն ձգելու համար։ Դիոդոր, Թէոդորոս Մոպսուէստացի († 428) և Նեստոր յարաժամ նիւթ էին տալիս Թէ Բարսումայի նեստորապաշտ դպրոցին և Թէ Թէոդորէտի և Իբասի քաղկեդոնական ճեմարանին, Անտիոքայ անընդհատ հոսանքի տակ աճելով։ Ձնայելով որ

Հայ իշխանաց սայրասուր թրերը պաշտպան էին թէ Մազդեզանից և թէ դոցա յարձակմանց դէմ, այնու հանդերձ այլ էր ժամանակն և պահանջը մեծ։ Ժողովուրդը տոկում էր օտար վարդապետութեան դիմաց և կասկածանօք էր նայում նոյն իսկ առ այն վարդապետք, որոնք արևմուտքում էին ուսել։ Բիւզանդ տարուբերում էր. մերթ ընկնում էր Քաղկեդոն և մերթ բարձրանում, մերթ նզովւում էր ի հռչակս աշխարհի և մերթ օրհնաբանւում արևմուտքի անկեանց մէջ։ Աղեքսանդրիան-Կապադովկիան հռչակաւոր դպրոցն, որի հաւատարիմ պահակներ էին Կոպտերն, Հայք և Ասորիք, սարսեցնում էր կայսրներին։ Հալածուեցան Կոպտերը, հալածուեցան Ասորիք, Հայք ապահով էին քաղաքականապէս և շուտով իւրեանց կազդուրիչ ձայնը լսեցրին հալածուող եղբարց։

Երբ մոգերը վռնդուեցան և Յովհան Մանդակունու օրհնութիւնն իջաւ Հայոց վրայ, պատերազմի համար ապրող և արեան նախճիրի վրայ, զինուորաց շարքում կաքաւող այդ ս. հայրապետին հետևեցաւ քաջաբազուկն Բաբկէն (487+492), որ իսկոյն արծուի աչքերով դիտեց Հայաստանի շուրջն և վճռեց ճշմարտութեան ձայնն «ի վերայ լերինն բարձու հռչակել, լսողներին խրախուսել և խուլերին լսեցնել։ 488-ին գումարեց Վաղարշապատի ս. ժողովն Աղուանից Շուփհաղեշէ և Վրաց Գաբրիէլ կաթուղիկոսաց աջակցութեամբ, եղծեց ու զեղծեց քաղկեդոնականաց վարդապետութիւնը, խստիւ հրամայեց բոլոր ժողովրդին ոչ մի հաղորդակցութիւն չունենալ նոցա հետ՝ ոչ բարեկամութիւն անել և ոչ աղօթել, «բայց միայն գնել ինչ և կամ գնոց տալ՝ որպէս ընդ հրէից։» Երեք երկիրների բազմաթիւ եպիսկոպոսք ստորագրութեամբ և՛ երդմամբ պարտաւորուեցան հաստատ մնալ յաւիտեան այդ ուխտին, ըստ որում այդ ուխտագրութիւնը պահւում էր Հայոց Վեհարանում ի յիշատակ այդ ստորագր-

ծութեան (Ուխ. 80. 86. 136. Մովս. Կաղանկ. II, Խէ.)։ Ըստ երևոյթին սոսա որոշեցին «որ խաչեցարն» աւելացնել սրբասացութեան ի հաստատութիւն իւրեանց հաւատոց [1]։

Հարկաւ այս մեծ գործ էր և անհրաժեշտ եթէ ժամանակի իրերի վիճակն ու հետևող պատմութիւնն ի նկատ առնենք։ Աստուածային ճշմարտութիւն է, որ կրօնական իրերում անհնար է անխստապահանջ կամ զիջող լինել. աստուածային են հաւատալիք ու եկեղեցական անօրինութիւնք, աստուածային-անանցական պիտի լինին, վասնորոյ և աստուածային արթնութեամբ պիտի պահպանուին և յարգուին, ապա թէ ոչ կկորցնեն իւրեանց էութիւնն և կարևորութիւնն։ Այդ է պատճառն, որ Հայք ոչ մի զոհաբերութիւնից չեն խուսափել, եթէ բանը հաւատալեաց և եկեղեցուն է վերաբերել, որոնց գրկում կրթուել՝ սնուել՝ պաշտպանուել են։ Նոքա հաւատն խստութեամբ են վարուել ոչ միայն ամենամեծ, այլ նոյն իսկ արտաքուստ աննշան երևցող խնդիրներում, զի եկեղեցական հարցերում մեծ և փոքրի, ծանր ու թեթևի խտրութիւն չէ եղել և չկարէ լինել։ Սակայն Վաղարշապատի ս. ժողովը հիմնական մի խնդրի հետ գործ ունէր, որ կազմում է քրիստոնէութեան ուղեղն ու ծուծն, առանց որի ճշմարտութեան քրիստոնեան դադարում է քրիստոնեայ լինելուց և որի առաքելական անփոփոխ դաւանութեամբ մարդս փրկուել կարէ։ Ճշմարիտ է, Հայաստանեայց եկեղեցին ժառանգական ազատամտութեամբ քարոզող է իւր սկզբունքի՝ թէ ամենայն ազգ կարէ փրկուիլ, որպէս ուզում է, սակայն բնաւ խոյս չէ տուել վատաբար իւր պարտաւորութիւնից՝ իւր հաւատարիմ որդւոց քարոզելու՝ որ Հայն փրկուելու է ս. Գրիգորի, ս. Ռստակէսի,

---

[1] Տես. Վարք ս. Սաքայի. Գլ. 32 (առ Կոտնկերիոսի)։

ս. Վրթանէսի, ս. Յուսիկի, ս. Ներսէսի. ս. Սահակի և նոցա անմահ ժառանգների հետ, նոցա հաւատալիքն իսկ լաւարի ինքնագիտակցութեամբ դաւանելով. այս է եղել Հայոց 1600 ամեայ սրբագործուած սկզբունքն, որ պիտի պատմութեամբ մեզ ներկայնայ։

Դահ մի պարզենք այդ խնդիրը։ Արդէն տեսել ենք որ Հայոց Հակառակորդք քարոզել էին սկսել ի Քրիստոս երկու բնութիւն ի մի անձն, երկու կամք և երկու ներգործութիւն։ Մէկ է անձնաւորութիւնն, այսինք մէկ է Յիսուս Քրիստոս՝ միջնորդն Աստուծոյ և մարդկան, սասայն երկու են նորա կամքերն, մէկն աստուածային բնութեան և միւսն մարդկային բնութեան, երկու են նաև ներգործութիւնք, մէկ աստուածային բնութիւնից և միւսն մարդկայինից. ըստ որում Հրաշք է գործում Քրիստոսի աստուածային բնութիւնն ու կամքն, իսկ քաղցում է, ծարաւում է, թքւում, անարգւում է նորա մարդկային բնութիւնը. կենդանի է մնում և յառնում նորա աստուածային բնութիւնն, իսկ չարչարւում է, խաչւում է, մեռնում է, թաղւում է նորա մարդկային բնութիւնը։ Ուրեմն գործողք տարբեր են և երկու են, միայն թէ աստուածային բնութիւնն, որպէս հզօրագոյնն՝ իշխում է մարդկայինին, որպէս տկարագոյնին վրայ։ Եւ քանի որ մէկ անձն է Քրիստոս, մէկ Քրիստոս Յիսուս է, այդ պատճառով ասւում է թէ Քրիստոս Հրաշք գործեց, Քրիստոս Աստուած է, Քրիստոս մարդ է, Քրիստոս մեռաւ, Քրիստոս չարչարուեցաւ եւայլն, ըստ որում ոչ թէ Քրիստոս Աստուածն է չարչարւում, խաչւում, թաղւում, մեռնում, այլ Քրիստոս մարդը. նաև ոչ թէ Քրիստոս մարդն է Հրաշք գործում, բժշկում, յառնում, այլ Քրիստոս Աստուածը, միայն թէ այդ աստուածութիւնն և մարդկութիւնն կապակցեալ մէկ անձնաւորութիւն են կազմում։ Ընդ սմին երկու բնութիւնք մնում են Քրիստոսի

անձի մէջ անշփոթ և անբաժան։ Այսպէս են դաւանում Հայոց Հակառակորդք։

Այժմ հետևաբանենք տեսնենք, ի՞նչ է դուրս գալիս։

1. Եթէ իւրաքանչիւր բնութիւն կամեցող ներգործող է ըստ ինքեան, ուրեմն անձնաւորութիւն է, զի անանձնաւոր բնութիւնը չէ կարող գործել. ուստի և երկու անձն կայ ի Քրիստոս. որ չարաչար նեստորականութիւն է։

2. Բանն Աստուած՝ այսինքն աստուածութեան մի անձնաւորութիւնը՝ մարդացաւ, անփոփոխ մնալով։ Եթէ Քրիստոսի մարդկային բնութիւնն անձնաւորութիւն չէ, ուրեմն Քրիստոս անկատար մարդկութիւն ունի։ Որ և հին հերետիկոսութիւն է։

3. Եթէ մարդկային բնութիւնն անձնաւորութիւն է, պարզ է որ կամ պիտի սուզուէր աստուածութեան մէջ, որ եւտիքականութիւն է. կամ պիտի յարակցուէր նորա հետ մէկ երրորդ անձնաւորութեան մէջ, ուրեմն Քրիստոս երեք անձնաւորութիւն ունի, որ կլինի պսակաւոր նեստորականութիւն։

4. Եթէ Քրիստոսի անձնաւորութիւնն աստուածային է, որպէս այժմ ասում են, որ 2-դ կէտի լրացուցիչ հետևութիւնն է, ուրեմն մարդկութիւնը սուզուել է նորա մէջ և սոսկ աստուածութիւնը չարչարուել է խաչի վերայ. այս ևս պսակաւոր եւտիքականութիւն է։

5. Հուսկ հապա, աստուածային բնութիւնն ոչ մի փոփոխութեան չէ ենթարկել զմարդկայինն, այլ զայն ծառայեցնում է ինքեան, որպէս զմեքենայ։ Այսպիսով Քրիստոսի անձն ոչ թէ միութիւն իմն է, այլ երկու տարորոշ բնութեանց կապակցութիւն։ Բանն Աստուած չէ իւրացնում մարդկային բնութիւնն և իւր զգայարանը դարձնում, այլ իւրաքանչիւր բնութիւն մնում է յինքեան, պահելով իւր գոյակերպութիւնը։ Աստուածութիւնն յինքն չէ ձգել զմարդկութիւնն և մարդկութիւնը

չէ վերամբարձել աստուածային բարձրութեան, այլ երկուքն ևս պարզապէս մնացել են Քրիստոսի անձնաւորութեան մէջ, այսինքն՝ աստուածային և մարդկային բնութիւնք կապակցուել են միջնորդով՝ Քրիստոս անհատի մէջ։ Այս այսպէս լինելով և վերևի հետևութիւնք ճըշմարտելով, ձգում է այդպէս հաւատացողին զանազան տատանումների մէջ և լքեցնում։ Եթէ Քրիստոս երկու բնութիւն ունի, և չարչարուողն, խաչուողը, մեռնողը նորա մարդկային բնութիւնն է, իսկ հրաշագործողը, փառաւորուողը, յառնողը նորա աստուածային բնութիւնն է, ո՞ւր է մնում այլ ևս Քրիստոսի մեծագործութիւնն. ո՞ւր է մնում նորա աստուածային գթութիւնն առ մարդիկ։ Չիջաւ Աստուած և չխոնարհուեցաւ, ուրեմն չբարձրացրեց մեզ. չմարդացաւ Աստուած և մեզանից մինը չեղաւ, ուրեմն չաստուածացրեց մեզ. չմիացաւ Աստուած մարդուն հետ էապէս և երկինք չտարաւ նորան, ուրեմն չփրկեց մեզ։ Եթէ նա չմարդացաւ և որպէս ճշմարիտ և միագոյ աստուածամարդ չարչարանք և մահ յանձն չառաւ, այլ ևս ի՞նչ մեծ բան է, եթէ մարդ մի չարչարուեցաւ և զոհուեցաւ իւր գաղափարի համար, որպէս Պօղոս, Յովհաննէս, Բարդուղիմէոս ևայլն. մի՞թէ սոսկական մարդու մահը կարէ ազատել իւր նմանեաց. եթէ այդպէս է, ուրեմն ամենայն նահատակ պիտի պաշտուի, որպէս փըրկիչ և ամենայն մարդ կարէ Փրկիչ-Քրիստոս դառնալ։ Իսկ եթէ մարդկային ինքնագոյ բնութիւն մի ծառայել է աստուածային տնօրինութեան իբրև մեքենայ՝ Յիսուս անհատի մէջ, ուրեմն աննպատակ էր և խաղ բանին Աստուծոյ աշխարհադղորդ մարդանալը, վասնորոյ և մարդադաւան են, ոյք Յիսուսի մէջ մարդկային ինքնագոյ բնութիւն մի երկրպագում են։

Բայց տակաւին այլ է վարդապետում Հայաստանեայց ս. եկեղեցին ի սկզբանէ մինչև ցայսօր։ Նա ուսու-

ցանում է «անճառ միութիւն ի Քրիստոս», այսինքն ըստ ամենայնի միութիւն՝ մի բնութիւն, մի կամք, մի ներգործութիւն, մի անձն, մի դէմք։ Թէ Հայոց Հաւատամքն և թէ Հայոց եկեղեցու ս. Հայրերն, այն է մինչև Ե. դարու վերջն, որպէս տեսանք ևս, այդ են քարոզում. նոցա են յենւում Հաւատարմութեամբ և յետագայ դարերի Հայոց Հայրապետներն, որպէս պիտի տեսնենք։

Բայց յառաջաբերենք քանի մի վկայութիւնք ի լրումն վերնոց։ Հայաստանեայց եկեղեցու առաքելական Հայրն ս. Գրիգոր Լուսաւորիչ ասում է. «Զի որ ի մարմինն Հաւատացին՝ ծանօյց նոցա զաստուածութիւնն իւր. և որք ի մարմնոյն գթեցին, ուրացան զբնութիւն նորա։ Քանզի միացաւ ի մարմնի բնութեամբ, և խառնեաց զմարմինն ընդ իւր աստուածութիւնն» (Ագաթ. ԼԷ. տես. և ԼԹ. Խ. ԿԱ. ՀԶ. ՀԵ.)։

«Այլ և ինքն իսկ Տէրն փառաց որ ամենայն զօրութեանց և զօրաց արարիչ է և պարգևիչ, յորժամ կամեցաւ ցուցանել զաներևոյթ սէր իւր առ ազգս մարդկան, որ չարչարելին էր և վշտառին, որ աշխատելին էր. և նովին Հոգւով միաւորեալ առ Աստուած բանին՝ մտաւորն և բանաւորն, խառնեալ ի մարմին ըստ աւետարանական Բանին, զի «Բանն մարմին եղև և բնակեաց ի մեզ...» «Զգեցաւ զնոյն մարմին և զՀոգի, և խառնեաց ընդ աստուածութիւն իւր յաղագս անբաւ սիրոյն իւրոյ, և զամենայն կիրս մարդկայինս կրեաց բաց ի մեղաց» (Յաճախ. էջ. 147. 190. տես. և 148. 16.)։

Ս. Գ. Լուսաւորչի աւանդներին յար և նման երգւում է Հայաստանեայց եկեղեցում, Մովս. Խոր. շարականի մէջ. «Ծնար ի կուսէ անճառ միութիւն, անբաժանելի և միշտ գոլով ոչ մեկնեցար ի Հայրական ծոցոյ» (Կան. Ծն. Քսի. ա. աւուր.)։

Առօրեայ խոստովանութեան մէջ ևս ամենայն Հայ

կրկնում է. «Եղև Աստուածն կատարեալ՝ մարդ կատարեալ. հոգւով և մտօք և մարմնով. մի անձն, մի դէմ և միաւորեալ մի բնութիւն» (Ժամագիրք.)։

449 թուի Արտաշատի եպիսկոպոսական ս. ժողովը գրում է. «Եւ որ արար զաշխարհս, նոյն եկն և ծնաւ ի ս. կուսէն...։ Էր Աստուած ճշմարտիւ, և եղև մարդ ճշմարտիւ. ոչ ի լինելն մարդ՝ կորոյս զաստուածութիւնն, և ոչ ի կալ մնալ Աստուած՝ աղաւաղեաց զմարդկութիւնն. այլ նոյն և մի։ Այլ քանզի ոչ կարէաք տեսանել զանտեսանելին և մերձենալ յանմերձենալին, եկն եմուտ ընդ մերով մարդկութեամբս, զի և մեք մտցուք ընդ նորա աստուածութեամբն։ Ոչ անարգանս ինչ համարեցաւ զգենուլ զիւր ստեղծուած մարմինս, այլ մեծարեաց իբրև զաստուածաստեղծ զիւր գործ։ Ոչ առ սակաւ սակաւ շնորհեաց ինչ սմա զանմահութեան պատիւն, իբրև զանմարմին հրեշտակաց, այլ միանգամայն զբոլոր բնութիւնն մարմնով՝ շնչով և հոգւով զգեցաւ, և միաբանեաց ընդ աստուածութեանն. միութիւն, և ոչ երկուութիւն. և այսուհետև մի գիտեմք զաստուածութիւնն. որ յառաջ էր քան զաշխարհս, նոյն և այսօր» (Եղիշէ. 64—65)։

Պէտքից աւելի եղան այս հիմնական պիտառութիւնք. ամփոփենք հայաստանեայց եկեղեցու վարդապետութիւնը Քրիստոսի բնութեան վրայ։ Բանն Աստուած իջնելով կոյսի արգանդը, թանձրացաւ, մարմնացաւ, մարդացաւ և ծնաւ աստուածամարդ, այսինքն՝ Աստուած կատարեալ, նոյն ինքն՝ մարդ կատարեալ, ըստ որում և խոստովանում ենք ի Քրիստոս, մի աստուածմարդկային բնութիւն, մի աստուածմարդկային ազատ կամք։ Աստուածմարդկային բնութիւն է այն, որ յերկուց է, յորում կայ որ ինչ աստուածային է, կայ որ ինչ մարդկային է. դոցա ոչ մէկի վրայ իրապէս չկարէ առանձինն խօսք լի-

նել, այլ խօսւում է այդ միաւորութեան վրայ։ Ընդ նմին բանն Աստուած մարդանալով, չայլայլուեցաւ, այլ «զոր էրն՝ ոչ ի բաց թողլով, եղև՝ զոր ոչն էր։» Բանն Աստուած իջնելով ի մարդկութիւն, չփակուեցաւ, զի նա անբովանդակելի է. չանարգուեցաւ, այլ «մնալով ի բարձրութեան, գտաւ նոյն ինքն ի խոնարհութեան։» Բայց քանի որ Քրիստոս ներկայանում է իւր գործունէութեամբ երբեմն որպէս կատարեալ մարդ և երբեմն որպէս կատարեալ Աստուած, ուստի նա կատարեալ մարդ է և միանգամայն կատարեալ Աստուած։ Զորօր. հրացեալ երկաթը սոսկ հուր չէ, այլ երկաթ է, ըստ որում և լոկ երկաթ չէ. հուրն և երկաթն ոչ որոշւում են իրարից և ոչ շփոթւում են իրար հետ. ոչ հուր է իւր յատկութիւնն երկաթին տալիս, ինքն զրկուելով, և ոչ երկաթն է իւր յատկութիւնը հրին տալիս, ինքն սպառուելով, այլ երկուքն էլ մնում են միասին միաւորուած հրերկաթի մէջ։ Հուրը կերպաւորում է զերկաթը և երկաթը տեսակաւորում է զհուրն։ Գործն ևս ոչ սոսկ մէկինն է, այլ միաւորութեանն, որ և ծեծուողն է՝ և ոչ թէ հուրն, որ անշօշափելի է. միայն թէ հուրը մաքրում է զտում երկաթը ժանգից և ազնուացնում։

Նմանապէս և Քրիստոս. նորա աստուածմարդկային բնութիւնն է գործող. նա եթէ ուզում է, զգալապէս յառաջ է քաշում իւր մարդկութիւնն, իսկ եթէ ոչ, յետ է քաշում զայն իւր աստուածութեան տեղի տալիս, մինչ գործն պատկանում է ոչ Բանին պարզապէս և ոչ մարդկային բնութեան սոսկապէս, այլ միաւորութեան։ Նոյն այդ աստուածամարդը քաղցեցաւ, ծարաւեցաւ, հրաշագործեց, բուժեց, չարչարուեցաւ, խաչուեցաւ, մեռաւ, յարեաւ։ Խաչուեցաւ, մեռաւ որպէս մարդ, զի այդ մարդուն է յատուկ, ըստ որում Աստուած անչարչարելի է. իսկ հրաշագործեց, յարեաւ իւր կամքով, որպէս Աստուած,

զի այդ Աստուծոյ է միայն կարելի։ Մեռաւ որպէս մարդ իւր հոգին փչելով, սակայն նա կենդանի էր, որպէս Աստուած։ Ինքն անչարչարելի էր, բայց գթութեամբ բազմաչարչարելի եղաւ։

Եւ ինչո՞ւ այսպէս։ Չի նա եկաւ մեզ փրկելու համար. մարդն մեղսագործ էր. Ադամայ անհնազանդութիւնը բաժանել էր մարդուն Աստուածանից և դժոխքի որդի դարձրել. եկաւ բանն Աստուած, իջաւ յանարգութիւն, բանից մոլորեալ մարդուն, գրկեց, ողջագուրեց, միացաւ նորա հետ և Աստուած մնալով՝ մարդ եղաւ, ապականացու մարմինն անապականացրեց և որպէս մարդ ապրելով, ապրեցաւ որպէս Աստուած, ազատ մեղքերից և «ակամայ և անգոսնելի» կրքերից։ Տուաւ զինքն մարդու փրկութեան համար, ըստ որում կրեց ամենայն չարչարանք, որի սկիզբն էր իւր մարդանալը. խաչուեցաւ և մեռաւ մեզ համար և յառնելով որպէս աստուածամարդ՝ բարձրացաւ իւր վեհութեան, յորում միշտ էր, որպէս Աստուած։ Իսկ այսպէս միանալով մարդուն հետ, եղաւ ճշմարիտ միջնորդ, որով վերստին միացանք Աստուծոյ հետ։ Ինքն Աստուծոյ որդի էր ծննդեամբ, մենք Աստուծոյ որդիք դարձանք՝ որդեգրութեամբ։ Ինքն իջաւ յանարգութիւն մարդկային բնութեան հետ միանալով, մենք ևս բարձրացանք նորա շնորհեալ համարձակութեամբ առ աստուածութիւնն ճախրելով։ Ինքն էապէս անչարչարելի, սակայն ի սէր իւր որդոց իբրև մարդ չարչարուեցաւ, մնալով անչարչարելի։ Ինքն չարչարուելու պէտք չունէր, բայց կրեց մեր չարչարանքն մեր թուլութեամբ և կամքով, ըստ որում և իրաւապէս փրկեց մեզ՝ ըստ մեզ՝ մեր դատապարտութեան մշտական չարչարանքից։ Ինքն իջաւ յերկիր և մենք տարուեցանք յերկինս։ Ինքն անմահ է և մեռաւ, մենք մեռեալ էինք և անմահացանք։ Ինքն Աստուած է և մարդացաւ, մենք մարդ էինք՝ աստ-

ուածացանք։ Ընդ սմին աստուածային գթութիւնն ան-չափ է. մենք այս անցաւոր երկրում, սակայն ջրով ի Հոգին սուրբ սրբուելով, Քրիստոսի շաւղով ընթանալով, շնորհօքն նորա, իւր մարմնոյ և արեան հաղորդուելով, նորա ճշմարիտ համայնքում ապրելով, որին պարգեւել է ս. Հոգու ներկայութիւնը, մեր պատկերն անարգող մեղ-քերից զղջալով և հեռանալով, քրիստոսաբար մեր եղ-բարց հետ վարուելով, ենք և կլինենք երկնքում, որպէս աստուածամարդն Քրիստոս Աստուած երկնքումն է։



## Ը.

*«Մտերիմ և քաջասիրտ հաւատով զանարժան իրս հալածել և արժանաւոր օգտիւք զշահսն ժողովել, ուստի անուն քաջութեան և պարծանաց յերկրի թողուլ:»*

ԳՐ. ԼՈՒՍԱՒՈՐԻՉ.

---

Լաւ ըմբռնելով Հայաստանեայց եկեղեցու այդ խնդրի մեծութիւն, կզգանք նորա հուչակաւոր նահատակների մեծափառութիւնն, որով անմահացան հայրապետք, անբաժան իւրեանց եպիսկոպոսներից, վարդապետներից, իշխաններից և ամենայն ժողովրդականներից։ Այդ ուխտ էր համօրէն, ուխտ էր ազգային, բայց և համաշխարհային, զի ոչք իւրեանց հետ չէին, հակառակ էին, ոչք հակառակ չէին, իւրեանց հետ էին լինելու։ Երեք ազգերի այս մեծագործութեան ձայնը հասաւ Ասորոց, որոնք Բարսումայի անօրէնութիւնների դիմաց սատար և սփոփանք հայցեցին Քրիստափոր Ա-ից (515—?), յիշեցնելով առաքելական խօսքը՝ «դուք որ կարող էք, զտկարութիւն տըկարացն բարձէք», ըստ որում և Հայոց կաթուղիկոսն, որին պատմիչը փիլիսոփայ է կոչում, թղթեր գրեց և քաջալերեց (Թովմ. Արծ. II, բ. Միք. Մեծ. 313.), բայց Ներսէս Բ. Աշտարակեցու (545—556) օրով Ասորիք կրկին օգնութիւն հայցեցին Հայոց աթոռից։ Թէ ինչպիսի ջերմեռանդութեամբ էին վերաբերւում առ այդ առաքելական ս. աթոռն, երևում է թղթերի հասցէից, որ է

այս. «լաւաց, ճշմարտից և աստուածասիրաց հովուաց արդարոց և հարանց հոգևորաց, որ էք լոյս աշխարհի և սիւնք հաւատոյ. քարոզիչք արդարութեան և աշակերտք առաքելոց, ընկերք սրբոց և բարեկամք արդարոց, սիրելիք Քրիստոսի և պահապանք խաչին նորա, Տէր Ներսէս...» Նոքա բազմաթիւ ստորագրութիւններով նկարագրեցին ուղղափառութեան համար իւրեանց կրած նեղութիւնք, ապաւինելով Հայոց «յետ Աստուծոյ»: Ուղարկեցին և Սարեբայ վանքի երէց Աբդիշոյին, եպիսկոպոսական ձեռնադրութիւն խնդրելով: Ներսէս Բ. հրաւիրեց 551-ի Դւնայ մեծ ժողովն՝ Մովսէս Խորենացու հռչակաւոր աշակերտ Պետրոս Սիւնեաց միտրապօլտի, Մամիկոնեանց Աբրահամ եպիսկոպոսի յաջորդ Ներշապուհի և նորընծայ «Ասորոց ուղղափառաց եպիսկոպոսի» հետ, բազմաթիւ եպիսկոպոսաց և իշխանաց միաձայնութեամբ ջրեց ու մրեց թշնամեաց վարդապետութիւնք. Նզովեցին Քաղկեդոնն և երկու բնութիւն ասողներին և հաստատեցին «մի բնութիւն բանին մարմնացելոյ.» ընդ նմին և եպիսկոպոսաց և իշխանաց «տանուտէրաց և ազատաց և համօրէն ժողովրդականաց» ստորագրութեամբ ուխտեցին՝ ամենայն ոյժով ընդդիմադրել երկաբնակներին, մաքառել նոցա դէմ և այլն: Եւ որպէս զի բնաւ հռոմներին չկարօտին, վերացրին նաև նոցա թուականութիւնն և կարգեցին Հայոց եկեղեցական թուականը: «Հաստատեցին» և «որ խաչեցարն» որպէս կատարեալ ամփոփումն փրկագործութեան և կրկնութիւն Հայոց հաւատամքին: Ապա Հայոց այդ մեծ հովիւն գրեց և քաջալերեց Ասորոց՝ չվհատիլ ս. գործում, ընդ նմին անվեհեր մաքառման ոգի ներշնչեց իւր եկեղեցու հաւատարիմներին սիրտը[1]:

[1] Ջարբ. Պատ. հայ. տպ. 1886. 398. Նախն. Թարգ. 272. յոյն պատմիչ մի ժամանակակից Combefis, hist. monoth. Paris 1648, 272. Աս. II, Բ. Օրբել. ԻԱ. ԿԸ. Վարդան Ղ. տես. և Ցուցիկք. Բ. 311:

Մինչդեռ քաղկեդոնականք մտած խառնակում էին երկրի մթին անկիւնները, մանաւանդ Սիւնեաց, Վրաց և Աղուանից կողմը, Յովհաննէս կաթողիկոսը (+572—73) Թղթով հրամայեց Սիւնեաց Վրթանէս եպիսկոպոսին և Միհր Արտաշիր իշխանին նզովել և մերժել հերձուածողաց և բնաւ հաղորդ չլինել նոցա, զի նոքա են «պղտորիչք եկեղեցւոյն Քրիստոսի յայժմու ժամանակիս յամենայն տեղիս»։ Սակայն և պատուիրեց, որ ով դառնայ և զՆեստոր, զԹէոդորիտոս և զՔաղկեդոն դրութեամբ նզովէ «ամենայն կամօք իւրովք» ընդունել ապաշխարութեամբ, զի «դուռն ողորմութեան Աստուծոյ խոստովանողաց և ապաշխարողաց հանապազ բաց է» (Կաղանկ. III, ԻԳ. Օրբ. ԻԲ. Կիր. 113. Յոյն պատմ.)։ Սոյն այս զգուշութեան աղագաւ գրեց մէկ նամակ ևս Աղուանից Աբաս կաթուղիկոսին, յորդորեց արթուն հսկել հերձուածողներից անմիտս լինելու համար, ընդ նմին պատուիրեց յղել 3 եպիսկոպոս առ ինքն յուսանիլ ուղղափառ վարդապետութեան, «զի մի՛ ոք կորիցէ ի հովուաց կամ ի հօտից։» Աբաս ժողովեց իւր վիճակի եպիսկոպոսք և «յոյժ քննութիւն առնելով», «հալածեաց ի սահմանէն Աղուանից զվարդապետս կրօնին այնմիկ՝ զԹովմաս և զԵղիայն և զԲնոտն և զԻբաս և զայլս ընդ նոսին զնմանողս նոցին ապար տարաբնակ ի հեռաւոր վայրս» (Կաղանկ. II, Է.)։

Մինչդեռ Հայք զբաղուած էին եկեղեցական ներքին գործոց, հա՛ փրթաւ Պարսից կատաղութիւնը Հայոց վրայ, զի Խոսրով Անուշրուան տեսնելով որ Բիւզանդ քրիստոնեայ լինս գոլով հալածում էր միւս քրիստոնեայ ազգաց, խելքի բերուեցաւ մոգերի ջանքով և սկսաւ բրիչ դնել Հայոց եկեղեցու շօշափելի պարիսպների տակ։ Ելաւ հրաման և մոգերը դիմեցին ի Դուին կրակատուն շինելու. Հայք զայրացան, տեսնելով որ իւրեանց մարմնաւոր հնազանդութիւնն ի չարն էր գործադրւում և ահա ձայն

բարձրացրին. «քրիստոնեայ.ք եմք մեք և ծառայ.ք արքայից արքայի, այլ յիրս հաւատոյ մարդոյ ումեք լսել ոչ կարեմք»... և երբ Պարսիկները բռնութեամբ դիմեցին, ժողովուեցան քանի մի հազար քաջեր Վարդան բդեշխի առաջնորդութեամբ և 571-ին ջարդեցին Պարսից, սպանեցին Սուրէն մարզպանին և խոյս տալով դէպի արևմուտք, Բիւզանդի օգնութիւնը խնդրեցին: Նոյն միջոցին մահը յափշտակեց Յովհաննէս կաթուղիկոսին և Դւնայ արեան նախճիրի վրայ աթոռ բարձրացաւ Մովսէս անվեհեր հայրապետը: Պարսիկները դեռ քանի մի տարի կռուի ճակատներ յարդարեցին հայա-յունական զօրաց դէմ և հուսկ ապա Խոսրով կենաց վերջում նկատեց Հայոց հաստատամտութիւնն և ցնցուելով քրիստոնեայ մկրտուեցաւ (?). Նա ազատութիւն տուաւ Հայոց, ասելով իւր հօր Կաւատի նման, «իւրաքանչիւր ոք զիւր հաւատս կալցի, և զՀայս 'նեղել ոք մի' իշխեսցէ, ամենեքին մեր ծառայ.ք են, մարմնով մեզ ծառայեսցեն. վասն հոգւոցն, որ զհոգին դատէ՝ նա գիտէ» (Սեբ. Ա. Բ. Յով. Եփես. II, 19. 20... Յովհ. կԹ. ժԶ. Ասող. II, Բ. և այլ.ք):

Մովսէս կարգի բերաւ Հայ-տումարը Տարօնի Աթանաս եպիսկոպոսի ջանքով (Յովհ. Մամ. 8. Յով. կԹ. ժԶ): Նա երկար չաշխատեցաւ եկեղեցու բարեզարդութեան, զի նոր հալածանք մի էր սպասում նորան: Իբերի վիճակը շուտով փոխուեցաւ քաղաքական հանգամանաց ներքոյ, որից կախուած է ազգերի բախտն, ըստ դէպքից օգտուելու իմաստութեան: Երբ Պարսից Որմիզդն 579-ին սպանուեցաւ, նորա անչափահաս յաջորդն Խոսրով Ապրուէզ օգնութիւն հայցեց իւր թշնամի Մօրիկ կայսրից, ընդդէմ իւր ապստամբ Վահրամ զօրավարին: Վահրամ խորհուրդ տուաւ Հայոց միանալ իւր հետ և զգուշացրեց նոցա՝ որ երկու հարևան ազգերի բարեկամութիւնը կլինի Հայոց համար անբախտութիւն: Սակայն չհաւատացին,

Թէև Յունաց և Պարսից բարեկամութիւնը Դ. դարում ևս մեծ թշուառութիւն բերաւ Արշակունեաց գլխին։ Մօրիկ օգնեց. հայա-յունական զօրքը միացաւ Պարսից հետ և Մուշեղ Մամիկոնեանի մասնակցութեամբ ջարդեց Վահրամին։ Խոսրով ապահովուեցաւ։ Հայաստանի մեծ մասը մնաց Մօրիկի ձեռքը։ Տփխիս, Կառնի, Ազատ գետ, Մասիս, Առեստն աւան, Վան ծով, Ընծաքիսար, Մծբին, սահման դարձան։ Ապա Մօրիկ ձեռք տուաւ Խոսրովին և առաջարկեց իւր մասի Հայոց դէպի արևելք տանելու, իսկ ինքն իւր մասինը — Թրակիա, որպէս զի Հայաստանը «մէջ տեղից» բարձուի։ Ինքն ևս սկսաւ այդպէս պանդըխտեցնել Հայոց. կողոպտելով գիւղերն, ստիպում էր Կիպրոս գաղթել (Սեբ. Զ. Յովհ. Եփես. VI, 15. 34). խաչ ու խաչուառով հանդիպող Հայոց «լըբութեամբ ընկենուին զխաչսն ի գետին, և մերկացուցանէին զեկեղեցականսն և զաշխարհականսն սպանանէին և գերէին, և պհաւատաւոր կուսանսն խայտառակէին. և զգինդս կանանցն ականջօքն կորզէին, և ի չկարելն հանել զապարանջանսն՝ զձեռսն կտրէին և կորզէին, և այլ բազում չարիս գործէին. և առեալ աւար՝ դարձան ուրախութեամբ որպէս ի մեծ յաղթութենէ» (Միք. մեծ. 274), այսինքն ճիշտ այնպէս էին վարւում Հայոց հետ, որպէս Ասորոց և Կոպտերի, որոնց չարչարանաց նկարագրութիւնք մարդու փշաքաղեցնում են։ Կայսրների աշխատանքն է եղել հպատակ ազգերին դաւանակից պահել դիւրաւ ի մի ձուլելու համար, և երբ օրըստօրէ վէհ և անդունդ բացուեցաւ նոցա և Յունաց մէջ, դիմեցին զէնքի ոյժի։ Իսկ Հայք քանի որ Պարսից իշխանութեան ներքոյ էին, խաղաղ էին և ապահով, անցաւ Մօրիկի իշխանութեան տակ թէ չէ, ինքն ըստ ինքեան ընկան Ասորոց և Կոպտերի բախտի մէջ։ Բիւզանդ, որ առաջ ուխտելով օգնութիւն խոստանալով Հայոց, փաստաբար յետ էր քաշւում և նոցա

Պարսից սրի տակ թողնում, այժմ սկսաւ բացերես բռնաբարձ անել իշխանական ցեղեր և Հայաստանն անհայաբնակ անել։ Մօրիկ ձեռք մեկնեց և Հայոց եկեղեցու դէմ, երբ մարմնաւոր հաւատարմութեամբ առ կայսրն հռչակուած իշխան Մուշեղ Մամիկոնեան՝ հաւատոյ գործում հաւատարիմ մնաց միայն իւր եկեղեցուն և խորշեց կայսեր հետ հաղորդուելու, յիշեցրեց նորան ընդ նմին, արքայապէս «Ճշմարտութիւնը Հայոց վարդապետաց մօտ որոնելու։» Մօրիկ իսկոյն կոչեց Մովսէս կաթուղիկոսին, հարկաւ ոչ թէ ճշմարտութիւնն ուսանելու, այլ բռնահարելով իւր կամքի ոյժը Մուշեղին ցոյց տալու։ Սակայն վեհախորհուրդ հայրապետը պատասխանում է. «քաւ լիցի ինձ ընդ գետն Ազատ անցանել, կամ զթխեալն ի փռան ուտել, կամ ի ջերմոյ արբենալ» (Ցոյն պատմ.)։ Զայրացաւ Մօրիկ, հրաման հանեց Քաղկ. ժողովն Հայոց եկեղեցիներում քարոզել, երկպառակեցրեց իւր բաժնի Հայ եկեղեցականաց և նոցա անջատելու և թուլացնելու համար, Դւնայ դիմաց Աւան գիւղում մէկ հակաթոռ կաթուղիկոս դրաւ, Յովհան եպիսկոպոսին[1], «որ այր ճշմարիտ և արդար էր և առաքինի ի վարս, և բնաւ ոչինչ շեղեալ զկնի քաղկեդոնականաց աղանդից, սակայն հակաթոռ գոլով՝ յերկուս հատուածս ճեղքեալ լինէր միատարր միութիւն հայրապետական աթոռոյն» (Յովհ. կաթող. ԺԷ)։ Այս շատ վնասեց Հայոց. սկսուեցան վէճեր դաւհերիցութեան վրայ, որից անշուշտ հետեւեցաւ և Վրաց անջատուիլը Հայաստանեայց եկեղեցու դաւանակցութիւնից և դաշնակցութիւնից։

---

[1] Սեբ. Թ. Ցոյն պատմ. Կաղանկ. II, ԽՋ. ԽՐ. Ուխտն. ԼԲ. ԼԷ. ևայլն։

## Թ.

*«Մեք՝ որպէս ընկալաքն երկրպագութեամբ պատուել զս. երրորդութիւնն, առանց թերահաւատութեան ունիմք և կալցուք մինչև յաւիտեան, խորշելով ՚ յամենայն եղբօրէ, որ յայսմ ստահակ իցէ:»*

ԱԲՐԱՀԱՄ ԿԱԹՈՒՂԻԿՈՍ.

---

Վրաց բաժանումը Հայոց եկեղեցուց խմորուեցաւ սակաւ առ սակաւ, սակայն նրբութեամբ։ Բիւզանդացիք գործում էին շարունակ Հայաստանեայց եկեղեցու դէմ, մէկ կողմից հալածելով, միւս կողմից ներքին կռիւներ յարուցանելով։ Եկեղեցականաց այս ու այն կողմ քաշքշուելը սովորական էր, զի բռնութեամբ մոլորեցնելն ու ազատամտութեամբ ապաշխարողին ընդունելը հակադրութիւնք էին Հայոց և Հոռոմոց եկեղեցիներում։ Այսպիսի վիճակում դժուարին պիտի լինէր սրտով դարձողն ու ծպտեալ կեղծաւորն որոշել իրարից, և այդ էր որ յաճախ անելանելի էր անում իրերի դրութիւնը։ Այսպիսի մի հանգամանքի հետևանք էր և Հայոց և Վրաց յարաբերութեան կծուիլը (Ուխ. II.)։ Ոմն Կիւրոն, ձուլուած քաղկեդոնական գաղափարներով, կրթուած Բիւզանդական

դպրոցում, գալով Մովսէս կաթողիկոսի մօտ, դիմակաւորուեցաւ և ընդունուեցաւ Հայոց եկեղեցու գիրկը։ Հապա խնդիր բարձրացաւ Վրաց կաթողիկոսութեան. սովորաբար Վրաց եկեղեցին, որպէս մէկ ճիւղ և եղբայր Հայաստանեայց եկեղեցու, իւր ընտրեալ կաթողիկոսը հաստատել էր տալիս Հայոց աթոռին։ Հայք իւրեանց բնածին ազատամտութեամբ բնաւ չէին ձգտում բռնանալ Վրաց վրայ, այլ ընդհակառակն միջոց էին տալիս նոցա ինքնուրոյնութեան զարգանալուն։ Երկու այդ երկրների դրացիութիւնը, ժողովրդի ազգակցութիւնը, մշտական շահակցութիւնը, պատերազմական աջակցութեան կարևորութիւնն և բարեկամական խնամութիւնն միացած էին պահում այդ երկու ազգերին։ Այդ խառն ժամանակ իշխանաց մէջ դժգոհութիւն մտաւ կաթողիկոս ընտրելու միջոցին և ահա դիմեցին առ Մովսէս կաթողիկոսը, կարգադրութիւն խնդրելով։ Այս տեսնելով Կիւրոն, աղաչանքով ձեռնադրուեցաւ Վրաց կաթողիկոս, մանաւանդ որ որպէս ծննդեամբ վրացի յարմարագոյն էր։ Երկար չտևեց և Վրաց իշխանք խաբուելով Բիւզանդի կեղծ ու պատիր խոստումներից և գրգռուելով Հայաստանեայց աթոռի գահերիցութեան դէմ Կիւրոնի մասնահայութեամբ, սկսան խորշել Հայերից և ինքնագլխութեան ձգտել, ինքնագլխութեան, որ երբէք չէր կապտուել։ Կիւրոն կռուան գտնելով իշխանաց ինքնասիրութիւնը, հակուեցաւ առ Բիւզանդ և քաղկեդոնականք պաշտօններ ստացան Վրաստանում։ Մովսէս կաթողիկոս իսկոյն զգուշացրեց նորան մէկ խրատական նամակով և որովհետև այդ ժամանակ Պարսից ազդեցութիւնը հզօր էր, Կիւրոն թէրևս նաև ակնածելով ծերունի կաթողիկոսից, ամոքեց նորա կասկածանքը մէկ խոնարհ թղթով։ Սակայն կարճ ժամանակից յետոյ իրերի վիճակը փոխուեցաւ։ Ծերունի կաթողիկոսը մեռաւ 602 (?). Բիւզանդացոց ազդեցութիւնը

զօրացաւ արևելքում, օրըստօրէ զարգանալով 593-ից զկնի, և երբ Կիւրոն հաստատապէս բանակցութիւն սկսաւ Բիւզանդի հետ, սկսաւ կամաց կամաց հալածել Ցուրտաւայ հայալեզու համայնքը. Այնտեղից փախաւ Մովսէս եպիսկոպոսն և դիմեց Վրթանէս Քերթողին, որ ըստ Հայաստանեայց եկեղեցու ս. կարգին տեղապահութիւն վարել էր Հայրապետի կենդանութեան միջոցին և յայնժամ ևս շարունակում էր հաւատարմութեամբ գործերն իւրեանց ընթացքի մէջ պահելու, և Սմբատ Բագրատունուն եղելութիւնը յայտարարելով։ Նա գրգռեց Սմբատին զէնք առնելու և Վրաց պատժելու, սակայն Սմբատ չարար այդ, թէև չմերժեց վերջնականապէս. Թէ Սմբատ և թէ Վրրթանէս քանիցս թղթեր գրեցին առ Կիւրոն և յորդորեցին չպառակտել դարաւոր բարեկամութիւնը, չհալածել Ցուրտաւայ եկեղեցին, որ երկու ազգերի համար սիրոյ միջավայր մի էր, այլ մնալ հին հաւատքով միացած ի բարօրութիւն ընդհանուր շահերի. ընդ նմին Վրթանէս հիմնում էր իւր խրատները հանգուցեալ Հայրապետի թղթի վրայ։

Այդ բանակցութիւնն երկար տևեց և վճռական ելք չունեցաւ, զի Կիւրոն երկդիմի քաղաքականութիւն էր բանեցնում՝ մերթ Բիւզանդիոյ կողմը բռնելով և մերթ Պարսից։ Վրթանէս տեղապահի մի թուղթը զայրացրեց Կիւրոնին, որ և յանդուգն պատասխանով երևեցաւ առանց դիմակի. սակայն Վրթանէս իրաւունք չհամարեց գործին ելք տալ նոր կարգադրութիւն անել կամ ժողով գումարել. ուստի և սպասեց կաթուղիկոսի ընտրութեան, որ հակաթոռութեան պատճառով ուշանում էր։ Սմբատ տեսնելով եկեղեցու անմխիթար վիճակը, զոր լաւացնելու հնար չկար Մօրիկի և Պարսից Խոսրով Ապրուէզի բարեկամութեան պատճառով, սպասեց և ի զուր չսպասեց։ Երբ Պարսիկները Մօրիկի մահից զկնի (602)

ոտքի ելնելով, օրըստօրէ զօրացան, Սմբատ ժողովեց 607 թուին Պարսից բաժնի եպիսկոպոսներն ի Դուին, կրկին և կրկին բանադրեց Քաղկեդոնականութիւնն և մէկ ստորագրութիւն առաւ նոցանից ի նշան այդ որոշման հաստատութեան. Ինքն Սմբատ հաւատարիմ իշխանն ևս տուաւ նոցա մէկ ձեռնարկ իւր աջակցութեան։ Սմբատ այդ ստորագրութեամբ հակիրճ դրոշմեց Հայաստանեայց եկեղեցու այն հիմնական սկզբունքն, որով Հայ աշխարհականք և եկեղեցականք ձեռք ձեռքի տուած են ընթացել. նա գրեց պարծանքով. «Նզովեմք զնզովեալն ի ձէնջ, որպէս և երանելի Հարքն մեր նզովեցին զնզովեալս ի ձերոց հարցն։ Եւ օրհնեմք զօրհնեալն ի ձէնջ՝ որպէս և Հարքն մեր օրհնեցին զօրհնեալն ի ձերոց Հարցն երանելեաց և վարդապետացն աշխարհիս։ Եւ յայս ուղղափառ հաւատոյս վերայ հաստատուն և անշարժ կացցուք ի կեալ և ի մեռանիլ ընդ ձեզ (Ուխ. II, ԼԲ. ԼԳ.)։ Այս քաղցրաբարբառ ուխտադրութիւնից յետոյ ընտրուեցաւ Աբրահամ եպիսկոպոսն ի կաթուղիկոսութիւն (տես և Սեբ. ԺԷ.)։

Աբրահամ Ա. Սմբատի խորհրդով և Ցուրտաւայ եպիսկոպոսի յորդորանօք, Կոմիտաս եպիսկոպոսի պատգամաւորութեամբ (Յովհ. Մամիկ. էջ. 8) քանի մի թղթթակցութիւն ևս ունեցաւ Կիւրոնի հետ, սակայն անհետևանք, զի ըստ երևոյթին Վրաց իշխանք ևս հակուել էին Բիւզանդի կողմը։ Բայց Բիւզանդի բռնութեան դորութիւնն ևս շուտով կոտրուեցաւ ի Հայաստան. Խոսրով Ապրուէզ զայրացած զէնք բարձրացրեց Մօրիկի մահուան վրէժն առնելու. կարճ միջոցում Բիւզանդեան գաւառք անցան Պարսից ձեռքը. Յովհան հակաթոռն ևս գերուեցաւ շուրջ 611-ին և ի գերութեան մեռաւ։ Աբրահամ իսկոյն տարածեց իւր համատարած աթոռի թևը դէպի Հայաստանի անկիւնք։ Աղուանեան եպիսկոպոսք ժո-

ղովուեցան ի Դուին և խնդրեցին «խառնել զինքեանս ի միաբանութիւն եկեղեցւոյ Ճշմարիտ հօտին Քրիստոսի», յանձն առին ամենայն ապաշխարութիւն հայրենի սրբարանի գիրկն ընդունուելու համար։ Տուին հաւատարմութեան ստորագրութիւն մի, նզովելով Քաղկեդոնն և Տումարն և այլ հերձուածք և ընդունուեցան եկեղեցու հարազատ հօտի մէջ (Ուխ. 63—65. Ցոյն պատմ.)։

Խոսրով մեծամեծ նուաճումներից յետ գերութեամբ և աւարով դարձաւ. յայնժամ եկան առ նա Կոմիտաս Մամիկոնէից և Մատթէոս Ամատունեաց եպիսկոպոսք հայոց վիճակի վրայ յայտարարելու։ Խոսրով լսելով կրօնական վէճերը, Թերևս Սմբատի խորհրդով մէկ ժողով գումարեց իւր հպատակ քրիստոնէից և Երուսաղէմի գերեալ Զաքարիա հայրապետի և այլ իմաստնոց մասնակցութեամբ, իսկ նախագահութիւնը Սմբատին յանձնելով, սկսաւ քննել քրիստոնէից դաւանանքը։ Դուրս վռնդելով Հրէից և Ասորի բուն Նեստորականաց և քրիստոնէից հարկերը բաշխելով, նա ցուցեց իւր արդարասիրութիւնն Քրիստոսի նկատմամբ։

Խոսրով հրամայեց Զաքարիա հայրապետին և ուղեկից իմաստնոց Ճշմարիտ հաւատքը խոստովանելու, որոնք և Հայոց հաւատոյ Ճշմարտութեան վկայեցին, ասելով որ Քաղկեդոնը հակառակ է Բիւզանդիոյ երեք ժողովոց։ Դոցա վկայութիւնը համաձայն գտնուեցաւ նաև Կաւատ և Խոսրով արքաների քննութեանց արձանագրութեան, որ կնքուած մնում էր արքունիքում։ Հեթանոս արքան ևս իւր կարճ մտքով բացատրեց երկու բնութեան վարդապետութեան տրամաբանական անտեղութիւնը. «յայտ է եթէ և զմեզ պարտ է յերկուս բաժանել, երկուս ասել Թագաւորութիւն և ոչ մի. զի եթէ զբնութիւն ոք քննէ՝ և ես յերկուց բնութեանց եմ՝ թէպէտ ի հօրէ և ի մօրէ, թէպէտ ի հոգւոյ և ի մարմնոյ։» Այս

քննութիւնից յետ հրամայեց իւր քրիստոնեայ հպատակաց Հայոց հաւատքը դաւանելու, իսկ այդ հաւատալիքը գրել ու կնքել տալով, արքունիքում պահեստի տուաւ[1]։ Սակայն դեռ իւր հրամանն իրագործել չտուած, ուղղեց իւր զօրքերը Հերակլէսի դէմ, որ արդէն մտել էր Պարսից նուաճած երկրները։ Պատերազմի ելքն անորոշ էր և առկախեալ ազգերը սպասում էին—իւրաքանչիւրը փափաքելով անշուշտ իւր բաղձալի յաղթանակին։

Իսկ Աբրահամ նկատելով Բիւզանդի զօրանալը, հրատարակեց շուրջ 614-ին ի զգուշութիւն իւր հօտին այն հռչակաւոր շրջաբերականը, զոր ժողովով պատրաստած ունէր և սպասում էր քաղաքական վիճակին։ Նա ցոյց տուաւ Քաղկեդոնի շեղումը Բիւզանդի միւս 3 ժողովներից, յառաջ բերաւ տումարից քանի մի կէտեր, բացատրեց և եղծեց և ապա վերստին կրկնելով այն նզովքն, զոր դրել էին իւր նախորդք, արգելեց որ և է մօտաւոր յարաբերութիւն քաղկեդոնականաց հետ, որ իրարանցումի միջոցին վտանգաւոր էր[2]։ Գրեց և Աղուանից յորդորելով առ հաւատոյ նախանձախնդրութիւն, որոնք մոլորւում էին արուեստախօս թշնամեաց բազմադիմի բանահնարներից։ Շփոթ էր տգէտ եկեղեցականաց վարդապետութիւնն, որպէս Կիւրոն ևս նոցա կարգում գրում էր թանձրամտաբար. «Մեք և զայս ունիմք հաւատ և զայդ օրինաց, և աստ հաղորդ եմք և անդր», ուստի և գեղեցկապէս շեշտում է Աբրահամ. «Եթէ որդիք այնց հարց եմք, որք ոչ անզանազան յառաքելոյն են, հաւատ զնոցին ուսուցանել՝ պինդ կալցուք. և մի՛ ջուր ընդ բուռն խառնելով՝ զնմանութիւն անխարդախ կաթինն արտացուք։» Նա կարեցաւ պինդ պահել Աղուանից և հզօր

---

[1] Սեբ. ԼԳ. Ասող: II, Բ. Միք. Մեծն էջ. 286. Ուխտ. 102։

[2] Ուխտանէս. էջ 132.—Մովս. Կաղանկ. II, ԽԷ, ԽԹ։

ձեռքով միացնել Հայոց ի մի փարախ. այդ արդէն նշան է, թէ քանի հզօր էր նորա բազուկը, քանի արի նորա ոգին, բայց քանի ծանր էր իւրերի վիճակն, որ նոյն այդ զօրաւոր ձեռքը չյաջողեց խանգարել Վրաց անմիտ ձըգտումներն, որոնք խրամատեցին այդ երկու ցեղակից ազգաց նախնեաց սրբագործուած հանճարեղ քաղաքականութիւն թէ՝ «պիտոյ է մի հոգի ի կամս և ի ղօդ ամենեցուն, որպէս և ոք յիւր մարմնի ուսցի ճշմարտապէս:» Ցարուեցան հոգւով առ զօրեղագոյն ազգն ի կորուստ իւրեանց... Վրաց պէս Հայոց դաւանակից մի այլ փոքրիկ ազգ ևս դլացի, Թ. դարում Փարսման ամն Կակաղէջի քահանայի նենգութեամբ բաժանուեցաւ Հայոց եկեղեցուց և անհետ կորստեան մատնուեցաւ, որի անունն է միայն մնում՝ Ծաղն կամ Ծոնդէացիք, այն ևս Հայոց պատմութեան մէջ և եթ (Ուխ. 25. Մխիթ. Այրիվ. 69):

Պատերազմաց այդ անորոշ միջոցին վախճանուեցաւ Աբրահամ Ա. նորան յաջորդեց իւր սիրելին, Կոմիտաս Մամիկոնէից, «որ, ըստ Ցոյն պատմ., Քաղկեդոնի ժողովն ատելով և նզովելով գերազանցեց իւր բոլոր նախորդաց:» Կոմիտաս ձեռք մեկնեց հեռաւոր տեղերն իսկ և նորա հռչակը ձգեց Երուսաղէմի հայրապետ Մոդեստոսին (629—33)՝ մխիթարութիւն հայցելու (Սեբ. ԻԵ. Ասող. 214): Ինքն ևս գրեց զանազան բացատրութիւնք Քաղկ. հաւատոյ դէմ, որոնք դեռ ևս գրչագրաց մէջ են. նորա գործունէութեան մասնակից էր Ցովհան Մայրավանեցի եռանդուն եպիսկոպոսը:

Երբ 628-ին Սեպտ. Կաւատ Բ. յաջորդեց Խոսրով Անպրուէզին, մարզպանութիւն տուաւ Սմբատ Բագրատունու որդի Վարազտիրոցին և Հայաստան ուղարկեց, որ թափուր գտաւ Հայոց հայրապետական աթոռն և ժողով գումարելով ընտրեց Քրիստափոր Բ.-ին (Սեբ. ԻԸ.

*Ցկ. ԺԷ.)։ Սա իւր հայրապետութեան Գ. տարին մասնակից համալրուեցաւ իշխանական աղմուկներին և գահընկէց եղաւ. ըստ որում ընտրեցին Եզրաս եպիսկոպոսին ի կաթուղիկոսութիւն, որ դեռ Կոմիտասի օրով ս. Գրիգոր եկեղեցու փակակալն էր և «էր այր խոնարհ և հեզ, որ ոչ կամէր զոք ցասուցանել, և ոչ ելանէր ի բերանոյ նորա բան տգեղ»* (Սեբ.)։



## Ժ.

> «Ոչ պարծիմք զմեզ սուրբս լինել, այլ սակայն ոչ անխտիր ի հաղորդութիւն դիմեմք. այլ ահացեալք՝ բազում երկիւղիւ մեկուսանամք:»
>
> ԵԶՐԱՍ ԿԱԹՈՒՂԻԿՈՍ.

---

Տեսանք որ Հայաստանեայց եկեղեցու եռանդուն հովուապետք արգելեցին որ և իսկ մօտիկ յարաբերութիւն քաղկեդոնականաց հետ, վճռելով՝ «որ ոք անխտիր հաղորդեսցի կամակից լինելով անհաւատութեան նոցա (քաղկեդոնականաց), նզովեսցի հոգւով և մարմնով, և ամենայն կենցաղով իւրով որոշեսցի յեկեղեցւոյն Աստուծոյ. և եղիցին խաւարաբնակ և յաւիտենից հրոյն կերակուր որ զհրամանս զայս արհամարհեսցեն» (Կաղանկ. III, ԽԷ)։ Այս նզովը կրկնուել է շարունակ քանի մի դար ժողովներով։ Ըստ այդմ ոչ մի հայ չպիտի հաղորդուէր քաղկեդոնականի հետ, լինէր դա հայոց թէ օտար եկեղեցում։ Բնական էր ուրեմն որ եթէ հայ մի հիւրասիրում էր քաղկեդոնականի մի, կամ նորանից հիւրասիրւում և եթէ նորա հետ հաղորդւում էր, նորա անունն ելնում էր իբրև քաղկեդոնական և ժողովուրդը հալածում էր նորան։ Այս այնքան խիստ էր որ Մօրիկի հետ բարեկամութիւն անող

Խոսրով Ապրուեզ հեթանոսին անգամ քաղկեդոնական էին անուանում (Ջեն.)։ Ուստի Հայոց առաջնակարգ անձինք վախենում էին Հոռոմաբնակ քաղաքները գնալ, երկիւղալով զրպարտուելուց։ Ջոր. Ցովհան պատմաբանը չուզեցաւ Կ. Պոլիս գնալ, այդ իսկ պատճառով, որպէս վկայում է ինքն՝ (Ծե.). «Թէպէտ և ստէպ ստէպ հրաւիրակն կոչէր սիրալիր կամօք երթալ ի պալատն առ կայսր, սակայն ես ոչ կամեցայ, զմտաւ ածեալ թէ՝ գուցէ գտցի ոք, և ընդ ակամբ հայեսցի զանդ երթալն իմ ի քաղկեդոնիտոն յարակցել ինձ համարեալ...» Այսպիսի նրբութեան էր հասել իրաց վիճակը, վասնորոյ շատերի անունն էր այդպէս ելնում, սակայն ուշիմ քննութիւն է պէտք պատմական իրողութիւնը տաչուտ զրոյցներից զատելու համար։

Արդ քննենք Եզրաս կաթուղիկոսի պատմութիւնը։ Ականատեսն Սեբէոս գրում է (ԻԹ.). «Եկն ապա զօրավարն Յունաց Մժէժ Գնունին ի Հայաստան երկրէն, և յինքն կալաւ զամենայն երկիրն ըստ սասցելումն սահմանին։ Ասէ ցկաթուղիկոսն ցԵզր՝ երթալ նմա յերկիր սահմանացն և հաղորդել օրինօք ընդ կայսեր. ապա թէ ոչ՝ արասցուք մեզ այլ կաթուղիկոս. և դու կալ զիշխանութիւնդ քո ի Պարսից կողմանէ։ Իսկ կաթուղիկոսն իբրև ոչ կարաց թողուլ զերկիր իշխանութեան իւրոյ՝ խնդրեաց ձեռնարկ հաւատոյ ի թագաւորէն։ Եւ վաղվաղակի առաքեցաւ նմա տումար գրեալ ձեռամբ թագաւորին, և նզովեալ զՆեստոր և զամենայն հերձուածողս։ Բայց ոչ էր նզովեալ զժողովն Քաղկեդոնի։ Եւ գնաց կաթուղիկոսն յերկիրն Ասորեստանի, ետես զթագաւորն և հաղորդեցաւ ընդ նմա օրինօք։ Եւ խնդրեալ ի թագաւորէն պարգև զաղն Կողբայ, և առեալ զպարգևն դարձաւ մեծաւ շքով ի տուն իւր։ Եւ ապա յայնահետէ նստէր ի մէջ բանակի Յունաց, մինչև զօրավարին հաճոյանալ

ըստ կամաց նորա։ Կարգէր զկարգս զինուորացն և բաշխումն շտեմարանաց ի վերայ ամենայն երկրին։»

Գրեթէ բառ առ բառ նոյնն է պատմում և Թ. դարու պատմիչն Յովհան կաթուղիկոս. նոյնն է պատմում և Ժ. դարու դիւանականն Ասողիկ, որ և վկայաբերելու հարկ չկայ, մանաւանդ որ ժամանակակիցներ չեն։ Բունը նոյնն է մնում մինչև անգամ յետին ժամանակի գրողաց, կոպիտ սխալներով արժանիքը կորցրած զրոյցը (գոր. Օրբ. Իէ.)։

Արդ ըստ բոլոր պատմութեան Եզրաս դատապարտւում է նորա համար որ Հերակլի հետ հաղորդուել է։ Եզրաս ոչ Քաղկեդոնի ժողովին ձայնակցել է, ոչ այլ դաւանանք է ընդունել և ոչ իւր հաւատքը փոփոխել։ Արդարև Եզրասին կարելի է փոքր ինչ արդարացնել, երբ ի նկատի ունենանք որ վախենում էր հակաթոռութիւնից, սակայն պէտք է խոստովանել որ նա իբրև կաթուղիկոս պարտաւոր էր ոչ մի սպառնանքից չվախենալ և նոյն իսկ ամենաթեթև խնդիրներում անսասան մնալ և ոչ թէ, հակառակ ժողովոց հրամանին, Հերակլի հետ հաղորդուիլ։ Բայց բոլոր պատմիչները վկայում են միաձայն, որ Եզր սկզբում չէ կամեցել հաղորդուել և ապա երբ ստիպուել է, Հերակլից դաւանանք է պահանջել. Հերակլ տուել է իւր գրաւոր դաւանանքն, յորում Քաղկեդոնի անունը չէ եղել և «ամենայն հերձուածողք» նզովուած է եղել։ Եզր կարդացել է այդ դաւանանքն և ապա հաղորդուել։ Քաջայայտ է ուրեմն, որ Եզր չարափառ ինչ չէ գտել թղթի մէջ, ըստ որում և Հերակլի դաւանանքն ուղղադաւան է երևացել նորան։ Իսկ եթէ Հերակլի դաւանանքն այնպէս է գրուած եղել, որ Եզր սխալ է հասկացել և Հերակլին ուղղադաւանի տեղ ընդունել, այն ժամանակ ևս Եզր հաւատարիմ է մնացել Հայաստանեայց եկեղեցու ս. ժողովներին, զի նա չէր կարող մարդու սիրտը

կարդալ։ Վասնորոյ Եզր արդարանում է ըստ ամենայնի պատմութեան վկայութեամբ։

Սակայն մենք չենք շատանալ այդ անտարակոյս դրութեամբ. յառաջ վարենք մեր քննութիւնը։ Մեր առաջ ծագում են քանի մի հարցեր իրողութիւնը լիովին պարզելու համար. 1) Հերակլի անձն. 2) Եղելութեան հանգամանքները. 3) Հերակլի թղթի որպիսութիւնը, և ապա թէ 4) Բուն իրողութիւնն և նորա հետևանքը։

Ճշտենք ուրեմն այդ կէտերը։ Հերակլ իւր գործունէութեան մէջ միացած էր Կ. Պօլսի Սերգիոս պատրիարքի հետ. վերջինս յակոբիկեան ծագումից էր և ջանում էր Քաղկեդոնի աղմուկները վերացնել։ Շուրջ 618-ին հակաքաղկեդոնական ոմն Գէորգից վկայութիւնք խնդրեց մի կամքի ապացուցութեան համար (Մանսի. XI, 744), և ապա ուղեկցեց Հերակլին դէպի արևելք։ 626-ին հանդիպեցաւ Հերակլ Փոքր Ասիոյ Լազերի՝ հակաքաղկեդոնական եպիսկոպոս Կիւրոս Փասիացուն և բարեկամացաւ, ըստ որում Սերգիոսի մի գրութիւնը գրաւեց նորան։ Նոյն Սերգիոս թուղթ գրեց առ Պօղոս ոմն Սևերիանոս և պնդեց մի կամք և մի ներգործութիւն, յենուելով Պօլսի եպ. Մեննասի և Հռովմայ Վիրգիլիոսի թղթոց և Թէոդոր Փառանի վրայ։ 629-ին Հերակլ Ասորոց Հերապօլսումն էր, որտեղ խօսակցեց նոցա պատրիարք Աթանասի հետ, որ Եգիպտոսի հակաքաղկեդոնական Անաստասի բարեկամն էր։ Հերակլ տուաւ իւր դաւանանքն Աթանասին և նշանակեց նորան պատրիարք Անտիոքայ, յուսալով այդպէս միացնել Ասորւոց Անտիոքայ հետ։

Այդ դաւանանքի դէմ գրեց Լիւստրայի Եւբուլոս եպիսկոպոսը։ Նոյնպէս Մաքսիմոս վանահայրը Հերակլի գաղտնի քարտուղարը թղթեր էր գրում ընդդէմ Հերակլին և ի պաշտպանութիւն քաղկեդոնականութեան։ 630-ին նշանակեց յիշեալ Կիւրոսին պատրիարք Աղեքսանդրիոյ

և պատուիրեց նորան այդ Թշնամի երկրի միութեան աշխատիլ։ Կիւրոս իբրև ջերմ Հակաքաղկեդոնական, սիրով ընդունուեցաւ և կարճ միջոցում խաղաղեցնելով ժողովուրդն, իւր հաշտարարութեան պայմանները յայտարարեց (633-ին) Սերգիոս պատրիարքին. ըստ որում ասում է, որ հիմնուելով կայսրի և պատրիարքի տուած դաւանագրութեան վրայ (Մանսի XI, 562), հաշտեցրել է կուսակցութիւնք և հաստատել նոցա ի մի դաւանութք։ Ապա յառաջ է բերում այդ դաւանանքը, զոր հակառակորդք ընդունել էին, որի մէջ յիշում են. «ով չէ խոստովանում յերկուց բնութեանց մէկ Քրիստոս, մէկ որդի, մէկ մարմնացեալ բնութիւն բանին Աստուծոյ, որպէս ս. Կիւրեղ ուսոյց, անփոփոխելի և անայլայլելի, որ մեր տէր Յիսուս Քրիստոսն է երրորդութիւնից մէկը. նզովեալ լինի»։ «Ով չէ նզովում զԱրիոս, զԵւնոմիոս, զՄակեդոն, զԱպօղինար, զՆեստոր, զԵւտիքէս և այլն և այն ամէնքին, որոնք ս. Կիւրեղ Աղեքսանդրացու 12 նզովքներին հակաճառում են և չեն ուղղուել. նզովեալ լինի»։ Արդ կայսրի և Սերգիոսի դաւանանքը բնաւ չէ յիշում Լեօի տումարը կամ Քաղկեդոնի ժողովն և թէպէտ դաւանագրութեան բոլոր մասերում բացարձակ մի բնութիւն չէ քարոզում, այնու հանդերձ բացարձակ մէկ կամք և մէկ ներգործութիւն է ուսուցանում, ջատագովում է մէկ բնութեան վարդապետութիւնն և մինչև անգամ նզովում է այն «ամէնքին որոնք ս. Կիւրեղ Աղեքսանդրացու 12 նզովքներին հակաճառում են և չեն ուղղուել»։ Հարկաւ այդ դաւանանքն ընդունեցին Եգիպտացիք, զի իւրեանց ուզածն ևս այդ էր, ըստ որում պարծանքով խրոխտում էին, ասելով. «ոչ թէ մենք Քաղկեդոնին, այլ Քաղկեդոնն է մեզ յարակցել, զի մէկ ներգործութեամբ մէկ բնութիւն է ի Քրիստոս խոստովանել» (Թէոփանէս. էջ 330)։

Նոյն իսկ Հռովմայ Հոնորիոսը մէկ կամքի ջատագով

դուրս եկաւ․ իսկ Սոփրոնիոս վանականը գալով Եգիպտոս, սկսաւ կռուել Կիւրոսի դէմ և Ապօղինարեան կոչել նորան․ ապա նշանակուելով Երուսաղէմի պատրիարք (633-ին), անդադրում ջատագով եղաւ երկու բնութեան ևայլն (Մանսի XI, 461—509)։ Իւր մաքառումը վարում էր Կիւրոսի դէմ, գործելով նաև ի Հռովմ Դօրայի Ստեփան եպիսկոպոսի միջոցով, բայց ոչինչ չյաջողեց։ Ակնյայտնի է, որ Հերակլի բոլոր գործակիցք հակաքաղկեդոնական էին․ նոյն իսկ Հռովմ դաւաճանել էր իւր նախորդ՝ Լէօ I-ին։ Քաղկեդոնի ժողովի անունն անգամ չէր յիշում Հերակլ, այլ միայն ս. Կիւրեղի 12 նզովքը․ մինչև անգամ բացարձակապէս մէկ կամք և մէկ ներգործութիւն էին քարոզում և ինքեանց ուղղուած էին հրապարակում։ Այլ և 638-ին գրեց Սերգիոս մի հրովարտակ («էկթեզիս») հրամայելով մէկ կամք դաւանել, որ և հրատարակեց Հերակլ նորա մահից զկնի։ Այդ ընդունուեցաւ Հռովմայ Սևերինոսից ևս (640.), բայց նորա յաջորդ Յովհան IV-ից նզովուեցաւ։ Քանի մի տարի յետոյ, որպէս պիտի տեսնենք, ժողովով նզովուեցան Սերգիոս, Կիւրոս, Պօղոս, Պետրոս, Թէոդոր Փառանի և Հռովմայ Հոնորիոս I պապը, միայն Հերակլէս ազատուեցաւ, զի մահուան անկողնում յայտնել էր որ իւր հրովարտակի գրողը Սերգիոսն է եղել և ոչ ինքն (Մանսի. XI, 9.)։ Նզովուեցաւ և Էկթեզիսը, վասն զի Սերգիոս երկու կամք անկարելի է համարում (Մանսի XI, 534), իսկ մէկ աստուածմարդկային կամք ուսուցանելով, հասկանալի է որ չկարէ երկու բնութեան վրայ խօսք լինել, մէկ բնութիւնից միայն կարէ մէկ կամք լինել։

Այս բացայայտ պատմութիւնից յետ այլ ևս հարկ չկայ Եզրի գործը կրկնել, բայց անենք և այդ։ Հերակլ իւր թշնամեաց սիրտը գրաւելով իւր արդարասիրութեամբ, եկաւ Սերգիոսի և այլ եպիսկոպոսաց հետ ի Կարին,

հրաւիրեց նաև Եզրին. վերջինս հրաժարուեցաւ գնալ և թղթով պատասխանեց Յովհան Մարդպետական (Մայրավանեցի՞) և Մաթուսաղայ Սիւնեաց եպիսկոպոսաց հետ (Օրբ. ԻԲ.)։ Թուղթը հարուստ է երևում և կասկածելի տեղիք չէ տալիս. բերում է ապացոյցներ Հայոց ուղղափառութեան նոյն իսկ Բիւզանդի հայրերից, Հերակլի հրաւիրական թուղթն ուղղադաւան է համարում, ասելով «քննութեամբ գտաք ըստ ամենայն հարցն ճշմարիտ և ուղիղ խոստովանութեամբ»։ Սակայն նկատում է որ Քաղկեդոնի ժողովը չպիտի յիշուէր, զի նորա առաջնորդք Թէոդորիտոս և Իբասն էին «զուգախտացողքն Նեստորի»։ Ցոյց է տալիս որ հնագոյն Հայրերը գործ են ածել «Աստուած խաչեցաւ» խօսքերը, նոյնպէս և առաքեալք։ Հերքում է Քաղկեդոնի դաւանանքն, որ որոշում բաժանումն է մուծանում Քրիստոսի մէջ. յիշում է որ Քաղկ. դաւանանքը հաստատուելով Լէօնի տումարի վրայ «որպէս ի վերայ խարխարեալ և շարժուն հիման զիւրն շինէ շինուած»։ Պնդում է որ Հայք երբէք չեն ուզեցել հաղորդուել քաղկեդոնականաց հետ և դատապարտում է անխտիր հաղորդութիւն և վերջացնում է. «զԵւտիքէս և զնմանիս նորա՝ զառաջին և զվերջին հերձուածողս, նզովեալ եմք և նզովեմք. բայց զժողովն որ զբաժանեալ բնութիւնսն պահէ, և ոչ տայ ասել՝ «Աստուած խաչեցաւ», որպէս և այլք բազումք ի Հոռոմոց, յորոց ոմանք և ի մերմէ կողմանէ թիւրեցան, ոչ կարեմք ընդունել. և ոչ ընդ այնոսիկ, որ փոքրկացուցանեն զմարմին և զարիւն Տեառն՝ հաղորդել, զի ոչ ունիմք այդպիսի սովորութիւն»։ Հերակլ ձեռք չվերցրեց. եկաւ Մժէժ Գնունին և ստիպեց Եզրին գնալու, սպառնալով հակաթոռ կաթողիկոս նշանակել։ Յովհան Մայրավանեցին չուզեցաւ ուղեկցել, ուստի Եզր վերցրեց իւր հետ Տարօնի Եպիփան եպիսկոպոսին, գուցէ և Թէոդորոս Քռթենաւորին և գնաց Կարին 633

թուխն։ Այդտեղ առաջարկեց Հերակլ իւր դաւանանքը Նիկոմի ձեւով, որտեղ Քաղկ. ժողովի մասին այլ եւ խօսք չկար. ուրեմն Հերակլ այդ էլ հանել էր իւր դաւանանքից։ Եզր քննեց և այժմ հարկաւ ուղղադաւան գտաւ զայն, զի Հերակլ մի առ մի նզովել էր բոլոր հերձուածները։ Հապա հիմք չունենալով Հերակլին արհամարհելու, հաղորդուեցաւ նորա հետ, խնդրելով ստացաւ Կողբի աղահանքը, ժողովրդին և Հայ զինուորաց դրութիւնը բարւոքեց և դարձաւ։ Մաթուսաղան նորա կողմն էր. նորան չդատապարտեց և Յովհան Մայրավանեցին, ասելով որ վախից է հաղորդուել (Յոյն պատմ.), բայց հաւանական է որ նա իւր ծայրայեղ հաւատարմութեան պատճառով հալածուեցաւ. նա Հայաստանեայց եկեղեցու անվեհեր զինուոր գոլով, և թերեւս արեւմտեայց խաբէութիւնք լաւ գիտենալով, չէր կարող հաւատալ թէ Հերակլ քաղկեդոնական չէր. անշուշտ այս վէճից պիտի ծագած լինի Թէոդորոս Քռթենաւորի ճառը Քրիստոսի մարդեղութեան վրայ, ուր նա Քրիստոսի բնութեան աստուածմարդկային լինելն է ապացուցում։ Բայց ստորեւ պիտի տեսնենք, որ այսպիսի կռուաբանական ճառից անկարելի է ճշտիւ որոշել թէ ի՞նչ էր Քռթենաւորի հակառակորդի ուսուցածը։ Ըստ ամենայնի պատմութիւնն ոչինչ չի տալիս Եզրի դէմ. նա չհալածուեցաւ ժողովրդից կամ եկեղեցականներից, այլ արդիւնաւէտ և ազգօգուտ գործունէութեան մէջ 8—9 տարի վարեց իւր հայրապետութիւնն, աղօթքներ եւ կարգեց ժամասացութեան մէջ, որոնք նորա յաջորդներից պաշտուեցան, որպէս յիշում է Յովհան Իմաստասէր (30. 104.)։ Ինչ դիրք որ բռնել էին նորա նախորդք Քաղկ. ժողովի դէմ, նոյնն եւ շարունակեցին նորա յաջորդք. և Պարսից կողմում, որտեղ նստում էր Եզր, Հայաստանեայց եկեղեցին միշտ պաշտպանուեցաւ թշնամու ձեռնձգութեանց և յարձակմանց դէմ։ Հուսկ

ուրեմն պատմութիւնն ինքն վկայում է Եզրի ուղղափառ գործունէութեան[1], ոչ միայն իրողութեանց նկարագրութեամբ, որպէս տեսանք, այլ բառացի շեշտելով։ Աւասիկ ականատեսն Յովհան Մամիկոնեան գրում է. Եպիփան «գնաց ի ժողովն, որ արար Հերակլ ի 19(?) ամի թագաւորութեան իւրոյ, և նզովեցին զամենայն հերետիկոսսն. և եպիսկոպոսն Հաշտենից հալածական լինէր յերկրին Յունաց»։ Ահա և Սեբէոս վեհաբան եպիսկոպոսը գրում է Եզրի մահից գրեթէ 10 տարի յետոյ. «Ճշմարիտ հաւատն սրբոյն Գրիգորի կալեալ էր ամենայն կաթուղիկոսացն հաստատուն հիմնադրութեամբ ի սրբոյ եկեղեցւոյն, ի սրբոյն Գրիգորէ մինչև ցայսօր», իբրև «զսուրբ և զվճիտ և զականակիտ աղբերացն... զջուրս»։

---

[1] Կաղանկատուացու պատմութեան մէջ կարդում ենք (II, ԽԸ) որ Մայրավանեցուն եւ գրպարտել են թէ Յունաց կողմն եղած լինի:

# ԺԱ.

«Ունիմք մեք հաւատ, ո՛չ ի նորագունից սահմանեալ, այլ որպէս ընկալաք մեք ի ս. առաքելոցն ի ձեռն հայրապետին մերոյ Գրիգորի»...

ՆԵՐՍԷՍ ՇԻՆՈՂ.

---

Հերակլի յարուցած վէճերը դեռ չդադարեցան. Մաքսիմոս վանահայրն գրգռում էր քաղկեդոնականաց. անցնելով Աֆրիկա, բարեկամացաւ կայսրական փոխանորդ Գրեգորիոսին, որ ձգտում էր ինքնագլխութեան և գումարել տալով 645-ի Կարթագինէի ժողովը, վիճեց Կ. Պօլսի գահընկէց պատրիարք Պիրհուսի հետ և գրաւեց նորան։ Միւս տարին միասին նզովեցին հակառակորդաց և Կ. Պօլսի պատրիարք Պօղոսի հաղորդակցութիւնն արգելեցին։ Ապա գալով Հռովմ, յորդորեցին Թէոդորոս պապին (642—649) պաշտպան լինելու։ Թէոդորոս ընդունեց Պիրհուսին իբրև պատրիարք Կ. Պօլսի, սակայն վերջինս անցաւ վերստին հակառակորդաց կողմն և Ռաւեննայի էկզարխին ընդունել տուաւ իւր զղջումը։ Թէոդորոս զայրացաւ, նզովեց նորան դարձեալ, և ստորագրեց այդ բանադրանքը հաղորդութեան մէջ թաթախած գրչով։ Նա պահանջում էր Կ. Պօլսի Պօղոս պատրիարքից Հերակլի

էկթեզիսը վերացնել։ Պօղոս չալաւ և նորա մահից յետ եկաւ Պիրհուս և վերստին գահ ելաւ։ Ապա կայսրն Կոնստանս իւր «տիւպոս» գրութեամբ արգելից 648-ին բոլոր վէճերը, պատիժ սպառնալով անհնազանդներին։ Սորա վրայ Հռովմայ Մարտին I գումարեց 640-ին Լատերանի ժողովը, յորում ներկայ էին նաև յոյն վանահարք, քահանայք և աբեղայք։ Ժողովը պնդեց որ մի ներգործութեան վարդապետութիւնը տանում է առ մէկ բնութիւն, և որոշեց 2 կամք և երկու ներգործութիւն, նզովելով էկթեզիսն և թէ Տիւպոսը։

Կոնստանս կատաղեցաւ և դիմեց բռնութեան։ Մարտին I շղթայակապ բերուեցաւ 653-ին ի Կ. Պօլիս, ուր և նախ հիւանդ պառկեցրած ծաղրի ենթարկեցին ամբոխի մէջ, բանտարկեցին և աքսորեցին Քերսոն, ուր և սովամահ եղաւ 645-ին։ Մոլի քաղկեդոնականն Մաքսիմոս նոյնպէս բռնուելով, բերուեցաւ Կ. Պօլիս։ Հակաքաղկեդոնականաց դէմ իւր վարած մաքառմամբ պատճառ նկատուելով Եգիպտոսի, Կոպտաց ջանքով Սարակինոսաց ձեռքն ընկնելուն, սոսկալի չարչարանքի ենթարկուեցաւ. Հանեցին լեզուն, կտրեցին թևն և աքսորեցին Լազիստան։ Այս խժդժութիւնից սարսափած Հռովմայ Վիտալիանն ընդունեց միացեալ մէկ կամքի վարդապետութիւնը (Մանսի IX, 276)։ Այսպիսով Կոնստանս անցաւ Հերակլից իւր միջոցներով. նա պատրաստ էր Կոպտերի և Ասորոց մըտքերն ըստ ամենայնի հաճելու, միայն թէ այդ երկիրն Արաբաց դէմ ապահովուէր, սակայն չկարեցաւ քաղկեդոնականաց մատնահարութիւնք զսպել։ Նա 662-ին ճանապարհորդելով արևմուտք, մտածեց իւր գահը Հռովմ տանել և 668-ին ի Սիրակուզ սպանուեցաւ։ Աւելորդ է երկար յիշատակել, որ վերջապէս Կոնստանդին Պօգոնատ գումարեց 681-ին Տրուլանեան ժողովն ի Կ. Պօլիս և ընդունել տուաւ Հռովմայ Ագաթոս պապի գրութեան

Հիմունքներն՝ վերջինի նուիրակաց ներկայութեամբ։ Անտիոքայ Մակարիոս պատրիարքն ջանացաւ հակառակել, բայց ի զուր։ 13-դ նիստում, 28 մարտի Սերգիոս, Կիւրոս, Պօղոս, Պետրոս, Թէոդոր Փառանի և Հօնորիոս պապը հանդիսապէս նզովուեցան։ Ժողովի վճիռներին ստորագրեց Հռովմայ Լէօ II, ընդ նմին Կոնստանդին Պոգոնատ փառաբանուեցաւ ժողովում իբրև Նոր Դաւիթ, որ երկուբնութեան վարդապետութիւնն իւր կատարելութեան հասցրեց։ Այս ընդհանուր ծանօթութիւնից յետոյ դառնանք մեր խնդրին։

Հայաստանը ճգնաժամի մէջ էր երկու տիրողների դիմաց. Հայք հակւում էին առ Արաբները, զզուած Բիւզանդի իշխանութիւնից, որ հաւատարմութիւն էր պահանջում, սակայն ոչ ժողովրդի ապահովութիւնն էր հոգում և ոչ պատիւը յարգում։ Թէոդորոս Ռշտունին միակ հոգատարն էր Հայոց և Ներսէս Շինողը միակ սփոփիչ։ Հայք ատելով ատում էին Յունաց զօրքն և «ոչ երբէք ընդունէին զհոռոմի հաղորդութիւն մարմնոյ և արեանն Տեառն» (Սեբ. ԼԴ. 119. Աս. 89)։ Հոռոմք հարկաւ իբրև տիրապետող տարր հպարտացած, ամբաստանեցին Հայոց Կոնստանսի մօտ թէ «իբրև զանօրէնս համարեալ եմք յաշխարհիս յայսմիկ։ Քանզի անարգանս համարին Քրիստոսի Աստուծոյ զժողովն Քաղկեդոնի և զտումարն Լևոնի, և նզովեն զնոսա»։ Կոնստանս հրաման մի հանեց, որ Հայք միակցեն Յունաց, ընդ նմին և Հայոց հետ բանակռուող Հայը՝ Դաւիթ վանահայր եկաւ իւրն առաջ տանելու կայսրի հրամանի ոյժով։ Ներսէս գումարեց (650-ին) մի ժողով Թէոդորոս Ռշտունու և այլոց հետ։ Ժողովը լաւ համարեց մեռնել, քան թէ Գրիգոր Լուսաւորչի վարդապետութիւնից շեղուել, ընդ նմին և գրեց այն զօրաւոր նամակն, որ նկարագիր մի է Հայոց հաւատոյ անվեհերութեան։ Այն մեծանձնութիւնն, որ մեր նախնեաց գեղեցիկ

գինն է, երևում է և այս դեռ Թերի մեզ հասած Թըղ-
Թում։ Եպիսկոպոսաց և իշխանաց ժողովը դարկում է
կայսրի երեսին, որ Հայք դեռ մեծն Կոնստանդիանոսից
շատ առաջ ընդունեցին քրիստոնէութիւնն և նոցա հա-
ւատքը հաստատուեցաւ Նիկիոյ ժողովում, ըստ որում
և այդ հաւատքն է իւրեանցը։ Պատմում է Թէ որպիսի
ազատութիւն էր վայելում Հայաստանեայց եկեղեցին Պար-
սից արքաների օրով, որոնցից ոմանք հալածանք յարու-
ցին, ոչինչ օգտեցան և «ամաչեցին եւ անօրէնք յունայ-
նութիւն իւրեանց», ուստի և ազատութիւն տուին ճա-
րահատեալ։ Այդ ոգեպատար ժողովը բերելով այդ զուգա-
հեռութիւնը հեԹանոս և քրիստոնեայ կայսրի միջև, գե-
ղեցկաբարբառ նախատինք է տալիս նորան, որ քրիստո-
նեայ գոլով, հալածում է քրիստոնէից, մինչդեռ Հայք
ազատութիւն վայելած լինելով հեԹանոսաց ներքոյ, ա-
ռաւել իրաւունք ունին լաւագոյն շնորհաց հանդիպիլ
քրիստոնեայ պետութեան մէջ։ Ապա բերում է ժողովը
Հայոց եկեղեցու վարդապետութիւնը Քրիստոսի մարդեղու-
Թեան վրայ, յենուելով ս. Գրիգոր Լուսաւորչին, նզո-
վում է Բիւզանդեան հերետիկոսաց, խորտակում է երկու
բնութեան վարդապետութիւնը Բիւզանդեան հայրերի
վկայութեամբ, դրոշմում է Հայոց ս. սկզբունքն՝ ափ ի
բերան հարկանելով բռնաւոր կայսրին. այս «աւանդու-
Թեան վերայ հաստատեալ կամք, և ոչ խոտորիմք ի նմա-
նէ ոչ յաջ և ոչ յահեակ»։ Այնուհետև Ներսէս գումա-
րեց եպիսկոպոսաց և բանադրեց Քաղկ. ժողովը, բոլոր
հերձուածողաց և մանաւանդ գաղտնաքարոզ Պօղիկեանց,
և այս ամէնն ուխտագրելով ստորագրութեամբ, կնքեց և
դրաւ ի պահեստի (Սեբ. 142. Յով. Իմաս. 39)։

Անցաւ քանի մի տարի և ահա Արաբները նուաճե-
լով Պարսկաստանը, մտան 653-ին Հայաստանի արևելքն
աւերելու. Նորա դէմ գնաց Յունաց զօրավարն և Թէոդո-

րոս Ռշտունին. վերջինս դժկամակելով Պռոկոպի ծուլութիւնից, միայնակ յարձակուեցաւ թշնամու վրայ (Ղեւոնդ. 8. Սեբ. 135), ջարդեց և աւար առնելով, քաշուեցաւ Գառնի։ Երբ Պռոկոպ և Ճակատի բռնուեցաւ թշնամուց, ջախջախուեցաւ և փախաւ, իւր բանակն աւարի թողնելով։ Այս լսելով Կոնստանս, կատաղեցաւ և անձամբ եկաւ (655-ին) Թէոդորոսին պատժելու. 100,000 զօրքով Հայաստանը կոխկռտելով և աւարելով, իւր վրէժը կամեցաւ ժողովրդից հանել «և ի միջոյ բառնալ» Հայոց։ Ներսէս վշտացած քրիստոնեայ կայսրի այս անօրէն արարքից, ուղեւորուեցաւ իւր ծննդավայր Տայքից, ուր բնակւում էր (Սեբ. 139.), գնաց Մուշեղ Մամիկոնեանի հետ կայսրին հանդէպ և ողոքանօք քրիստոնէութիւն ներշնչեց նորա սիրտը։ Իսկ Թէոդորոս, Ներսէսի մտերիմ բարեկամը, չկարենալով միայնակ Յունաց դէմ ելնել նահանջեց յԱղթամար։ Կոնստանս ջանացաւ բռնել նորան, բայց ի զուր, ըստ որում և նզովելով պաշտօնանկ յայտարարեց։ Սակայն Թէոդորոս իւր գործն էր անում, բանակցելով Արաբների հետ (Սեբ. ԼԵ.)։

Կոնստանս յղելով զօրքի մի մասը Սիւնիք, Վրաստան և Աղուանիք, աւարով ցնծալու և Թէոդորոսից կոլաքակ անելու, ինքն 20,000-ով մտաւ Դուին և իջաւ վեհարանում։ Նա Հայոց իշխանաց կոտորող և ժողովրդին կողոպտող կայսրն էր և բարեպաշտութիւն ունեցաւ Հայոց եկեղեցում յունարէն պատարագ մատուցանել տալու և Ներսէսի հետ հաղորդուելու (Սեբ. 140—142. Յոյն պատմ.)։ Թէև Կոնստանս քաղկեդոնական չէր, թէև Ներսէս 20,000 զօրքով շրջապատուած էր, թէև Հայ ժողովուրդը կաթուղիկոսի հովանին էր խնդրում և Ներսէսի ընդդիմադրութեան վրէժը Հայ իշխաններից կհանուէր, և թէև կայսրը Հայոց եկեղեցում հաղորդուեցաւ և ոչ թէ կաթուղիկոսը՝ Հոռոմոց եկեղեցում, այնու հան-

դերձ Հայոց եկեղեցականաց երկիւղած սրտերը վիրաւորուեցան և տրտնջոց հանեցին։ Բայց երբ մի եպիսկոպոս խոյս տուաւ այդ դէպքից և իմացուելով, կայսրի առաջ բերուեցաւ, ամբաստանեց կաթուղիկոսին, և այդ դժգոհութիւն պատճառեց Կոնստանսին, որ Ներսէս փոքր ինչ առաջ նզով ևս էր կարդացել Հոռոմոց վրայ։ Հաղորդուեցաւ և նոյն եպիսկոպոսն, ասելով կայսրին՝ «զբարձր Հրամանսդ սրբուժել ո՞վ իշխէ»։ Իսկ Կոնստանս խիստ նեղացած Ներսէսից և «գիտացեալ զնենգութիւն նորա, յանդիմանեաց զնա բանիւք բազմօք ի լեզու իւր» (Սեբ. 142.), բայց չկարեցաւ մնալ, զի ստիպողական հանգամանքները փութացնում էին նորան դառնալու։ Նա ձեպով հեռացաւ և Ներսէս հետևելով նորան, գնաց վերստին Տայք, ըստ որում Դուինի գործերը վարում էր նորա նշանակած տեղակալն Անաստաս Ակոռեցին[1], որ 663-ին կաթուղիկոս ընտրուեցաւ (Յով. կաթուղ. Ի. Ասող. 99. Վարդ. Լե.)։

Կոնստանս թողեց զօրքերը Մաւրիանոսի ներքև, ո-

---

[1] Սորա ժամանակ և քաջալերութեամբ ծաղկում էր Դաւիթ Փիլիսոփայ, որ իւր պարտքն էր համարում «ոչ միայն զհեղգացելոցն զարթուցանել միտս, այլ և զպակասամտացն ի բաց լուծանել երկունս»... Նա իւր «Բան հաւատոյ ընդդէմ հերձուածողաց» մէջ բացատրում է ոմանց հերձման պատճառը, շեշտելով. «այլ զվիժածացն ախտացեալք յանկատար ծնունդս՝ խարեալք եղեն յարգանդէ հոգևոր աւազանին, ըստ վերստին ծննդեանն, յորս ոչ առողջ ի նոսա բերիւր դաւանումն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ. այսպէս օտարացեալք և վրիպեալք ի մայրենի գրկաց կաթուղիկէ եկեղեցւոյ, և ի սննդական դարմանաց հոգեպատում և աստուածախօս կաթինն՝ որ յընթերցուածական ստեանցն, ստութիւն բարբառել ձեռնարկեցին ընդդէմ ճշմարտութեան»... Նա գրեց և թղթեր բնութեան խնդրի վրայ այդ ճշմարտասէր հայրապետի և Աշոտ հաւատապինդ պատրկի կամքով և ցուցեց այն հետևանաց այլանդակութիւնն, որ ելնում է հակառակորդաց վարդապետութիւնից: Գրչագիր յարքայ. մարտ. ի Բերլին 32. Թերթ. 264. և այլն:

րոնք սկսան ըստ հրամանին ամենայն խժդժութիւնք գործ դնել Հայոց մէջ, կոտորել, թալանել և խռովեցնել. այդ ժամանակից էր որ արևմտեան Հայաստանում ծիսական խլրտումներ մտան։ Ապա Թէոդորոս միաբանեալ արևելեան Հայոց նախարարաց հետ, հպատակուեցաւ Արաբաց, զօրք առաւ և գալով դէպի հիւսիս, կոտորեց և դուրս վռնդեց Յունաց. գնաց ի Դամասկոս մեծամեծ ընծաներով և ի պատիւ ստացաւ ոսկեղէն հանդերձ և իշխանութիւն Հայոց, Վրաց և Աղուանից վրայ, ընդ նմին Արաբները խոստացան օգնութիւն տալ Յունաց դէմ (Սեբ. 143)։ Երբ կրկին շուրջ 660-ին պատերազմ ծագեցաւ Յունաց և Արաբաց միջև, Թէոդորոս ստիպուեցաւ իւր Վարդ որդուն Յունաց կողմն ուղարկել։ Վարդ գնաց և կոտորածի ճգնաժամում անցաւ Արաբաց կողմն և Յոյները ջարդ ու բուրդ եղան (Ղևոնդ. Դ. 13.)։ Որչափ առաջ իրերը լարուած էին և Կոնստանս ջանում էր մերթ վախեցնել Հայոց, մերթ բարեկամութեամբ գրաւել, այժմ զբաղուած էր արևմտքով, որից օգտուեցան Հայք։ Շուտով միաբանուեցաւ Թէոդորոսի հետ Յունաց բաժնի իշխանն ևս Մուշեղ և Ներսէս կաթուղիկոսի օրհնակցութեամբ հպատակուեցաւ Արաբաց (Սեբ. ԼԸ. 149. Ղև. 14)։ Թէոդորոս վախճանուեցաւ 661-ին (Սեբ. 150)։ Համառօրէն 662-ին, եթէ ոչ ուշ, կնքեց իւր կեանքը նորա սիրելին Ներսէս, որին Յովհաննէս կաթուղիկոս, թերևս ոչ անհիմն, «Մեծ» է կոչում։



## ԺԲ.

*Հովիւ քաջ զանձն իւր դնէ ի վերայ ոչխարաց:* ՅՈՎ. Ժ. 12.

---

**Պատերազմի արշաւանաց վերջ չկար. միմիայն դժաբաղդ կայսրն Յուստինիանոս II անձամբ երիցս ասպատակեց Հայաստանն և ծանր զօրքով ի վրէժ Արաբաց աւերեց, գերեց, աւարեց և միայն սրբանուէր Սահակ կարեցաւ նորա արիւնաթաթաւ սուրը յետ քաշել (Ղև. Ե. Ա. II, 101.)։ Այս այն Սահակն[1] է (678—703) առ որի զխակն Արաբաց զօրավարն, այն արիւնարբու գազանը, գուրգուրալով բարբառեց. «Ծանեայ զխմաստութիւն քո ի մատենէն զոր ընթերցայ, զի ըստ օրինի քաջ հովուին ի վերայ քոյին հօտիդ հոգացեալ՝ փութացար զալ ընդ**

---

[1] Մեր յիշած յոյն պատմիչը սորա մասին աննպաստ է խօսում, որ իբր թէ սա Կ. Պոլսում Յուստիանոս Բ.-ի օրով ժողովում է եղել հաղորդուել և ապա դառնալով, զղջացել և իւր արածը նզովել է: Սակայն մէկ գրչագրի մէջ կարդում ենք՝ «ս. և աստուածասէր ժողովն, որ ժողովեցան յամենայն քաղաքաց... հրամանաւ մեծի թագաւորին Յուստինեայ, որ նախանձայոյզ եղեալ օրինացն Աստուծոյ և ս. առաքելոց քարոզութեան, ժողով հրամայեաց լինել ի միջասահմանս աշխարհին Հայոց, Վրաց և Աղուանից, որ ժողովեցան բազում եպիսկոպոսք յամենայն քաղաքաց հանդերձ կաթուղիկոսաւն Հայոց Սահակաւ և հրամանաւ

առաջ խռովացեալ սրտի իմոյ։ Հաւանեցայ արգելուլ զսուր իմ յորանց անմեղաց» (Ղև. Թ. 30.)։ Այս ծանենշան է Հայոց քաջալանջ կաթուղիկոսաց, որոնք իւրեանց հօտի համար դիմագրաւեալ շահատակում էին չքրիստոնեայ կայսրաց և հեթանոս հրոսակաց արիւնարբու սրի առաջ։ Այս խառն միջոցին քաղկեդոնական նիւթողք ևս Վրաստանից մտնելով Աղուանք, մատնահարում էին երկպառակտելու համար։ Այդ յաջող էր, զի Աղուանից գլխոն Սպրամ և կաթուղիկոսն Ներսէս սկսան նոցա սերմերին հող պարգևել։ Այս իմանալով Շերոյ իշխանն իւր ազատներով և եպիսկոպոսներով ժողով գումարեց և նզովեց Ներսէսին և բոլոր հերձուածողաց։ Ապա թուղթ գրեց առ Եղիա կաթուղիկոսը (703—717), խնդրելով օգնել նոցա և չթոյլատրել քաղկեդոնականաց զօրանալը (Կաղանկ. III, Գ. Դ.)։ Եղիա տեսնելով իւր զգուշացումների չօգտելը, Վրաց դէպքից խրատուած, 704-ին ոստիկան առաւ Արաբաց Աբդլմելիքից, եպիսկոպոսներով մտաւ Աղուանք, կապտեց Սպրամին և Ներսէսին և աքսորեց (Կաղան. III, Ե. Զ.). ապա գումարեց Պարտաւի ժողովը, նզովեց հակառակորդաց, դաւանական թուղթ առաւ Աղուանից եպիսկոպոսներից և իշխաններից և ինքն տուաւ նոցա իրաց եղելութեանց մէկ արձանագրութիւն ի պահ-

---

նորին Թագաւորին՝ զսրբոց առաքելոցն զաւանդութիւնս և զսրբոց ժողովոցն Նիկիոյ և զՃԾ.իցն որ ի Կ. Պոլիս և զՄ.իցն որ յԵփեսոս զայն հաստատել հաւատ և նզովել զամենայն հերձուածողս՝ զառաջինս և զմիջինս և զվերջինս: Նախ և առաջին զաղանդն Մարկիոնեայ և զաղանդն Արտեմոնի և զաղանդն Մանիքեցւոցն և զաղանդն Պօղեայ Սամոստացւոյ և զաղանդն Արիոսի և զաղանդն Մակեդոնի և զտումարն Լևոնի և զամենայն հերձուածողս...: Եւ ժողովեցան բազում եպիսկոպոսք Վրաց և Աղուանից ի քաղաքի Թէոդոսպօլիս...»: Ապա բերում է և կանոններն այդ ժողովի, համաձայն Հայոց եկեղեցու: Ցարք. մատ. Թ. 34. Թերթ. 303. Այդ ժողովը յիշում է և Կաղանկ. II, ԽԸ.

պանութիւն յիշատակի։ Ապա ընտրեց Սիմէոն եպիսկոպոսին կաթուղիկոս, ձեռնադրեց ու դարձաւ (Կաղ. III, Ը. Թ. Յով. կ. ԻԲ. Աս. II, 102...)։ Սակայն քաղկեդոնականաց ալեց երկաթէ աւելով քաջաբան Իմաստասէրն Յովհան Օձնեցի (717—728)։ Անշուշտ թշնամեաց մախողութեամբ, սկսան Բերշապուհ ոմն երէց և Գաբրիէլ սարկաւագ Ասորոց մէջ բանսարկել և զրպարտել, Հայոց Յուլիանեան կոչելով, իբր հետևողք Յուլիանոսի Ալիկառնացու, որ ուսուցանում էր թէ Քրիստոս անապական մարմին է առել ի ծնէ կամ ի բնէ։ Ասորոց կաթուղիկոսն Աթանաս լսեց և իսկոյն պատգամով յայտնեց Իմաստասէրին, որ և հոռոմոց բամբասանքներից ու զրպարտութիւններից ձանձրացած, խնդրեց Բաղդադի ամիրապետից՝ դուրս վռնդել չարանիւթ քաղկեդոնականաց, որոնք Հայաստանում բնաւորուելով, ժխորում էին Հայոց ս. եկեղեցու խաղաղ փարախը։ Խնդիրը կատարուեցաւ և այդ չարարմատք արտաքսուեցան. ապա Օձնեցին ժողով գումարեց 719-ին ի Մանազկերտ, Արշարունեաց Գրիգորիս գիտնական քորեպիսկոպոսի և Ասորոց ներկայացուցչաց հետ և իւր զօրաբան հոգու հարուածով յօդս ցնդեցրեց քաղկեդոնականաց և երևոյթականաց բանդագուշանքները։ Նա ամաչեց դաշնակից Ասորոց կասկածանքն և կնքեց ժողովը հրաշալի մի ճառով։ «Մի ոք, ասաց նա, համարեսցի զմեզ մարդատեաց և անգէտ՝ խորհրդեանն Քրիստոսի, որ զսէրն և զխաղաղութիւն եթող զանձ եկեղեցւոյ և պատկեր աշակերտութեան իւրոյ։ Այլ քանզի ճեղքեն ոմանք ի հաւատոյ և ի ներքոյ վայի մտանեն, և առեն զբարին որ ի մեզ՝ չար, և զլոյսն դնեն խաւար, և զմկրտեալն ի մէնջ կրկին մկրտելով, վերստին ի խաչ հանեն զՈրդին Աստուծոյ. և ասելով նոցա մեզ անհաւատս, ինքեանք անկանին ի հաւատոց. մեզ ինչ ոչ կարելով պատասխանել։ Զորօր. թէ ոք զփոյթ և զսուր տեսո-

ղականն կցյր առէ, ինքն է կցյր, որ չէ՛ ի տեսանել զնորա աչեղութիւն, զայնպիսին հալածեցաք մեք իբրև զօտարս»[1]։ Այս է հայաստանեայց եկեղեցու արտաքին գործավարական ս. սկզբունք, զոր գգուել է նա իւր գաւթում։ Այնուհետև Օձնեցին ձեռք առաւ իւր փսեմախրոխտ գրիչն և բուռն յարձակմամբ երևոյթականաց, այսինքն նոցա դէմ, որոնք ասում էին թէ առ աչօք է Քրիստոսի մարմնաւորութիւնն, ի մի կուռելով՝ հիմնայատակ արաւ իւր հակառակորդ բոլոր աղանդները։ Այդու պսակեց նա իւր ուսուցիչ Թէոդորոս Քռթենաւորի ճառը։ Մինչ գեղապէս բանավարելով երևոյթականաց դէմ, ճշտում է Քրիստոսի Աստուած և միանգամայն մարդ լինելն և ասում. «դուք երկուցեալք յերկուց ասել՝ բնութեանց՝ ի Պանդորասին փախուցեալ անկանիք յիմարութիւն, որ զբանն ի մարմին և յոսկերս յեղեալ ասէր»։ «Երկնչիս յերկուց ասել բնութեանց. երկիւղ մեծ գոյ, եթէ ոչ արժանապէս և զմին ասել Քրիստոսի բնութիւն։ Իսկ եթէ իրաւապէս և բարեպաշտաբար զերկոսին լսես, ոչինչ է արգել զմին ասելով՝ յիշել և զառ ի յերկուցն. և դարձեալ՝ ոչ մոռանալով զյերկուցն, խոստովանել և զմին»։ Ուրեմն Օձնեցին ժխտում է նոցա, որոնք պարզ մի բնութիւն աստուածային էին ուսուցանում, իսկ ինքն վարդապետում է «յերկուց մի», այսինքն աստուածամարդկային մի բնութիւն։ Բայց ոմանք կամեցան երկու բնութեան վկայութիւն ևս գտնել սորա ճառում. ուստիկ Մսերեանի նման՝ եկեղեցու ախոյեան՝ անձն իսկ աչքից չփոթելով օտարի վկայաբերածն իւր հրահանգի մէջ է դրել. «անպատկառացոյցք ս. հարքն երկուց բնութեանց Քրիստոսի՝ աստուածայնոյն և մարդկայնոյն՝ լեալք, բնութիւնքն երկու ասելով, վասն

---

[1] «Արարատ» 1888. Ժ։ Ասող. 102։ Կիր. 38։ Միք. Մեծն 338։ Օրբել. ԺԲ։ Վարդ. ԼԸ։ Մխիթ. Այր՝ 68։ Աբուլֆարաճ II, 57։

զի Աստուած և մարդ... և եթէ՝ հաւասարի զերկոսին
ունէր զընութիւնսն Քրիստոս...: Ոչ եթէ զերկուց ասե-
լով՝ հրաժարէին ասել զմին, և կամ եթէ զորլին հա-
կառակն՝ զմին խոստովանելով՝ յամառէին յերկուցն դալ
խոստովանութիւն. այլ համարձակապար երկաքումբքս այսո-
քիւք բարեփառութեան դամպարօք փայլեալք պայծառա-
նայլին, երկուս ըստ բնութեան, և մի ըստ միաւորութեան
զՔրիստոս քարոզելով»: Արդ եթէ այդ բանաքաղներն ու-
զում են այդպէս հասկանալ այս կտորն, ըստ որում և
մասերը հանելով և կցտաղրելով ընթերցողին խաբել են
ջանում, լրացնենք պակասը, տեսնենք ինչ դուրս կգայ.
«բնութիւնք երկու ասելով, վասն զի Աստուած և մարդ,
և եթէ՝ ի միասին եկլին բնութիւնքն, և եթէ՝ հաւասարի
զերկոսին ունէր զընութիւնսն Քրիստոս. և եթէ՝ Կ ր կ ի ն
է Ք ր ի ս տ ո ս. մարդ էր որ երևէր, և Աստուած էր որ
ոչն երևէր. և որ այլ ինչ սոյնպիսիք յայլոցն ասացեալ
եղեն»: Արդ եթէ ստոյգ է թէ Օձնեցին երկու բնութիւն
է ասում, պէտք է ընդունենք որ նաև երկու Քրիստոս է
է վարդապետում. եթէ ճի՞շտ է առաջինը, ճիշտ է և երկ-
րորդը: Ահա մինչ ուր է տանում մեզ ոչքակապների
բանաքաղութիւնը:

Քաջայայտ է որ Օձնեցին այդպէս ասելով, բացատ-
րում է թէ Քրիստոս ոչ միայն աստուածային բնութիւն
ունէր, այլ և մարդկային. սակայն ոչ թէ Քրիստոս երկու
բնութիւն ունէր յարակից, այլ նորա բնութիւնն, որ մի
էր, երբեմն երևում էր իբրև մարդկային և երբեմն իբրև
աստուածային, վասն զի միաւորեալ բնութիւն էր: Նոյն-
պէս և ոչ թէ «կրկին է Քրիստոս», այլ և երբեմն որպէս
Աստուած: Ըստ այսմ է հասկանալ և նորա «երկուս ըստ
բնութեան, և մի ըստ միաւորութեան» երկու ի տրամա-
բանական կարգի, որպէս և ասում ենք՝ մարդկային բնու-
թիւնը չարչարելի է և աստուածայինն ո՛չ, սակայն միա-

ւորութիւնից յետոյ չարչարելին անչարչարելի, և անչարչարելին՝ չարչարելի ըստ միաւորութեան (Տես էջ 58)։ Բայց ուր Թողինք Օձնեցու այն հակիրճ խօսքերն, որոնցով հիմնայատակ է անում քաղկեդոնականութիւնն, աւելով. «ապա ուրեմն մի՛ բնութիւն և մի դէմ Քրիստոսի, եթէ պարտ է համառօտագոյնս ասել, ոչ է ըստ նոյնութեան բնութեան կամ ԸՍՏ ՄԻԱՆՁՆԱԿԱՆՈՒԹԵԱՆ, ԶԻ ԱՅՍ ԶԵՐԿՈՍԻՆ Ի ՄԻԱՍԻՆ ԳՐԵԹԷ ԶՐԿԵՍՑԷ ԶԱՍՏՈՒԱԾ Ի ՄԱՐԴՆ ԼԻՆԵԼՈՑ, ԵՒ ԶՄԱՐԴՆ ՑԱՍՏՈՒԱԾԱՆԱԼՈՑ, այլ է՛, որպէս բազում անգամ ասացի, ըստ անձառ միաւորութեան բանին, ընդ իւրում մարմնի։ Որպէս և ս. Գրիգոր (Լուսաւորիչ.) ասէ՝ «միացաւ ի մարմնի բնութեամբ, և խառնեաց զմարմինն ընդ իւր աստուածութեանն»։

Այս մեծափառ Հայրապետի մաքրիչ և հաստիչ բազուկն այնպէս զօրաւոր էր, որ երկար ժամանակ այլ չյանդգնեցան պղտորիչներն ոտք դնել Հայաստանեայց եկեղեցու պատուպարեալ և պարսպեալ փարախը։



## ԺԳ.

*«Եւ արդ եԹէ խարդախուԹեամբ ու-
նիմք զԹերուԹիւն հաւատոց, վասն էր
չարչարիմք իբրև զպատժապարտս և
ոչ ունիմք հանգիստ»:*

ԳՐԻԳՈՐ ՎԿԱՅԱՍԷՐ.

---

*Հենց որ Բիւզանդացիք վռնդուեցան և անհետացաւ
նոցա ազդեցութիւնը, բարձրացաւ Հայրենեաց աւերակաց
վրայ Բագրատունեաց դրօշակը։ Պայծառացաւ երկրի վա-
յելչութիւնը, փայլեցաւ և Հայաստանեայց եկեղեցին, ըստ
որում Հայոց կաթուղիկոսք պարապեցան ոչ միայն պե-
տութեան բարեկարգութեան, այլ և երբեմն երբեմն քաջ-
արի ոգևորութեամբ դուրս ելան մարդաբանական ասպա-
րէզը։ Հայք խրատուած անցեալ պատմութիւնից, հեռու
էին Հոռոմոց մօտաւոր յարաբերութիւնից կամ շատ
զգոյշ։ 863 թուականին Զաքարիայի Հայրապետութեան
միջոցին Աշոտ Բագրատունին իշխանաց իշխանի ճոխու-
թեան հասաւ, որ գուշակ եղաւ թշնամեաց առաջ նորա
ապագայ զօրութեան. այս նկատեց Բիւզանդ և ահա Կ.
Պօլսի պատրիարքն Փոտ միջնորդ դուրս ելաւ Հայոց և
Հոռոմոց կայսրի միջև յարաբերութիւն հաստատելու. նա
մէկ թուղթ գրեց առ Աշոտ (Աս. III, Բ. Կիր. 44: Մխ.*

Այ. 70.), յորդորելով նորան հակուիլ առ քրիստոնեայ թագաւորութիւնն, ըստ որում և Աշոտ մէկ իմաստուն պատասխան տուաւ, խոստանալով սէր պահել ընդ նմին և շնորհակալութիւն է յայտնում նորա ուղարկած շնորհաւորական ընծային (Ցուշիկ. I, 457.)։ Այս թղթագրութիւնից յետոյ (867—) շատ չանցաւ և ահա Աշոտ կարեցաւ թագաւորութեան թեկն առնել. թագ տուաւ նորան ամիրապետն, որ հեթանոս էր, իւր բռնապետական լծի կոտրուելու համար, թագ տռաքից նորան և Բարսեղ կայսրն, որ քրիստոնեայ էր, սիրով ի վերջոյ նորա գահը վտանգելու համար. Աշոտ թագաւորեց 887 թուին։ Բագրատունիք քաջալերեցին գիտութիւնը, գնահատեցին արժանաւոր եկեղեցականաց, ըստ որում նոյն իսկ աշխարհական մի իւր առաքինութեանց յարգով, Շիրակաւանի ժողովով 854 ին կաթուղիկոս եղաւ։ Եկեղեցականք ևս Ասորոց ձեռնակցութեամբ վառ էին պահում ազգային եկեղեցու ջատագովութիւնը, յաճախ պայքարում յաղթահարում էին հակառակորդաց։ Դեռ 801-ին Նանա Ասորին խորոխտում էր յաղթեալ քաղկեդոնական Եպիկուռոսի վրայ հայական մի կաճառում։ Սմբատ Բագրատունու հայցեալ՝ նորա «Մեկնութիւն Ցովհ.» երկի թարգմանութիւնն էր որ Աշոտ Իշխանաց իշխանի ձեռնարկը դարձաւ (տես. յիշատակարանը Զարբ. Թարգ. 620. Մխ. Այր. 70.)։

Հոռոմք ջանացին նաև Զաքարիայի հետ յարաբերութիւն կապել, ըստ որում Փոտ գրեց և առ նա մէկ թուղթ՝ դաւանաբանական համոզաբանութեամբ ճարտարուած, որի պատասխանը գրեց իմաստութեամբ, Սահակ Մռուտ և Ապլիկուրէշ եպիսկոպոսն Տայքի, ու Ցոյների հալածուելով, փախել էր և Բագրատունեաց մայրաքաղաքն ապաստանել (Աս. III, Բ. 158. Վար. 82—85)։ Հոռոմք ջանում էին նոցա սէրը ճանկելու։ Ընդ նմին

միայն իւրեանց մշտական նպատակաց վրայ էին գաղաշում: Կրօնական համբերատարութիւն չէին կարող ունենալ, եթէ մեծ իսկ լինէր հանրային շահը: Ատելութիւնը գնում էր իւր ճանապարհով և այդ այնպէս սաստկացաւ, որ Անանիա կաթուղիկոս[1] եկեղեցականաց խորհրդակցութեամբ հրամայեց քաղկեդոնական մկրտեալները կրկին մկրտել «վասն զի ուրանան քաղկեդոնականքն զԱստուած ի մարմնի իւրում լինել ի խաչին և ի մահուն. այլ և երկուս բնութիւնս կամօք ներգործութեամբ ասեն ի Քրիստոս, և մարդկայինսն ասեն ոչ Աստուծոյ վասն մեր կըրեալ կիրս և մեռեալ, այլ սոսկ մահ մարդոյ, և ի մահ մարդոյ մկրտին», առարկելով (Աս. 178):

Կրօնական մոլեռանդութիւնն այնպէս թունդ էր, որ Անանիայի յաջորդ Վահան կաթուղիկոսն իւր յարաբերութեան պատճառով քաղկեդոնականաց հետ բուռն հարուածի ենթարկուեցաւ: Ըստ Ասողկան, որ ականատես է, յԱնի ժողովուեցան ժամանակի նշանաւոր անձինք և գահընկէց արին Վահանին, որ փախել էր Վասպուրական: Նորա տեղը ընտրեցին Ստեփաննոսին: Վահան մէկ տարի կաթուղիկոսութիւնից յետ, քանի մի տարի ևս խռովութեան պատճառ էր եղել, զի Վասպուրականում իւր անմեղութիւնն հրապարակելով, գրգռեց Հայաստանի հարաւն իւր գահընկէցութեան դէմ: Թերևս զրպարտութիւն եղած լինի նորա ամբաստանութիւնը, սակայն երկու կաթուղիկոսաց մահուամբ վերջացաւ խռովութիւնը: Թողնելով մի կողմ յետագայ ժամանակի պատմիչներին տեղեկութիւնք, ըստ որում Ուռհայեցին մեծամեծ գովեստներով է յիշում նորան, բաւական է յիշատակել նորա

[1] Ըստ արձանագրութեան առ Շահխաթունեանի, Անանիայի կաթուղիկոսութիւնը տևում է մինչև 981. տես. II, 56: Հայոց կաթուղիկոսաց ժամանակագրութիւնը պիտի ջանանք մի այլ անգամ ճշտել:

յանցանքն ըստ ականատեսին՝ այն է որ Վահան «ընդ քաղկեդոնականս սիրելութիւն և հաճութիւն կամեցաւ առնել թղթովք»։ Սակայն «սիրելութիւն և հաճութիւն» կարելի է հեթանոսաց հետ անգամ անել, պարզ է ուրեմն թէ քանի լքեալ էր Հայոց սիրտն այդ քաղկեդոնականաց հեթանոսութիւնից, որոնց հետ բանդագուշանք էր սէր անել մտածել, մինչդեռ պարզ քաղաքական յարաբերութիւնը վտանգաւոր էր։

Մինչդեռ յարաբերութիւնն այդպիսի նրբութեան և զգուշութեան էր հասած, մարդաբանական ասպարէզն ևս իւր ընդարձակութիւնն առաւ։ Ասա Հայաստանեայց եկեղեցու կորովաբան կաթուղիկոսաց սկզբանց հաւատարիմ հետևող մի է Խաչիկ Ա կաթուղիկոսն, Անանիայի յաջորդը։ Հոռոմք զրկուելով Հայաստանի որսարաններից, սկսան անհնարին հալածանք բարձրացնել Բիւզանդական հայաբնակ քաղաքներում։ Անամօթութիւնք այն աստիճանի էին հասել, որ Սեբաստիոյ «կանացի հովիւքն և միտրապօլիտն», չկարենալով դիմանալ վայելուչ պայքարի, խաչը թողած բրիչ ու շղթայ էին ձեռ առել, ըստ որում աւերում էին եկեղեցիք, զանահարելով և շղթայելով աքսորի էին ուղարկում Հայոց քահանաներին և ամենայն խժդժութիւնք գործ դնում, մինչ այն որ նոյն իսկ Հայոց եկեղեցեաց զանգահարութիւնն արգելեցին։ Տուրջ 986 թուին գրեցին և առ Խաչիկ քանի մի թղթեր հաւատոյ խնդրոց վրայ և ընդունեցան անհրաժեշտ պատասխաններ, ուրոնցից միայն մէկն է առձեռն (Աս. III, Ի. ԻԱ.)։ Հայոց մարդաբանական հմտութեան կատարեալ մարմնացում մի է այդ հրաշապան թուղթը։ Խաչիկ պահանջում է Սեբաստիոյ միտրապօլտից ապացուցանել քաղկեդոնական վարդապետութիւնն աւետարանի և ս. հայրց գրուածներից վկայութիւններ բերելով, ըստ որում և ասում է որ եթէ ապացուցին ճշմարտութիւնը, չի հրա-

ժառանգել նոյնը խոստովանելուց: Նա պահանջում է ապացուցանել, որպէս զի ճշմարիտը տեսանելի լինի. «ապա թէ պաճուճանս միայն դնէք զանուանս նոցա, ասում է նա, զօրէն ռամկի թագաւոր կերպարանեալ (զի մի աստցէց առիւծենեաւ կերպարանեալ զկենդանին զայն, կամ զարծուոյն զանց արարեալ զճայլին առասպել առ այլոց հաւուցն գեղեցկութեամբ), ո՞չ ապաքէն խաբէութիւն է առ ազէտս, ով իմաստունք յայտնիկ: Իսկ որոց աչք ի գլուխ, և միտք յիմաստութեան և կատարեալ հասակաւ, և կիրթ ճաշակելեօք՝ նոցա կարողութիւն է ընտրութիւն առնել ի մէջ բարւոյ և չարի»: Ահաւասիկ այն ապտակն, որ սարսեցնում է և պիտի սարսեցնէ յաւիտեան ճշմարիտ հաւատքի թշնամեաց: Հայ մարդաբանը չէ թագցնում իւր խոստովանածն, այլ խօսում է բացարձակ, ուստի և հրճւում է ինքնաբաւականութեամբ իւր տղմաշունչ հակառակորդի ողորմելի և չարախինդ վիճակի վրայ, ասելով. «մեք զհաւատոյս մերոյ զբարեպաշտութիւն յայտնի քարոզեմք և գրեմք ի նամակի աստ: Զի ի վերայ լերին բարձու հրամայեցաւ բարձրացուցանել զբարբառն հաւատոյ, և ի Տեառնէ հրամայեցաւ՝ զի յունկանէ լուեալն ի վերայ տանեաց բարձրութեան ասել և քարոզել»: Նա չէ քաշւում իւրը բացայայտել, ըստ որում և ուրախ կլինի եթէ հակառակորդք քննեն և ցոյց տան սխալը, հերքեն հաստատուն ապացոյցներով և ոչ թէ հալածեն ու հայհոյեն ժռաստ գաղանի նման: Քանի վիթխարի հակընդդիմութիւն երկու կողմանց մէջև. այնտեղ միայն խաւարչուտ բռնութիւն, այստեղ լուսաւոր ազատութիւն համոզման իրաւացի ընտրութեան, մի՞թէ կղիմանայ լուսոյ առաջ խաւարային ժանտաժուտ մթնոլորտը... Այնտեղ աղջամուղջ և շամանդաղ իւրաքանչիւրի բացակուրութեան համար. այստեղ շողառատ պարզութիւն անձնիւր խելահասի հասողութեան ի նպաստ. մի՞թէ կհակա-

դիմէ խոնաւոտ բաղակոյտը մշտակէզ շողերին։ Խաչիկ գիտէ այդ, ուստի և հիմն ի վեր տապալելով նոցա վարդապետութիւնն, ոչ թէ հայոց վարդապետների խօսքերով է հերքում նոցա, այլ նախ բանական բանավարութեամբ և ապա նոյն իսկ հռովմէական պետութեան եկեղեցու հայոց գրութիւններից վկայաբերելով. «որպէս ընդ հրէայսն, գրում է նա, ոչ աւետարանական և առաքելական վարդապետութեամբք վիճեմք, այլ ի նոցունց մարգարէից համանեցուցանեմք՝ նոյնպէս և ընդ ձեզ՝ ի վարդապետաց ձերոց և որ յաշխարհ ձեր պայծառացան՝ բանադիր լինեմք յոգնապան և բազմապատիկ պիտառութեամբք, զի առաւել երևելի և նշանաւոր յաղթութիւն լիցի ամենայն հերձուածողաց»։ Քանի գեղեցկախօս է հաւատոյ այդ ախոյեանների պարծանքը՝ հայաստանեայց եկեղեցու հաւատալեաց առաքելական պարզութիւնը, որ բարձրանում է վեհափսեմ ի վեր անդր քան զընաւս քաղկեդոնականաց դաւանական շեղջակոյտի դիմաց պանծալով. այս գիտէին այդ քաղցրաբարբառ ջատագովք, որպէս Խաչիկ ասում է հեգնաբար ապտակելով հակառակորդին. «իսկ զի՞նչ վասն վարսաւոր գիտուցդ ասիցէք, զոր իբրև սահման քրիստոնէութեան ունիք»։ Խաչիկ պարծանքով յիշում է, որ հայք պինդ են պահելու իւրեանց հաւատքը, Գրիգոր Լուսաւորչի հայրական ժառանգութեան այդ գեղեցիկ աւանդն իւրեանց սրտի և հոգու մէջ, պինդ որպէս իւրեանց մարմնի գոյնն անփոփոխ։ Անկամայից ծաղրում է հակառակորդաց, որ երեք բնութիւն պիտի դաւանէին, երկուքի միջնորդն ես աւելացնելով, և ցաւում է, որ ստիպուած է յարձակուելու նոցա դէմ. նա նկատում է, թէ այդ չէր անիլ, եթէ Յոյնք չթաղած լինէին հաւատալն ու հաւատքի զօրութիւնն և մնոտի բառաքննութեան յետևից ընկած, խաչն իսկ ունայնացնելով։ Ի վերջոյ ամփոփում է իւր հարուածն ասելով, որ ինչպէս նա

իւր թուղթը 5 գլխի էր բաժնել, ըստ իւր 5 զգայարանաց, որոնցով ապշել էր, և բաժանումն էր մտցրել Քրիստոսի բնութեան, կամքի և ներգործութեան մէջ, այնպէս ևս ինքն ըստ Դաւթի 5 քարերին, որով նա Գողիաթին ջարդեց, խփում է ս. Հոգու պարսատիկով և Տէրի բազկի զօրութեամբ նորա ճակատն, որպէս զի այլ ևս չյանդգնի կենդանի Աստուծոյ ճակատը նախատելու։ Բայց չկրկնենք ամբողջ թուղթն, որի զօրութիւնը ճանաչելու համար պարտ է զայն քանի մի անգամ կարդալ։

Խորտակեց Խաչիկ իւր հակառակորդին իւր հայրենի յաղթապանծ ճեմով և նորա մշտայաղթ զէնքն էր նախնեաց սկզբանց, ուղղութեան, և ջատագովական մշտազուտ բանահիմանց այդ շարադրքը։ Դոցա փայլուն վեհութեամբ էր որ «բարձրանայր եղջիւր եկեղեցւոյ ուղղափառ խոստովանութեամբ»։ Հայաստանեայց եկեղեցու յաղթանակը զօրաւոր էր և յաւերժական, ուստի երբ նորա որդիքը զինուիլ գիտէին նախնեաց հաւատով, ընկճւում էր թշնամին, վասն որոյ «որք խէթ աչօք հայէին ի մեզ, ի սոցա վարդապետական հանդիսիցն կորակնեալք իբրև զմկունս ի ծակս ուրմոց սողոսկեալ մտանէին»։

Արդարև Հայք բարձրութիւնից էին նայում իւրեանց հակառակորդաց վրայ, ըստ որում այդ վեհութեան պիտասատութիւնն արտայայտութիւն է ստանում ըստ ամենայնի. Հայոց հայրապետը գերագահում է Բիւզանդիոյ պատրիարքին և Հռոմոց համար ջուր է օրհնում և «ցնցուղ լուսոյ ճառագայթից» ծագում է ջրի վրայ Հայոց եկեղեցու հովուապետի օրհնութեան տակ (Լաստ. 12. Սմբ. 29.). իսկ թագաւորն Վասիլ նորա ձեռքով ջուր է ածում իւր գլխին։ «Հաւատոյ եղջիւրը» բարձր պահել, եկեղեցին պարզ և անբիծ պահպանել և հինաւուրց առաքելական աթոռի սրբութեան համար ամենայն ինչ զոհել՝ ահաւասիկ այն սկզբունքներն, որոնք ոգևորել են

ամենայն ինքնաճանաչի. Հայոց կաթուղիկոսի Կ. Պօլիս մտնելով դղրդում է քաղաքը. Հայոց վեհապետի աթոռապահ եպիսկոպոսը Բիւզանդական արքունիքում վերցնում է կայսրական բազմոցն և տանում է, զի կաթուղիկոսը նստելով այնր վրայ, սրբագործել է զայն, զի «օրէն է մեր՝ յաթոռն յոր նստի կաթուղիկոսն, ոչ այլ ումեք նստիլ, բաց ի նմանէ» (Ուռ. 124. Սմբ. 51. և այլն.)։

Այսպիսի վեհագոյն զգացմանց դիմաց քաղկեդոնականք կրկին մկրտում էին, հաւատադրուժին և ուրացողին գլխախառնելով պարգևատրում էին, յիշոց և հայհոյանք էին տեղում Հայոց վրայ, անարգում էին Հայոց սրբութիւնք, և եկեղեցիքը գոմ դարձնում, այնպէս որ նոյն իսկ տաճիկները քամահելով ասում էին. «զսրբութիւն քրիստոնէից այդպէս առնէք և դուք քրիստոնեայք», և զարմանքով լսում նոցանից. «մեք զհայ եկեղեցին և զձեր մզկիթն միապէս ընդունիմք» (Ասող. III, Խ.)։

Բնական էր որ Հայք ատելով կատէին նոցա, ըստ որում զարմանք չէ, եթէ յաճախ պատահում ենք այսպիսի արքայական արձանագրութեան. «արդ եթէ ոք ընդ հակառակս ելանէ... այնպիսին մի՛ գտցէ ողորմութիւն Աստուծոյ... այլ անէծք յափշտակողացն եկեսցէ ի վերայ նորա, և մեղք մեղապարտիցն և նզովք չարագործացն, որպէս Կայենին և Յուդային, և Արիոսին և Հոգեմարտին Մակեդոնին և Նեստորի երկաբնակին և Լևոնի Հռովմայեցւոյն և որ այլ նմանիք նոցա...» (Օրբ. 237.)։ Բայց որչափ ատելութիւնը խստանում էր, այնչափ պայծառացնում էին Հայք իւրեանց եկեղեցին, ամենահեռաւոր տեղերում եպիսկոպոսներ էին հաստատում, ըստ որում Պետրոսի օրով 500 եպիսկոպոսական թեմեր կային, 12 եպիսկոպոս, 4 վարդապետ, 60 քահանայ (կուսակրօն), 500 ժողովրդական նորա հետևորդք էին կազմում (Ուռ. ՁԹ.)։ Բանակռուական գրականութիւնը հարստացաւ

Պետրոսի հրամանով գրուած Անանիա Սանահնեցու «ընդդէմ երկաբնակաց» երկով (Ու. 122.)։ Նաև Պօղոս Տարօնացին գրեց այն խիստ յարձակմունքն, որ երկար ժամանակ մնեցրեց հակառակորդաց[1]։

Բայց Բիւզանդ իւր ամարդի մշտական հոգի մէջ կանչեց խաբկանօք Պետրոս Գետադարձին, որ իսկոյն հասկացաւ Մոնոմախի խորամանկութիւնն և ձեռնադրեց Խաչիկ Բ-ին, ասելով. «գուցէ այլ ոչ թողուն զիս հռոմք ելանել յարևելք»։ Կանչեցին և Խաչիկ Բ-ին և ամենայն միջոցներ գործ դրին նոցա գրաւելու, գերելու, ստրկացնելու, նոցա որոնք միայն Աստուծոյ ծառայք էին և են։ Նա ջանացաւ աղքատացնել հայրապետութիւնն, որպէս զի թուլանայ. բայց մի՞թէ նորա զօրութիւնը նորա առաձեռն հարստութեան մէջ է։ Չյաջողուեցան այդ մերթ խուժադուժ, մերթ շողոմ դաւուղամերը։ Առաքելոց այդ հետևող և արթուն հովուապետք հասկացան իւրեանց հաւատարմութեան փառաւորութիւնն և. ամենայն ինչ պատրաստի պահեցին զոհելու այն ամենայնի համար, որոնց համար տասնեակ դարեր անթիւ և անհամար գանձեր և արիւն են զոհուել։ Սակայն այս անգամ Բիւզանդ արդէն անօրինութեան վերջին ծայրին էր հասել. նա լրբացաւ, և անարգ խաբէութեամբ խորտակեց Բագրատունեաց հզօր պետութիւնն և ապա սկսաւ կաթուղիկոսութիւնն ևս վտանգել և ուժով նորա աստուածահաստատ գոյութիւնն արգելել. արգելել այն գահն զոր Քրիստոս ինքն է ամբարտակել և զոր խորին հեռատեսութեամբ պաշտել և ամրացրել էր հայոց հռչակաւոր քաղաքագէտն Տրդատ. արգելել այն եկեղեցու գլխաւորանն, որի համար հայք ամենայն անձնազոհութեամբ ի պատե-

[1] Ցարք. մատ. ի յիշեալ կանոնագրքում գտնում ենք և ճառ մի «Անանիայի Հայոց վարդապետի սակս անխտիր հաղորդելոյն Ցունաց»։

բազմ էին շահատակել։ Եւ ինչո՞ւ էին արգելել ջանում. «զի անտերունչք՝ ասեն՝ եղեալ, լիցին ի կրօնս մեր դարձեալ». ողբերգում է ի խորոց սրտի հառաչելով Ներսէս Շնորհալին (Վիպաս. 544. Սմբ. 60. Ուռ. 164 եւայլն)։

Միւս կողմից եւս շարունակեցին Հայոց քաջ իշխանները բնաջարձ անել և էլ որն ասեմ, «զի առաւել բարձրացաւ ծուխ անօրէն գործոց նոցա քան զՍոդոմայ և զԳոմորայ» (Ուռ. 139.)։

Եւ «ով կարող է պատմել զանցսն որ անցին ընդ քրիստոնեայքն ...ի չար ազգէն Յունաց, որ ըստ իւրեանց չար և անբարի բնութեանն խաւար ածեն Հայոց ազգին», ասում է վշտացած Հայոց միակ աշխարհական պատմիչն Սմբատ սպարապետ։ Բիւզանդացիք, գրում է նա, «քակելով անհետացրին Հայոց աշխարհից յաղթող թագաւորներին, որոնք արիական ջանքով հալածում էին անօրէնների զնդերն, ինչպէս բազէն կաքաւների երամներն, իսկ փոխանակ նոցա «կուսակալք և զաւառապետք զկլերաց սահմանեցին»։ Իսկ եթէ Հայոց մէջ քաջ զօրական էին գտնում, աչքերը հանում էին և ինքեանք «որպէս տկար շունք՝ որ չկարեն պահել զհօտ ի գայլոյն՝ այնպէս փախչէին և թողուին զաշխարհն՝ թշնամեացն՝ յաւար և ի գերութիւն... և փոխան արանց պատերազմողաց զկլերսն ոռոգէին. և սկսան ուտել և ըմպել և սուտ հաւատոյ քննութիւն առնել[1] ընդ ամենայն ազգս. և բարձրամիտ հպարտացեալ՝ զամենայն ազգս քրիստոնէից առեցին զէտ անհաւատ... և փոխան զինուք զթշնամիս հալածելոյ, զլեզուս սրեալ՝ զազգս քրիստոնէից սկսան

---

[1] Ներսէս Մեծի Վարքի Ժ. դարի աւելաբանութեան մէջ ասուած է թէ Յունաց կայսրները չեն հոգում պատերազմաց «այլ զհարկաց միայն, և զփոխելոյ կարգաց և զքննութեան հաւատոց, զոր հիմնեցուցին առաքելաջան ժողովքն երեք. և քակտեսցեն զբազումս ի հաւատոց քրիստոնէից. և այն լիցի ջան նոցա և վաստակ:» Սոփ. Զ. 91:

աղձատել. և զիւրեանք միայն կարծեն քրիստոնեայս լինել...» (տես. և Ուռ. 120)։

Տուկիծ յանդգնեցաւ մինչև անգամ Սենեքերիմ Արծրունու որդոց Ատոմ և Աբուսահլին ստիպել վերամկրտուիլ, ըստ որում և գիր իմն կնքեց ոմն Յակոբ Քարափնեցի վարդապետի հետ. սակայն եկաւ Գագիկ հաւատարիմ հայրենասէրն և պատռեց կայսրի առաջ այն չարեղայի թուղթն և մինչև անգամ Ջատագովական թուղթ մի գրեց առ նա (Ուռ. 192. Սմբ. 63.)։

Միւս կողմից եւս Հայրապետական թափուր աթոռը բազմապատիկ հոգ պատճառեց հայ իշխաններին. միացաւ և զինուեցաւ Գագիկ Աբասեան և բուռն ձեռքով օգնութեան հասաւ անտերունչ հայ ազգի աստուածային պահապանին. նա ընտրեց արժանաւոր գահակալ՝ Մագիստրոսի որդուն Վահրամին, որ օծուեցաւ Գրիգոր Բ. 1065-ին։

Խաչիկ Բ. եւս նորա հովանու տակ էր ի Թաւբլուր (Ուռ. ԻԵ.). իսկ երբ Գագիկ 1064-ին փոխադրեց իւր գահն ի Ծամնդաւ (ՁԸ.), անդ նստաւ և Գրիգոր Բ։ Սա իշխան և Գրիգոր Լուսաւորչի ցեղից, ջանացաւ հայաստանեայց եկեղեցին պայծառացնել։ Մինչդեռ Յոյնք ձգնում էին կաթուղիկոսութիւնը վերանցել, հայք հակառակն աշխատում էին, ուրտեղ ապահովութիւն կար, փոքր կաթուղիկոսներ նստեցնել։ Գրիգորի մի ձեռնադրուածը նստում էր ի Հոնի, մի ուրիշը Մարաշում։ Գրիգոր մի փոխանորդ եւս օծեց յԱնի, Բարսեղ եպիսկոպոսին (Ուռ. ՃԷ. ՃԶԷ. Վար. ԿԶ.)։ Այսպիսով թշնամիք խաբուեցան իւրեանց յոյսերի մէջ։ Գրիգոր մնալով ի Ծամնդաւ 1 տարի (Վար. ԾԸ. Ուռ. ՂԹ.), ձեռնադրեց Գէորգ վարդապետին կաթողիկոս և ճանապարհորդեց. բայց վերստին դառնալով, մնաց մի կարճ միջոց ի Մուտառասուն (Ուռ. ՃԵ.) և ապա անցաւ ի Կարմիր վանք, Տաւրոսի

վրայ, որտեղ ապահով էր Գող-Վասիլ հզօր իշխանի սրի ներքոյ։

Սա առաջինն Հայաստանեայց եկեղեցու Հայրապետտաց մէջ, որ հասկանալով իւր եկեղեցու համաշխարհային նշանակութիւնն, սկսաւ աշխատիլ այլ եկեղեցեաց ծանօթանալու, առաւել նկատելի անելով նորա փառաւորութիւնը։ Նա առիթ առնելով իւր Թարգմանական գործունէութիւնը ճանապարհորդեց 1075-ին ի Կոստանդնուպօլիս, որտեղ մնաց երկար իւր քեռորդի Գրիգոր Գ.-ի հետ. այնտեղից եկաւ դէպի Երուսաղէմ և 1086-ին եկաւ նա Եգիպտոս, որտեղ և կաթուղիկոս ձեռնադրեց իւր քեռորդուն (Ուռ. 254. Կիր. 53. Վարք Շնորհալու 25). այնտեղ հանդիպեցաւ մեծ ժողովի և բանավէճ ունեցաւ նոցա Կիւրեղ պատրիարքի († 1092) հետ հաւատոյ խնդրի վրայ, ըստ որում «բազում հոգևորականաց ներկայից իւր ուղղափառ խոստովանութիւնը»։ Այս ի հարկէ մեծ ազդեցութիւն ունեցաւ նոցա վրայ, որոնք կատաղի հակառակորդ էին քաղկեդոնականաց, յոյժ ուրախացան որ հզօր դաշնակից ունէին և ահա հին անուղորդ եկեղեցիքը ձեռք ձեռքի տալով նկատեցին իւրեանց վեհութիւնն և կրկին ու կրկին քաջալերուեցան ճշմարիտ հաւատոյ այն առաքելական ս. աւանդի պահելու ամրութեան մէջ։ «Այդօր, ասում է Տենիսի Միքայէլ եպիսկոպոսն, ամենքին յայտնուեցաւ որ Կոպտերը, Հայք, Ասորիք, Եթովպացիք և Նուբիացիք մի են ուղղափառ հաւատով, զոր հին սուրբ հայրերը միանգամայն խոստովանել էին և զոր մերժեցին Նեստոր, Լէօ և Քաղկեդոնի ժողովը։ Թէև մոռացուած պիտի եղած լինի նաև արևմուտք գնալու, առհայն չարաւ. Թուի թէ արևելքում ցրուած Հայ իշխաններն էին Հայոց կաթուղիկոսաց այցելութեան կարօտում։ Այսպէս Գրիգոր Վկայասէր իշխան Հայրապետը մէկ նոր քայլ արաւ, Հայաստանեայց

եկեղեցու գործունէութիւնն ընդլայնելով. որդէն ի հնուց Ասորիք հողի և կենդանութիւն էին առնում Հայերից, որպէս վկայում է Միքայէլ Մեծն իսկ, ասելով. Հայք «բազում եղեն մեզ նպաստամատոյցք և ձեռնտուք, և դրեթէ նոքօք կարացաք աճել այն ամենայն անցից որք եկին ի վերայ մեր և եղեն մեզ սիւն և հաստատութիւն. և ուխտ խաղաղութեան և դաշն սիրոյ է ի միջի մերում մինչև յաւիտեան»: Իսկ այժմ Հայոց կաթուղիկոսը, թէև պատահաբար, ձեռք է մեկնում մինչև իսկ Ափրիկէի հեռաւոր կողմը:

Հարկաւ Գրիգոր ձեռք կարկառելով առ այդ հալածեալ եկեղեցիք, կամենում էր դաշնակիցք գտնել Հռոմայ անդադրում անօրինութեանց դէմ. յիրաւի նա սէր հաստատեց Ափրիկեան և Ասորոց ուղղադաւան եկեղեցեաց հետ, իւր նախնեաց հետևելով, սակայն չկարեցաւ ամուր պատնէշ մի կազմել Թշնամու յարձակմանց դէմ: Նա առաւել ևս հալածուեցաւ Ալեքս Կոմնենոս կայսրի օրով, որպէս ինքն իսկ գրում է իւր յիշատակարանի մէջ («Վարք Ոսկեբերանի» Թարգմ.) և ապաստանեցաւ ի Սևաւլեռան 1102—3 Թուականին (Ուռ. 360. Վարք. Շնոր. 25. Շնորհ. Վիպաս.): Նոյն ժամանակ Ուռհայեցիք սովորական հալածանաց ենթարկուելով, Թուղթ գրեցին առ նա և յայտարարեցին իւրեանց Թշուառ վիճակը: Զնայելով իւր նեղութեանց, Վկայասէր գիտէր որ ինքն էր իւր հօտի աներկիւղ պահապանն, ուստի և բնաւ. չվհատեցաւ, այլ գրեց նոցա քաջարութեամբ. «Թէպէտ և ես խրախոյս տամ ձեզ և քաջալերեմ համբերել ամենայն իմաստութեամբ, և ո՛չ իբրև վատասրտեալ հովիւ արտաքոյ Թեամ կրիցն, այլ կամաւորութեամբ ես մահակից ձեզ գտանիցիմ յամենայն գործս և ի տեսակս տանջանաց...» ըստ որում ոչ Թէ իբրև վատ հովիւ յետ է քաշւում և իւր հօտը Թողնում անօգնական, այլ գի-

տենալով իւր եկեղեցու ճշմարտութեան արժանիքը որպէս վեհարի հովիւ, կանգնում է իւր հօտի համար և եթէ անկարանում է պաշտպանել, չէ զլանում նորա հետ տանջուելու։ «Պատրաստ կամք, գոչում է նա անվեհեր, յամենայն իրս տալ պատասխանի զոր ինչ և հարցանիցեն, բայց ի պատեհ և ի դիպող ժամու. և եթէ տանջանօք է և կամ բռնութեամբ և ոչ յայնմանէ յուրաստ կամք»։ Սակայն այդ հալածանքն առաւել ևս նորան ուրախութիւն է առթում, ըստ որում նա այդ նշանակ է համարում իւր վսեմութեան և ճշմարտութեան, վասն որոյ և հրճւում է, ասելով. «գոհանամք զԱստուծոյ յամենայն ժամ, որ մինչև ցայժմ յանաստուած հեթանոսաց տէրանցն զանգիտէաք և դատէաք, և այժմ ի քրիստոնէիցդ այնպէս...» Այնու հանդերձ նա չէ հպարտանում, այլ իւրն, որ ճշմարիտն է, մեծանձնութեամբ սիրելով, չէ կորցնում իւր խոնարհութիւնը, չի ասում. «ոչ յարուցեալ ընդ առաւօտն և զհետ եղեալ մոլորութեանց, և կամ բարձրացեալ երեսօք հպարտացեալ և ամբարտաւանացեալ իբրև զհոռոմ ազգն»։

Այն անձն որ փախչում է կաթուղիկոսական պատուից, այն անձն որ մերժում էր հարիւրաւոր իշխանների թախանձանքն և չէր ուզում հայրապետական աթոռ բարձրանալ, այն անձն էր որ ի սէր իւր հալածեալ ազգի հովուապետութեան ցուպն առաւ, և նա անտանելի հալածանաց մէջ հաւատարիմ մնալով իւր սուրբ կոչման, մաքառեց յարաժամ և վերստին պանդխտելով, օտարութեան մէջ կնքեց իւր բազմաշխատ կեանքն (ի Քեսուն, Գող-Վասիլ իշխանի մօտ 1108)։ Սակայն իւր 40 ամեայ կաթուղիկոսութիւնից յետոյ, զգալով իւր վախճանը, կանչեց Բարսեղ հաւատարիմ կաթուղիկոսին, երաշխաւորեց նորան իւր աթոռն և իւր քեռորդի, Ապլիրատ իշխանի, որդիքն, իւր ապագայ յաջորդք։ Սրտով խնամեց

Բարսեղ իւր աթոռն ու Գրիգոր Գ.-ին և Շնորհալուն, գնաց առ Մելիք Շահ «զերկիւղ մարդկան ի բաց մերժեալ», գահընկէց արար հակաթոռ Թէոդորոս Ալախոսիկին և ապահովեց իւր պատանի յաջորդին։ Սա ևս ճանապարհորդելով, հիւանդացաւ ի Շուղր, հոգին ի բռին կանչեց Գրիգոր Գ.-ին, յանձնեց նորան իւր կաթուղիկոսութիւն և անցաւ իւր պապերի կարգը 1112-ին։ Գրիգոր Գ. օծուեցաւ 1113-ին ի Կարմիր վանք։ Սա ևս արիաբար ժողով գումարեց և աւելի քան 2500 եկեղեցականաց ներկայութեամբ նզովեց Աղթամարի հակաթոռ Դաւթին (Ընդհանր. 65.)։

Այդ ժամանակներն արդէն Հայք ուշադրութիւն դարձրին դէպի արևմուտք, որ ԺԲ դարու սկզբէն անձնաղոհ խաչակիրներ կամ արկածախնդիրներ էր տալիս սուրբ երկրի ազատութեան համար։ Որչափ խանդիձողանձ էին այդ մարդիկները, նոյնչափ մեծ էր նոցա վրայ յոյսը. 1099 թուին Երուսաղէմ հասաւ մէկ «ազատարար» հոսանք, որ արգաւանդ հող գտաւ սուզուելու համար. դորան հետևեցաւ երկրորդն 1147-ին, բերաւ իւր հետ երրորդն 1189-ին, ապա չորրորդն 1217-ին ևայլն, որոնք վերջ չունեցան մինչև ԺԳ դարու վերջերը։ Քանի անկանոն և խառն ի խուռն էին այդ խուժադուժ ամբոխի արշաւանքներն, այնքան որոշատենչ և նախորոշ էին նոցա կենդանութիւն տուող և ուղեկցող հոգեկրկիտների գործունէութիւնք։ Հռովմայ արքայատենչ քահանայապետք էին խաչակրաց արշաւանաց ընդհանուր հրամանատարք և նորա կարդինալք ու վանականք էին այդ բազմազգունակ տարրերի շեղջակուտողք, առաջնորդողք և երկրի անկիւնները բըռնողք։ Նոցա յարձակմունքներն այնպէս յանկարծակի էին, որ սկսուեցան արևելքում առասպելներ և մարգարէութիւնք հեղինակուիլ նոցա ներկայի և ապագայի վրայ, ըստ որում գերութեան մէջ ծփող ժողովրդի մտքում

նկատուեցան, որպէս Քրիստոսից առաքուածներ, որպէս քրիստոնէութեան համար զոհուողներ, այսինքն սրբեր, քրիստոնէութեան նահատակներ, առաքինի աստուածասէրներ եւայլն։ Ցիրաւի, սուրկութեան մէջ ընկնող ժողովրդի համար կարող էր արդեօք առաւել մեծ երկնաւոր պարգեւ լինել քան ազատարարը, կարող էր առաւել սրբութիւն եւ պաշտելի առաքինութիւն լինել, քան ի սէր խաչին կռուողն ու փրկողը։ Նոքա սիրում էին, նոքա փառւում էին, եթէ մինչեւ անգամ ամենադաժանեայ չարագործները լինէին, ողջագուրւում էին որպէս հրեշտակներ։

Հայք եւ մի կողմէն հեթանոսներից նեղուած, միւս կողմէն հոռոմներից հալածուած, ամենայն օգնութիւններ հասցրին նոցա, որպէս ապագայ նիզակակցաց։ Նոքա էին խաչակրաց կերակրողն ու նպարաւորը, նոքա էին առաջնորդողը եւ հանգուցանողը, մանաւանդ ի հեծուկս Յունաց հրապարակապէս իւրեանց սիրոյ արտայայտութիւն տալով, նոցա բարեկամացողը։

Հարկաւ Հայոց եկեղեցականք եւ անբաժան էին իւրեանց հօտից, ըստ որում Հայ իշխաններին մշտադէտ պահապան լինելով կաթուղիկոսք սկսան նոյն քաղաքականութիւնը վարել։ Եթէ Հայոց կողմից բարեկամական ցոյցերը շատ աննշան էին, խաչակրաց կողմից խոր եղան արձագանքներն, ըստ որում եւ բարձր տեղ բանեցին նոցա աչքում Հայոց Հայրապետք, որպէս առաքելական յաջորդք արեւելքում, այնպէս որ նոցա խօսքն ու գործն եւս նոյն իսկ օտարաց առաջ պատկառելի տեղ բռնեցին։ Նոքա նկատուեցան որպէս վերագոյն վարչապետներ արեւելքի քրիստոնեայ աշխարհում[1]։

---

[1] Գուլիէլմոս Տիւրոսի եպիսկ. կոչում է Գրիգոր Գ.-ին. «ծայրագոյն քահանայապետ», «գլուխ ամենայն եպիսկոպոսաց Կապադովկիոյ, Մարաց, Պարսից և երկուց Հայաստանեայց, վարդապետ գերազանց, որ կոչի կաթուղիկոս». «Յաղագս պատերազմաց սրբոց» XV, 18։

Այդ ժամանակները Լատինք օգտուելով խաչակրաց զօրութիւնից, արքեպիսկոպոսութիւնք էին հաստատել յԱնտիոք և յԵրուսաղէմ, սակայն Հռովմայ կողմից մեծ ջանք էր հարկաւոր նոցա առկախումը պահել: Երբ Անտիոքայ առաջին արքեպիսկոպոսն Բեռնհարդ 1135—36-ին մեռաւ, ժողովրդի կամքով և ընտրութեամբ աթոռ բարձրացաւ ֆրանկ մի Ռադուլֆ. սա տեղն ամրացնելուց յետոյ չկամեցաւ Հռովմայ գերիշխանութիւնը ճանաչել. զի իւր աթոռն ևս առաքելական էր, այլ և Պետրոսի աթոռ էր կոչւում, մինչդեռ Հռովմ նոյն Պետրոսի անուան տակ էր աւետարանն իւր քմահաճութեանց խաղալիկ դարձնում: Ռադուլֆին հետևեցաւ անմիջապէս և Երուսաղէմի արքեպիսկոպոսն Ֆուլխէր: Մինչդեռ Հռովմ երկպառակուած էր հակաթոռների պատճառով, Ռադուլֆ և Ֆուլխէր չկարեցան իշխանաց հետ վարուիլ և վտանգուեցան:

Ռայմունդ իշխանը սկսաւ Ռադուլֆին հալածել, սակայն երկար աստանդութիւնից յետոյ վերջինս վերստին իւր տեղը բռնեց: Այդ ժամանակ եկաւ Հռովմ պատուիրակ Պետրոս Ռադուլֆի հակառակորդ եպիսկոպոսաց գրգռմամբ, սակայն ճանապարհին մեռաւ. ապա նոյն եպիսկոպոսաց գրգռմամբ եկաւ Ալբերիկ կարդինալը: Սա իրողութիւնն իրապէս հետազօտելու համար հրաւիրեց 1139-ին[1] եղելութեան ծանօթ անձանց յԱնտիոք և ժողով գումարեց, բայց Ռադուլֆ չեկաւ, իսկ ժողովրդականաց մի մասն ի նպաստ նորան էր խօսում: Ժողովը հրաւիրեց նաև Հայոց կաթուղիկոսին[2] և երկար գեղերանքից

---

[1] Սոյն տարին Իննոկենտ B. գումարեց Լատերանի երկրորդ ժողովը հակաթոռութեան պատճառով. Նա մինչև իւր մահը (1130+1143) խառնուած էր կայսրների կռիւների մէջ:

[2] Ներս. Լամբր. ևս յիշում է «մեծն յԱնտիոք ժողովն եղեալ, խնդրօղ սոցա արագ նղեալ. ուր հանդիսիւ ի ձայն խօսեալ, ունկն դնելով նոցա նուաճեալ»:

յետոյ, վասն զի Ժողովուրդը գրգռուած էր պատուիրակին դէմ և եթէ Իշխանաց պաշտպանութիւնը չլինէր, չպիտի պրծնէր կատաղած ամբոխի ձեռքից, պաշտօնանկ արաւ Ռադուլֆին և բանտարկեց։ Ռադուլֆ փախաւ ի Հռովմ, ուրտեղ և Թունաւորուեցաւ։ Այս Հռովմայ պատուիրակն Ալբերիխ գնաց դէպի Երուսաղէմ, ուրտեղ Ֆուլխէր արդէն յետ էր կացել իւր մտադրութիւնից, և մնաց մինչև 1140 Թուի զատիկը։ Նոյն Ժամանակ Գրիգոր Գ. Ճանապարհորդեց դէպի Երուսաղէմ և եպիսկոպոսներից սիրալիր ընդունելութիւն գտաւ մէկ մասնաւոր կոնճառում; Սիոնի եկեղեցում և բարեկամական խօսակցութիւն ունեցաւ. Գրիգոր Գ. այսպիսի հանդիսաւոր յարաբերութեանց դիմեց մանաւանդ ի հեճուկս Հոռոմոց, որոնք դեռ 1137 Թուին մանելով ի Կիլիկիայ տակն ու վրայ արին, աւերեցին «զքաղաքս վանորայս և զեկեղեցիս. և զնշանս տերունականս խորտակէին, և անհնարին հարուածս ազգի մերում հասուցանէին քինաբար» գրում է Շնորհալին, այլ և Հայոց գրչագրները, Ս. Գրքերն անգամ այրում էին հեթանոսաբար։

Երբ Ճօսլինն իշխանի որդին և նորա մայրը մենակ ապրել չուզեցան ի Հռոմկլայ, ծախեցին այդ դղեակը Գրիգոր Գ.-ին, որ և 1150-ին վերջնապէս ամրացաւ անդ Շնորհալու հետ։

Ըստ որում, որպէս յետոյ էլ պիտի տեսնենք, Հայաստանեայց աստուածային աթոռին վիճակուած էր գրեթէ ամբողջ Հայաստանը պտտելու և նորա անկիւնք որբագործելու։ Այստեղ ևս հանգստութիւն չունեցան, ըստ որում Շնորհալին գրում է 1151 Թուին.

«...Նեղիմք յանօրինաց
Եւ յարտաքին չար գազանաց,
Եւ ոչ նուազ՝ ի պրժանաց
Ի սուտանուն քրիստոնէից»...

Նոքա օգնական չունէին և միայն Աստուած էր յոյսն ու մխիթարիչը, այդ տառանձնացած խորթակեցիկ անկիւնում.

«Յորոց Փրկիչն մեր կենաց
Մինչև ցայսօր ամբողջ պահեաց
Որք և յայտնի ժամանակաց
Յանձն եղիցուք նորին կամաց...» (Բան հաւատոյ.
225. «Ընդհ.» 421.)։

Փրկիչն էր պահել Հայոց, Փրկիչը պիտի պահէր և յաւիտեան։ Այդ յուսով էին հաւատոյ քաջ ախոյեանն և նորա արբանեակը ժայռերի մէջ պատսպարուել Հայաստանեայց եկեղեցին, մայր աթոռն ու հօտը պահելու համար։ Նոքա դիտում էին այդ վիճակում Հայ իշխանաց գործը Կիլիկիոյ բարձանց վրայ և ահա Թորոսի և Օշինի վէճերը նոր հոգ պատճառեցին այդ ժայռակեցիկ արծիւներին։ 1165-ին գնաց Շնորհալին դոցա հաշտեցնելու. և իւր քաղցրաբարոյ ներկայութեամբ այնպիսի սէր ներշնչեց Թորոսի սիրտն, որ կարճ միջոցից յետոյ խնամեցաւ խակ Օշինի հետ և իւր աղջիկը տուաւ նորա որդուն՝ Հեթումին։ Շնորհալին գնաց ի Լամբրոն Օշինի հետ և ճանապարհին հանդիպեցաւ ի Մամեստիա Մանուէլ կայսրի (1143—80) փեսայ Ալէքս Աքսուխուսին։ Ալէքս զանազան չարանիւթ բանսարկուներից բարուրանք էր ստացել Հայոց եկեղեցու դէմ, ըստ որում և փափաքեցաւ Շնորհալու կարծիքն իմանալ. վերջինս ցոյց տուաւ որ այդ ամենը զրպարտութիւն էր և բացայայտեց Հայաստանեայց եկեղեցու ուղղափառութիւնը։ Ալէքս խնդրեց նորանից այդ գրաւոր տալու, վասն որոյ և Շնորհալին գրեց և մի առ մի հերքելով թշնամեաց զրպարտութիւնք, դրոշմեց Հայոց դաւանական կէտերը։ Նա իւր հեզաբարոյ բնոյթով և իմաստալիր գրութեամբ այնպէս գրաւեց Ալէքսին, որ վերջինս մեծ պատուով ուղարկեց նոր Օշինի հետ ի Լամբրոն։

Շնորհալին վերադարձաւ տուն. քանի մի ժամանակից յետ Ալէքս ևս գնաց ի Կ. Պոլիս և ամենայն ինչ պատմեց կայսրին։ Մանուէլ արդէն իւր գահակալութեան տարիներից զբաղած էր դաւանաբանական հարցերի և քանի մի ժողովներում վճիռ էր տուել և վէճերը վերջացրել. նորա մէկ մեծ հոգն էր այդ շրջանում հին Հռովմը Նոր-Հռովմայ հետ միացնել. Հռովմայ քահանայապետք խաչը թողած, սուր էին ձեռք առել, սակայն կրօնաւորի քօղով և ահա կրօնի միացմամբ պիտի աջողէր Մանուէլին իւր պետութիւնն ընդարձակելու։ Նա երկար բանակցութիւն ունեցաւ Հռովմայ Ալեքսանդր III-ի (1159—81) հետ և երբ գործը մնաց ժողովին, միտքը դարձրեց և յարևելք և հրաւիրեց նաև Գրիգոր Գ-ին Շնորհալու միջոցով այդ նպատակին ձգտելու և մասնակցելու, 1167 թուին սեպտեմբերին։ Մանուէլ ուզում էր հաւատացած լինել և հաւատացնել, որ ազգերն ոչ միայն ի մի հաւատ պիտի միանան և մի հովուից—Քրիստոսից հովուին, այլ և ի մի փարախ տաւաղեն։ Առ այս իբր թէ Աստուած մանաւանդ իւրեանից է պահանջում հաւատալու։ Ոչ պակաս պիտի և հայրապետք հոգան, նկատում է Մանուէլ, զի նոքա ս. Գիրքը ճանաչում են. և յիշում է որ իբր թէ Ներսէս Ալէքսի Աքսուտի հետ փափաք է փոխանակել եկեղեցեաց միութեան վրայ, զոր և Մանուէլ իբր թէ կարդացել է Շնորհալու նամակում։ Այս երես առ երես տեսլուց խօսք է անում և առաջարկում, ընդունել ինքեան իբրև միջնորդ եկեղեցեաց միութեան իրագործման, վասնորոյ և հրաւիրում է Շնորհալուն ի Կ. Պոլիս։

Գրիգոր Գ. արդէն մեռած էր, առաջուց իւր հայրապետութիւնը Ներսէս Շնորհալուն յանձնած լինելով (1165+66), որ մի ճառով պարզեց թէ որպիսի ջերմեռանդութեամբ և երկիւղածութեամբ բարձրացաւ նորա

նման սուրբ անձն այն հինաւուրց նուիրական աթոռը[1]։ Շնորհալին բացէ ի բաց մերժեց այդ հրաւէրը, նախ անխաղաղ հանգամանքները պատճառ բերելով և երկրորդ որ եթէ Գրիգոր Գ. եւս կենդանի լինէր «զիա՞րդ կաթիլ մի գիտութեան հնար էր առ համատարածն ծով իմաստութեան համարձակել մերձենալ ի հարցումն և ի պատասխանիս», որով իւր Կ. Պոլիս գնալու հնարաւորութիւնը հանեց արմատաքի հռոմոց մտքից։ Հարկաւ նա յայտնեց նախապէս իւր ուրախութիւնն, որ կայսրը հակուած է՝ եկեղեցիք միաբանեցնելու, ընդ նմին գրեց ամենայն մանրամասնութեամբ հայաստանեայց եկեղեցու հաւատքն և առանձնայատկութիւնք և ապացուցելով դոցա ուղղափառութիւնն, առաքեց նորան ի պատասխանի։ Ժողովը գումարուեցաւ ի Կ. Պոլիս 1168 թուին հռովմայ կարդինալաց և հռովմայ պատրիարք Միխայէլ Անխիալուսի ներկայութեամբ, սակայն միաւորութիւնը գլուխ չեկաւ։

Մանուէլի նպատակն էր օգտուիլ Շնորհալու քաղցրաբարոյ բնոյթից և բան մի գլուխ բերել, բայց այդ անյաջող անցաւ. ըստ որում նորա պատասխանն էլ մոռացութեան տուաւ, թէև չմոռացաւ հայոց...։ Երբ հռովմայ հետ բանակցութիւնն ապարդիւն անցաւ և երկու հնարիմացներն իրար խաբել չկարեցան, ամբողջ երեք տարիներից յետոյ, այն է 1170 թուին մայիսին Մանուէլը կրկին միտքը դարձրեց դէպի հայոց, ըստ որում կանոնաւոր բանակցութիւն չունեցաւ Շնորհալու հետ և իսկոյն վերջ չտուաւ, զի մինչդեռ հռովմայ հետ միաւորութեան գործը կախուած էր գերիշխանութեան, բռնապետութեան, աշխարհային ձոխութեան հարցերից, հայոց հետ ամենայն ինչ հաստատուած էր ուղղափառ դաւա-

[1] Թուղթք. ս. Էջմիածին, 1865. էջ. 411—426։

նամքի, աստուածային բանի վրայ, որ ոչ մի խաբէութեան տեղիք չպիտի տայ և գիւղի մի շարժումն ահագին հետևանքներ, փոփոխութիւններ պիտի բերէր։ Մանուէլ գրեց վերստին 2 տարի յետոյ 1172-ին դեկտեմբերին, ի նկատումն Շնորհալու 1170-ի հոկտեմբերի թղթին։ Շնորհալու գրած թղթերն իսկ կազմում են ամբողջութիւն մի. այժմ տեսնենք թէ ինչպէս վարուեցաւ այդ թղթագրութիւնն և ինչ գրեց Շնորհալին այն ձգնարանից, ուստի բարբառում էր որպէս կաթուղիկոս առ իւր հօտն. «եմք իբր զայծեամն յորսորդաց և ի շանց փախուցեալք՝ ի քարանձաւս յայս բնակելով» (Ընդհ. 9). և կամ (էջ 421). «ոչ միայն յարտաքնոցն որք հակառակ են հաւատոյս՝ ներեալ տագնապիմք ըստ մարմնոյ... այլ և յանուամբ քրիստոնէից. նաև յորոց կցորդ են կարգի մերոյ և ձևոյ, որք յաղագս փառամոլ ախտի հակառակ գտեալք Աստուծոյ և աստուածայնոյ աթոռոյս ի սկզբանէ հայրապետութեանս տեառն մերոյ մինչև ցայժմ՝ որպէս ծանօթ է ամենեցուն, և զաղատեալս ի Քրիստոսէ զեկեղեցի սուրբ ընդ հարկաւ ալարին անօրինաց՝ կամաւ (!) և ոչ ի հարկէ. որոց տալոց են զվրէժ հատուցման այրմամբ գեհենոյն՝ առաւել քան զայլոց մեղանաց (!)»։



## ԺԴ.

> «Հաւատ ծածկեալ կամ կեղծաւորեալ ոչ է հեռի յանհաւատութենէ»:
>
> ՇՆՈՐՀԱԼԻ.

> «Ինչ և իցէ, երկնչիմ ի Յունաց, նա զի բաշխել ինչ կամիցեն»:
>
> ՎԻՐԳԻԼԻՈՍ.

---

*Շնորհալին սկզբունք մի վարսելով թէ. «որպէս ի մասունս մարմնոյ քան զամենայն պատուականագոյն և առաջին գլուխն է... այսպէս և յանդամս հոգւոյն՝ մեծ և առաջին իբրև զգլուխ՝ է հաւատոյն ճշմարտութիւն» (Ընդհ. II.), ամենայն ժամ չէ զլանում հաւատոյ իւրաքանչիւր խնդրի վրայ բացատրութիւն տալ, ըստ որում և իւր առաջին թղթում դնում է հայաստանեայց եկեղեցու դաւանանքն և յատկութիւնք ի հրապարակ «զբովանդակն պարագրելով հաւատոյ մեր ճշմարտութիւն և զեկեղեցւոյ կարգաւորութիւն ի հարցն սրբոց աւանդից ընկալեալ...» (էջ. 143)։ Նա ապացուցում է այդ հաւատոյ ուղղափառութիւնը հրաշալի քաջաբանութեամբ, չէ յարձակւում օտար դաւանանքի վրայ, սակայն չէ մոռանում յիշել ընդհանրապէս այն կէտերն, որոնցից իւր պաշտած եկեղեցին խորշում է. Նա հերքում ջրում է այդ կէտերն*

և փառաբանում է իւրը հաստատուն բացայայտութիւններով, բայց ազատամիտ խոհեմութեամբ անգիտանում է այն եկեղեցիք, որոնք դաւանում են և ընդունում իւր հերքած եղծած կէտերը։ Նա չէ ասում որ Հայաստանեայց եկեղեցին է միմիայն ուղղափառը. նա չէ ասում նաև թէ օտար եկեղեցիք չարափառ են. նա չէ ատում այլոց հրապարակապէս. այլ նա գեղեցկապէս ապացուցում Հայաստանեայց եկեղեցու առաքելական ուղղափառութիւնն, ընդ նմին և համեմատութեամբ հանդերձ հերքում է այն ամենն ինչ որ հակառակ է դորան և դնում է իւրն ամենայն մանրամասնութեամբ իւրաքանչիւրի առաջ քննելու և քննաբանելու հրաւիրելով բաղձացողին։

Սորա դեռ 1151 թուին իւր «Բան հաւատոյ» գեղագրօշմ գլութեան մէջ երգաբանում է իւր դաւանանքն ասելով.

Նոր այս խառնումն սքանչելի,
Աստուած ընդ մարդ բնութեամբ խառնի.
Ոչ էութիւնն փոփոխի,
Եւ ոչ ձևով կերպարանի,
Որպէս ասաց ժանտն Եւտիքէս՝
Թէ ոչ մարմին առ իսկապէս...
Եւ ոչ երկուցն միութիւն
Բաժանելով յերկու բնութիւն,
Եւ կամ յերկուս որդիս զմին,
Ըստ Նեստորի չարաբաստին...
Արդ յայսպիսեաց փախչիմք ի բաց,
Իբր ի քարբից թունաւորաց.
Հետևելով լուսոյ շաւղաց,
Ըստ ուղղափառ վարդապետաց.
Եւ դաւանեմք միութիւն,
Ոչ այլայլեալ այնու զբնութիւն.
Այլ նոյն Որդին, որ ի Հօրէ,

Եղև որդի առ ի մօրէ։
Եւ մի ասեմք բնութիւն այսու,
Ըստ խառնըմանն անճառելւոյ»։
«Ոչ ոմն անմահ ոմն մեռեալ.
Զի այս երկուք են բաժանեալ.
Այլ որ անմահ նոյն և մեռեալ,
Եւ որ մեռեալ, նոյն և մնացեալ»։

Սմին նման և Նշանախեց չշեղուելով իւր նախնեաց վարդապետութիւնից, գրում է մերթ ընդ մերթ Նարեկացու ոճով և իւր Թղթերին, ըստ որում և իւր «Բանք Հաւատոյ» կրկնում է և պնդում է. «մի բնութիւն ոչ շփոթմամբ ըստ Եւտիքեայ, այլ ըստ Կիւրեղի Աղեքսանդրացւոյ՝ եթէ «մի է բնութիւն բանին մարմնացելոյ»։ Եւ մեք յաւանդութենէ սրբոցն ասեմք զայս...»։

Ճարտարախօս է նա իւր արտայայտութեանց մէջ և զօրաւոր է իւր վայելուչ հարուածներով, զորոնք դիպողաքար յղում է առ իւր թշնամին։ Նա լայնաբանօրէն ապացուցելով հայաստանեայց եկեղեցու վարդապետութեան ճշմարտութիւնն ու հարազատութիւնը, պարզ է որ խորտակում է իւր թշնամուն, զի չէ կարող ճշմարտութիւն լինել փրկագործութեան խորհրդի մէջ. ճշմարտութիւնը մի է և եթ։ Իսկ նորա յառաջաբերած մոլար վարդապետութիւնք, որոնցից նա մահու չափ խորշում է, գլխաւորապէս երկուք են՝ շփոթմամբ մէկ բնութիւն և բաժանմամբ երկու բնութիւն ասուածը։ Շփոթումն է Եւտիքէսինն, ըստ որում նորա Քրիստոսի մէջ կորել է մարդկութիւնը. բաժանումն է կոչում այն վարդապետութիւնն, որ ասում է թէ անարգանքն ու թշնամանքը Քրիստոսի մարդկային բնութեան է վերաբերում, իսկ փառքն ու հրաշքն աստուածային բնութեան. չարչարուող մեռնողը նորա մարդկային բնութիւնն է, իսկ յառնող, հրաշագործողը նորա աստուածային բնութիւնը։ Եւ ակն-

յայտնի է որ այս քաղկեդոնական վարդապետութիւնն է. ասել է թէ՝ Ներսէս Շնորհալին, որպէս և առհասարակ Հայք ի հնուց անտի քաղկեդոնականութիւնը կոչում էին՝ վարդապետութիւն երկու բնութեան բաժանմամբ։ Եւ իրօք բաժանմամբ էին վարդապետում քաղկեդոնականք, ինչպէս տեսել ենք, ուրիշ բան է, եթէ բառապէս չէին շեշտում։ Անեերև բաժանումն է, եթէ մեռնող բնութիւնն այլ էր և յարուցողն այլ, և ոչ բնութեամբ միացեալն Քրիստոս մեռեալ և միանգամայն նոյն ինքն կենդանի...

Շնորհալին հիմն ի վեր տապալելով եւտիքականութիւնը, չէ ուզում նոյնպէս վարնել քաղկեդոնականութեան հետ. նա լաւ գիտէ հայաստանեայց եկեղեցու ապատամութիւնն, որ չէ անարգում այլազգեաններին և իւր ամբողջ գոյութեան ընթացքում չէ փորձել այլ եկեղեցեաց վրայ յարձակուելու, եթէ նոքա չեն սպառնացել իւր հօտին, ուստի և նա ջանում է չվիրաւորել իւր թշնամուն, թէև անուղղակէս հերքում է նորա դաւանանքը։ Նա գեղեցիկ նրբաքանութեամբ գրում է դէպ իւր առաջին թղթում. փոխանակ միանձնաւորութեանն, զոր դուք ասէք ի Քրիստոս, որ է ուղիղ և խոստովանեալ ի մէնջ, է և մերս մի բնութիւն ասելն զոյգ և նման, և ոչ հերձուածողական կարծեաց ադագաւ». այսինքն ուղղափառ է ասել մէկ անձնաւորութիւն ի Քրիստոս, որպէս և մենք խոստովանում ենք. սակայն ուղղափառ է և մէկ բնութիւն ասելը. «քանզի մի բնութիւն ոչ վասն այլ իրիք ասէ ի մէնջ, այլ յաղագս անբաժանելի և անճառ միաւորութեան Բանին և մարմնոյն»։

Այսու հանդերձ հոռոմք երկու բնութիւն էին ասում, ուստի և Շնորհալին գրում է «նաև յերկու բնութիւն ասելոյն՝ յորժամ ոչ վասն բաժանման լինելոյ ասացեալքն՝ ըստ Նեստորի, այլ վասն զանշփոթութիւնն ցուցանելոյ

ընդդէմ չարափառայն Եւտիքեայ և Ապողինարի՝ ոչ փախչիմք». ուրեմն երկու բնութիւն կարելի է ասել «յորժամ ոչ վասն բաժանման լինին ասացեալքն», բայց ինչպէ՞ս պէտք է ասել որ այդպէս լինի։ Շնորհալին իսկոյն և եթ հերքում է երկու բնութեան դրութիւնը, յարելով. «այլ զոր օրինակ հոգի և մարմին մարդոյ՝ են այլ և այլ բնութիւնք, վասն զի ոմն երկնային է և ոմն երկրային, ոմն երևելի և ոմն աներևոյթ, ոմն ժամանակեայ և ոմն անմահ, սակայն յետ միաւորութեանն՝ մի բնութիւն ասի մարդն և ոչ երկու, և ոչ մի բնութիւն ասելովն շփոթումն իմանի ի մարդն, կամ հոգի միայն կարծել զնա կամ մարմին միայն։ Այսպէս և Քրիստոս թէպէտ և մի ասի բնութիւն, ոչ շփոթման աղագաւ են ասացեալքն, այլ վասն անճառ միաւորութեանց երկուց բնութեանցն ընդ միմեանս. զի եթէ այսպէս ոչ էր, հարկ էր ապա ո՛չ երկու բնութիւն միայն, այլ և երիս բնութիւնս իմանալ Քրիստոսի, երկուս զմարդկայինս՝ հոգի և մարմին, և մի՝ զաստուածայինն»։ Հետևաբար մոլար է երկու բնութիւն վարդապետել ի Քրիստոս, զի այդ բաժանումն է մտցնում Քրիստոսի մէջ, ուստի և դիպողաբար գրում է. «բայց յետ միաւորութեանցն բարձան երկուութիւնք բաժանմանցն՝ ըստ սրբոց վարդապետացն ասելոյ» (130. 137)։ Հասկանալի է որ մարդեղութիւնից յետոյ չէ կարելի Քրիստոսի մէջ երկու բնութիւն ճանաչել, զի այդ երկուութիւն է, այդ բաժանումն է. ուստի և ասում է «եթէ միութիւնն վասն անքակտելի և անբաժանելի միաւորութեանն ասի և ո՛չ վասն շփոթման, և երկու բնութիւնն՝ վասն անշփոթ և անայլայլելին լինելոյ և ոչ վասն բաժանման, երկաքանչիւրքն ի սահմանի են ուղղափառութեան». սակայն Շնորհալին վերադոյն բացայայտեց և ապացուցից որ իւր մի բնութիւն ասածը շփոթմամբ չէ. իսկ երկու բնութիւն չէ կարելի ասել

մարդեղութիւնից յետոյ, ուրեմն մի բնութիւնն ուղղափառ է, իսկ երկու բնութիւնը չարափառ։

Նոյնն է երգում նա և «Բանի հաւատոյ»-ի մէջ.

Երկուս ասել դարձեալ բնութիւն
Վասն ի յերկուց գոլ միութիւն,
Չէ այս օտար ճշմարտութիւն,
Թէ չբաժանեն յերկուս զմին։
Բայց մեք այսպէս խոստովանիմք,
Աստուածայնոցն հետևիմք.
Եթէ հոգի, մարմին և միտք,
Որով մեղան ազգ մարդկայինք,
Էառ ի մէնջ Աստուածն բան
Եւ միացոյց բնութեամբ յինքեան.
Անմեղ արար զմեղանչական,
Զապականեալն՝ անապական...

Ընդ նմին և եղծում է երկու բնութեան վարդապետութիւնն ասելով.

«Զի որք երկուս բնութիւնս ասեն
Եւ ի յերկեակս բաժանեն,
Հարկ է յերիս գոլ զատանել,
Եւ կամ ի մին միաւորել,
Այս է յոգի և ի մարմին
Եւ ի բնութիւն աստուածային,
Եւ կամ զխառնումն մարդկայնոյն
Ասել հզօր քան զԱստուածոյն»։

Այսպէս և դեռ իւր առաջին դաւանագրութեան մէջ շեշտում էր. «յաղագս որոյ մոլորին որք ասենն թէ, այլ ոմն է որ չարչարեցաւ, և այլ ոմն՝ որ ոչ չարչարեցաւ» (124)։

Ցար և նման գեղեցիկ բանավարութեամբ ապացուցում է կամքի և ներգործութեան միութիւնը հայաստանեայց եկեղեցու պաշտական կարգերի և ծէսերի ուղղա-

փառութիւնն, այն է, բաղարջ՝ Հացով և անապական գինով պատարագելը, Ծննդեան և Մկրտութեան տօնի մի և նոյն օրը կատարելը, երեքսրբեան փառաբանութեան ի դէմս Որդոյ ասելը, և այլ քանի մի խնդիրներ, սակայն չէ մոռանում իւրաքանչիւր անգամ մեղմացնել իւր յարձակմունքն, ասելով «եթէ այսպէս և եթէ այնպէս՝ ի փառս Աստուծոյ կատարեսցին ևայլն»։ Որչափ նա ջանում է չվիրաւորել իւր հակառակորդին, այնու ամենայնիւ նա շեշտելով որ իւրաքանչիւր եկեղեցի իւր սովորութիւնն է պաշտպանում, առանց տեսանելի վիրաւորանք հասցնելու, անկման հարուած է տալիս իւր թշնամեաց ասելով. «Ճշմարտութեանն սիրողաց արժան է ոչ սովորութեան ծառայել որպէս ոգէս, և ոչ անիրաւութեամբ արդարանալ որպէս վիճաբան, այլ ի հոգևորական դրախտս յաստուածաշունչ գիրս շրջել մտօք և խնդրել ի նոցանէ զպտուղն ճշմարիտ, և ապա ճաշակել»։ Ըստ որում և մի առ մի հետևաբանում է յառաջադրեալ կէտերի ճշմարտութիւնն, որպէս յիշարկում է Հայաստանեայց եկեղեցին։

Այս է հրաշաբան հայրապետի հայրենի եկեղեցու ջատագովական եղանակը. սակայն նորան հրաւիրում էին միաբանեցնել եկեղեցիներն. այդ լաւ գործ էր, իսկ լաւ գործից խոյս տալը մեղք է, ուրեմն պէտք էր աշխատել լաւապէս իրագործելու, մանաւանդ որ ինչպէս մի կողմից այլադաւան Ասորիք էին դիմել առ Հայոց կաթուղիկոսն Հայաստանեայց եկեղեցու հետ միանալու մտօք, նոյնպէս և Հռովմ բանակցում էր կայսրի հետ. հարկ էր ուրեմն որ Բիւզանդ և Հայք ևս միաբանէին... Գտնել ևս անկարելի էր, զի, որպէս գրում է Գրիգոր Տղան, «յառաջ կոչէն զմեզ յոյնք միանգամ և երկիցս, արդ ո՞չ է պարտ արժանաւոր ընդդէմ գալ նոցա, կամ հաւանել կամ հաւանեցուցանել։ Եթէ երկու բնութիւն ասեն չարաչար,

ըմբերանեսցուք և յանդիմանեսցուք, եթէ դարձցին՝ ընկալցուք և շահեսցուք զեղբարս... Թէև ոչ այլ ինչ՝ գոնեա զմերս լաւութիւն և առողջութիւն ծանուսցուք նոցա»։ Այս գաղափարն էր որ ոգևորում էր Հայոց դէպի յառաջ, եռանդ էր տալիս նոցա, որպէս նախնեաց արժանաւոր քաջարի զինուորներ ցոյց տալ որ վարկպարազի չեն կռուել և մաքառել և անմտութեամբ չեն մեռել Հայաստանեայց եկեղեցու հաստատութեան համար։

Ըստ այս սկզբանց առաջնորդուելով, պէտք է նոյնպէս որոշել թէ ի՞նչ ճանապարհով էր կարելի գործը գլուխ բերել։ Շնորհալին այստեղ ևս չէ յապաղում. նա տալիս է կայսրին անհրաժեշտ հրահանգ. նախ՝ կայսրը պարտ է աշխատել ճշմարիտ հաւատքն որոշել և գտնել, որ թագնուած է որպէս պատուական մարգարիտ, զոր միայն իմաստուն վաճառականն է ճանաչել կարենում. դորա համար հարկ է որ կայսրը խոնարհուի իւր գահից և ոչ որպէս ահեղատարս բռնապետ գործի դիմէ, զի ահեղութեամբ պատերազմի են գնում միայն, որից բարձր նշանակութիւն ունի եկեղեցու խաղաղութիւնը. իսկ միացնել (երկրորդ) չէ կարելի բռնութեամբ, որպէս չէ կարելի ծռուած ծառը բռնութեամբ ուղղել, զի կկոտրուի. չէ կարելի և ո՛չ զձի խստերախ հանդարտեցուցանել բռնութեամբ սանձից՝ առանց ողոքանաց և զգաստացուցանող ձայնից»։ Ներսէսի ա. պարտ էր գտնել ճշմարիտ հաւատքն և Բ. ի նա միացնել քրիստոնէական եկեղեցու պատուական մասերն, որոնց մէջ պանդազան թշնամանքներ են մտել և կարօտ են հոգատարութեան, որպէս զի բժշկուին և առողջ միանալ կարենան։

Այս նպատակներին հասնելու համար տալիս է նա ծրագիր ևս, որին պարտ է կայսրը հետևել. նա պարտ է նախ հրամայել եկեղեցական դասին և ամբողջ ժողովրդին այլ ևս չհայհոյել, չթշնամանել Հայոց, չանարգել եկեղե-

ցիք, չանարգել որբութիւնք ինչպէս անհաւատք, այլ սիրով վարուել, վասն զի հայք ունենլով այդ հայհոյութիւնք, ինքեանք եւ բնականաբար նոյն հակառակութեամբ են ընդդիմադրում։ Երկրորդ, պատուիրել բոլոր եկեղեցիներում աղօթելու, որպէս զի միութեան գործն կատարման հասնի Աստուծոյ ողորմութեամբ, որպէս և ինքն է հրամայել Հայոց եկեղեցիներում անելու։

Իսկ այս ամենը յառաջ փարելու համար պէտք չէ որպէս տէր և ծառայ խօսիլ իրար հետ հաւատոյ խնդրի վրայ ճշմարտութիւնն որոշելու համար, այլ իրաւունք ունին համարձակապէս իրար պակասութիւնք յառաջ բերելու, զի աննիւթական շնորհիւ հաւասար են Քրիստոսի հաւատացեալք։ Այս այսպէս անելուց յետոյ պէտք էր ժողով գումարել և ամփիցուք երկոցունց բաժանեալ ազգաց՝ գլուխ անկեան և թագաւոր զմէն Քրիստոս՝ որպէս և է իսկ ճշմարիտ, և դատաւոր՝ զգիրս առաքելոյն և մարգարէիցն և զուգղապէս վարդապետաց եկեղեցւոյ, և մեք իւրաքանչիւր ոք որպէս դատախազք կալով առաջի թագաւորին և դատաւորացն՝ խօսեսցուք պատասխանաւ ընդ միմեանս և խնդրեսցուք իրաւունս ի նոցանէ, և որում բանի և գրոց վկայեն դատաւորքն ուղիղ և բաց կամաց նոցա լինել, զայն ընկալցուք անհակառակ. և զոր վկայեն առաքեալ եղեալ ճշմարտութեան, եթէ ի դաւանութիւն հաւատոյ և եթէ յաւանդութիւնս եկեղեցւոյ և եթէ առ մեզ և թէ առ ձեզ, յայնցանէ ի բաց հրաժարեսցուք երկոքեան։ Եւ այսպիսի գեղեցկաբարբառ խօսքերով ճակատ առած ելնում է և ապացուցել է հրաւիրում իւր հակառակորդին՝ ցոյց տալ իւր եկեղեցու պակասութիւնք և լսել իւրեանց եկեղեցունն աւետարանի և առաքելոց խօսքերի վրայ հիմնուած։ Կանչում է քննութեան անվեհեր սրտով, որպէս ճշմարտութեան ախոյեան, հաստատ համոզուած իւր եկեղեցու հարազատութեան։

Նա յանձնառու է ամենայն, ինչ որ իւր հակառակորդք զոնեն Հայաստանեայց եկեղեցում և ս. Գրքի խօսքերով և առաքելական Հայրերի գրուածներով հերքեն, նա ընդունում է արտամերժել, փոխել, առանց տատանելու։ Սակայն և Բիւզանդ պէտք է փոխէր՝ այն ամենայն, ինչ որ Հայք ցոյց կտային և հաստատ ապացոյցներով կհերքէին, վասն զի սխալն ուղղել ամօթ չէ, վասնորոյ և ամօթ չէ Բիւզանդի համար, եթէ, գիտութեան վայր գոլով, Հայոց Նուաստութենից բան սովորէին, զի «նաև հմուտ բժշկաց սովորութիւն է ոչ անարգանս համարել յորժամ հիւանդանան՝ յաշակերտաց իւրեանց ընդունել դեղս բժշկութեան...» մանաւանդ որ Բիւզանդ չպիտի հպարտանար թէ հենց ինքն է անսխալը, քանզի «նաև բիբք աչաց թէպէտ սրատեսն լինի զայլս տեսանելով, բայց զինքն և որ շուրջ զինքեամբ են դիրք մարմնոյն՝ անկարանայ նկատել, որ և յախտանալն՝ այլում կարօտանայ աչաց և ձեռին վասն առողջութեան»։

Այնուհետև Շնորհալին հրաշալի կորովարանութեամբ ապացուցելով Հայաստանեայց եկեղեցու դաւանանքն ընդդէմ քաղկեդոնականաց և հաստատելով Հայոց տօների առաքելական հարազատութիւնն, ասում է վեհութեամբ պանծալով. «ոչ ինքնահաճութեամբ բաժանեցաք մեք յայլոց ազգաց այսպէս տօնելովս, այլ՝ այլք զմերս ունելով յառաջագոյն փոխեցին որպէս կամեցան՝ զոր այժմս ունին։ Իսկ մերս եկեղեցի անփոփոխ զառաջնոյն պահեաց սովորութիւն, եթէ հեռաւորութեան աշխարհին պատճառաւ և եթէ բաժանելոյն աղագաւ... ոչ գիտեմք»։ Հետևաբար Բիւզանդ պարտ էր և պէտք էր դառնար առ այդ ճշմարտութիւնն, որից խախտուել էր։ Ներսէս չէ ուզում Յունաց անտեղի և վայրահաչ զրպարտութիւնք մի մի հերքել, զի Յոյնք բարի համբաւից ծածկում են իւրեանց ականջներն, իսկ ստութեանց համար բանում և լսածը ճիշտ համարում։

Շնորհալին կնքում է իւր նամակը, մաղթելով. «դուզնաքեայ բանիս մերոյ սերմն ի բարի և ի պարարտ անդս մտաց ձերոց սերմանեալ, աճեցուսցէ և բազմապատիկս արասցէ Աստուած, և մի լիցի փշովք հեղձեալ և կամ բուսեալ առանց արմատոյ և արագ ցամաքեալ և կամ յօդային թռչնոց կերեալ». Նա մաղթում է որ իւր այդ ցանած սերմերը Մանուէլի խելքում պտղաբերեն հարիւրապատիկ աճելով, որպէս զի կայսրն «ըստ չափոյ պտղաբերութեանն», վարձ ստանայ Քրիստոսից (195)։

Այս ճշմարտախօսուստ թուղթն, որ որքան խոնարհ էր և հեզաշունչ, նոյնքան՝ և ևս առաւել՝ խորտակիչ էր և տապալիչ, խորապէս դժկամակեցրեց կայսրին։ Այդ թուղթը լռութեան մատնուեցաւ. միութիւնն անկարելի երևեցաւ Յունաց իմաստնոց։ Երկու ամբողջ տարիներ գլորուեցան և ահա Մանուէլ կրկին աչքը դարձրեց դէպի արևելք. թէ ինչ հնարիմացութեամբ էր իւր ծրագիրը պատրաստել, այդ այժմ պիտի տեսնենք. Նա դեռ յոյս ունէր Շնորհալուն խաբելու, վասն զի 1168 կամ 69-ի ժողովում և ապա անկարող եղաւ հռովմայ քահանայապետին խաբել, բայց դեռ Մանուէլ և Միխայէլ ուրախ էին որ ինքեանք չխաբուեցան։ Այս անգամ այն է 1170 թուին մայիսին ուղարկեց Մանուէլ մէկ թուղթ և իւր «իմաստուններից» ճարտար ու ճարպիկ Թէորիանոսին, ըստ որում մինչդեռ առաջ գրում էր առ հայոց հայրապետն «առ պատուական և սրբազան կաթուղիկոսն Հայոց Տէր Գրիգորիս», այժմ առձայնում է. «յաստուածոյ հաստատեալ պատուական և իմաստուն կաթուղիկոսի Հայոց Տեառն Ներսիսի ևայլն»։

Մանուէլ գրում է որ «ի վաղ ժամանակաց իմացել է Շնորհալու բարւոք մտածութիւնն» և կամքն «սակս միաւորութեան եկեղեցւոյ և ուղղափառ հաւատոյ». և «քանզի, ասում է նա, անկարօտ էք վերստին ուսանել

յաղագս պատշաճ գոլոյ ձեզ՝ համախոհ լինելով այսմ ուղղափառ եկեղեցւոյ, և հաստատել զմիաբանութիւն ձեր ընդ սրբազան պատրիարքիս ընդ աստուածայնոյ ժողովրդոյս. «որով և մեծապէս գովի իմաստութիւն ձեր և երկիւղածութիւն» մանաւանդ որ «գլուխ է անկեան յետ գլխոյն եկեղեցւոյ». ուստի և առաքում է Թէորիանոսին և Յովհաննէս Ութմանին լիագոյն երաշխաւորութեամբ իւրեանց կողմից այդ իրի վրայ խօսելու։ Նա յիշեցնում է, որ Շնորհալին Քրիստոսից յետոյ «գլուխ անկեան» գոլով, պիտի վարձատրուի Տէրից, եթէ բաժանեալ սերմերը միացնէ։ Ընդ նմին և կաշառում է Հայաստանեայց եկեղեցու անկաշառ հայրապետին, ասելով, որ այդ միութիւնից յետոյ կվայելէ իւր թագաւորական շնորհները «բազմապատիկ բարեմասնութեամբ ըստ կամաց ձեր և խնդրոյ»։ Ուրեմն չկարենալով համոզել և ապացուցանել իւրի ճշմարտութիւնն, որ բացակայ է, կամ հերքել Հայոց և ցոյց տալ որ և է մոլորութիւն, նա վատաբար ստիպում է նորան միանալ իւր եկեղեցու հետ, թէև վերջինս մոլար ևս լինի։

Արդէն ծանօթ լինելով այդ ժամանակուայ Հայոց տարաբաղդ վիճակին և Կիլիկիոյ իշխանաց ձգտումներին, ակնյայտնի է թէ Մանուէլ Շնորհալու սրտի որ լարերին է բախել աշխատում. բայց նա չգտաւ այդ լարը Շնորհալու նման մեծատարած ծովի մէջ...։ Շնորհալին իմաց էր տուել այս ամենը նաև «Ասորոց ուղղափառաց» կաթուղիկոս Միքայէլ Մեծին, որ թէև փոքր ինչ մասնակցեց, սակայն օգուտ մի չտեսնելով այդ բանակցութիւնից գրեց. «մեր դաւանութիւն այդ է, մի բնութեամբ և կամօք և ներգործութեամբ փառաւորել զՔրիստոս ըստ առաքելոց և մարգարէից և ուղղափառաց հարցն մերոց, և այդր վրայ հաստատեալ եմք անշարժելի. և որ ոք այդու ընդ մեզ զխաղաղութիւն կալցի և սիրէ զմեզ. կալ-

ցուք և մեք և սիրեսցուք. և եթէ վասն այգորիկ ատեն զմեզ և պատերազմին, մեք ընդ Աստուծոյ և ընդ հարցն մերոց գնասցուք, և մատուսցուք զպարանոցս մեր ի մկայական հանդէս նախնեացն մերոց»[1], ըստ որում և այդ կտրական խօսքով մերժեց Մանուէլի հրաւէրը Կ. Պօլիս գնալու.[2] Բայց մենք տեսանք թէ ինչն էր Շնորհալու բարեսրտութիւնը շարժում. նա քանի մի եպիսկոպոսաց՝ Գրիգոր Տղայի, Աստրոց Յովհաննէս եպիսկոպոսի և Միքայէլ Մեծի աշակերտ Թէոդորոսի ներկայութեամբ խօսեցաւ Թէորիանոսի և Յովհաննէս Ութմանի հետ, զի վերջինքս հարցեր ունէին Հայոց եկեղեցու նկատմամբ, որոնց և Շնորհալին մի առ մի պատասխանեց և բացատրեց Հայոց դաւանական և ծիսական զանազան կէտերը։

Բայց Թէորիանոս չուզեցաւ մի բնութեան վարդապետութեան 'ուղղափառութիւնը ճանաչել, որպէս և գըրում է ականատես պատմիչն, որպէս և այլ հարցերում. կար ինչ յորում միաձայն էին, կար ինչ յորում տարաձայն. գլխաւոր կէտն հարկաւ բնութեան հարցն էր, որ միաբանեցնելու հնար չկար, վասն զի «Հայրապետն սուրբ երկոքումբքն սպառազինէր ընդ առաջին սրբոցն ընդդէմ Նեստորականացն՝ միաւորելով, և առ Եւտիքիանոսս՝ զբատկութիւն ճշմարտելով»։ Սակայն որպէս Շնորհալին ապացուցեց որ Հայք Եւտիքէսի շփոթումից հեռի են, Թէորիանոս բանավարեց որ Հռոմէք խորշում են «ի Նեստորի բաժանմանէն, ըստ որում երկու կողմերն էլ մերձենում են իրար «Հուպ եկեալք միմեանց ուղիղ դաւանութեամբ հաւատոյ՝ շնորհօքն Աստուծոյ»։ Այս կէտից դատ Մանուէլ քանի մի առաջարկութիւնք էլ ուղարկել էր Հա-

---

[1] Միքայէլ Մնծ. 461, որ գործի շարունակութեան վրայ ասում է. «իսկ զպատասխանի տեառն Ներսիսի զոր գրեաց մեք ոչ իմացաք, բայց կորովի էր յաստուածաշունչ գիրս և պարկեշտ և ջանացող այր ուղիղ կանոնաւ գրոց, և նա վճարեաց զիւրն»: [2] Արուլֆ. II, 550:

ւատոյ և եկեղեցու կարգայ նկատմամբ, սակայն դոցա պատասխանը Շնորհալին հրաժարուեցաւ տալ, մանաւանդ որ Հոռոմք ևս իւրաքանչիւր անգամ ժողովից էին գրում, ըստ որում այդ տարիները ժողովոց տարիներ էին նոցա համար։ Շնորհալին չուզեցաւ այդ խնդիրների վրայ խօսք բանալ անգամ, «զի մի փոխանակ միաբանութեան զանազան պատճառս տացուք բաժանմանց, և շարժուն և փոփոխական երևեսցին բանք մեր», ուստի և թողեց զայնոքիկ ժողովով քննելու և պատշաճ պատասխանը տալու։ Իսկ Հոռոմոց պատգամաւորաց խնդրանօք վերստին գրեց իւր խոստովանութիւն, վասն զի Շնորհալու խօսքն թէ Հոռոմք հեռի են «ի Նեստորի բաժանմանէն», կարծել տուաւ նոցա թէ Ներսէս ընդունում էր երկու բնութեան վարդապետութիւնը։

Շնորհալին իւր այդ թղթին մէջ, զոր ուղարկեց 1170-ին հոկտեմբերին, գրում է որ պատգամաւորաց խնդրանօք առաքում է սակաւ ինչ ևս իւր դաւանութեան ապացոյցներն, «զոր ալարաք սակաւուք ոչ ի մէնջ, այլ ի սրբոց վարդապետաց եկեղեցւոյ բանից՝ յորոց նախ քան զբաժանումն»։ Աստի երևում է որ Յոյնք իւրեանց նոր դաւանանքը նոր վարդապետաց խօսքերով էին ջատագովում։ Ներսէս վկայաբերում է Գրիգոր Աստուածաբանից և Կիւրեղ Աղեքսանդրացւոյ, բացայայտելով որ երկու բնութիւն պէտք է միայն վերացաբար հասկանալ, որ նոյն է, եթէ ասում ենք՝ թէ Քրիստոս Աստուած է և Մարդ միանգամայն, ըստ որում յայտ է թէ՝ աստուածային ունէր բնութիւն և մարդկային, այլ միաւորեալ և անբաժանելի, ըստ հոգւոյ և մարմնոյ յեղանակի», և կամ առաւել գեղեցիկ, «ոչ այլ ոք և այլ, մի՛ լիցի, զի մի են խառնելովն՝ Աստուծոյ մարդանալովն և մարդոյն աստուածանալովն...»։ Ապա բերում է Կիւրեղի տրամախօսութիւնն, որով նա տապալում էր

երկու բնութիւն ասողներին և մի բնութեան ուղղափառութիւնն հաստատում մարդու բնութեան օրինակով. թէ «որպէս և մարդն է ի հոգւոյ և ի մարմնոյ, քանզի այլատեսակք են այսոքիկ և միմեանց ոչ համագոյք, սակայն միաւորեալք՝ մի բնութիւն մարդոյն կատարեն»։ Ընդ սմին երկու բնութիւն իմանալի է, այնպէս ինչպէս և մարդու նկատմամբ, վասն զի հոգին մարմին չէ, և մարմինը հոգի չէ. և որպէս մարդու վերաբերմամբ կարող են ասել երկու բնութիւն, զի «շ ա ր ա դ ր ո ւ թ ե ա ն ն բ ա ն ի ւ ք է ի ներքս զանազանութիւն ըստ բնութեան ի միաւորութիւն եկելոյն», նոյնպէս և Քրիստոսի նկատմամբ կարելի է երկու հասկանալ միմիայն վերացաբար, «շարադրութեան բանիւք» այսինքն տրամաբանական մտածութեամբ «տեսութեամբ, մտածութեամբ», «ելեալ ի մտածութիւնս միայն և ի տեսութիւնս հոգւոյ աչօք», «մտաց աչաց միայն տեսանելի» (202. 206)։

Շնորհալին իւր այս բացատրութեան կատարելութիւն տալու համար նզովում է նրանց, որոնք յեղումն և այլայլութիւն են ասում, կամ երևոյթականութիւն և այլն, այսինքն Եւտիքէսի նմանեաց։ Սակայն Շնորհալին չէ մոռանում և իւր վերջնական հարուածը տալ. նա դնում է հետևեալ նզովքը. «նզովեմք և զայնոսիկ՝ որք ի յերկուս բնութիւնս բաժանեն զմի Քրիստոսն ըստ Նեստորի, այլ ասելով զԱստուածն և այլ զմարդն. զմարդն չարչարելի և մեռեալ, և զԱստուածն անչարչարելի և անմահ, և ոչ միաւորութեամբն տան զերկաքանչիւրսն՝ զչարչարանսն և զանչարչարութիւնն, զմահն և զանմահութիւնն» (207)։ Ակներև է որ այս Քաղկեդոնի դաւանանքն է, զոր Շնորհալին բացարձակօրէն նզովում է։

Ապա Շնորհալին մտադրելով ժողով գումարել տըւեալ հարցմանց վրայ իրաւամբ խօսելու, աւելացնում է որ մէկ լիակատար գրութիւն Հայոց անփոփոխելի(!) հա-

ւստոց և Հայաստանեայց եկեղեցու և Բիւզանդիացոց հաւատքի տարբերութեանց (!) վրայ պիտի գրէ ժողովքը։ Այսու որոշում է Շնորհալին իւր հրաւիրելի ժողովի նպատակն։

Կայսրն ստացաւ Շնորհալու թուղթն, որ որպէս քաղցր թոյն, զարդարուն էր վայելուչ արտայայտութիւններով, սակայն այդու հանդերձ վտանգիչ էր և տագալիչ։ Այդ թուղթն այնպէս զայրացրեց Մանուէլին, որ երկար ժամանակ մուխը չհանդարտեցաւ. բայց նա լռեց և այլ ևս չպատասխանեց։ Ընդ նմին Շնորհալին ևս բարձաթող արաւ այդ գործն և այլ ևս իւր վերջին թըղթում յիշած ժողովը չգումարեց, թերևս լաւ համարելով լռութեան տալ այդ անհեթեթանք բանակցութիւնն, որ իրապէս ապարդիւն պիտի մնար։ Երկու ամբողջ տարիներ բոլորուեցան. վերջապէս 1172 թուին դեկտեմբեր ամսում թուղթ գրեց, և մի կողմ թողնելով իւր առաջուայ յիրարկած շողոքորթական գովեստները, դիմեց այս անգամ՝ լոկ «պատուական և սրբազան կաթուղիկոսիդ Հայոց» հասցէով։ Մանուէլ ապա նախ ստում է անարգաբար, ասելով «ընկալաւ իսկ և թագաւորութիւնս իմ որքան քո պատուականութիւնդ ծանոյց սակս երկու բնութեանցն՝ զորս ի մի յանձնաւորութիւն Քրիստոսի, այս է՝ միոյ երեսաց», որի ոչ մի նշոյլը չկայ Շնորհալու թղթի մէջ։ Հոռոմոց արքան այս խօսքերը ներս խմորելուց յետոյ սաստիկ վշտացած և կոշտ ու կոպիտ արտայայտութեամբ յանդիմանում է Շնորհալուն, որ սա մի բնութիւն է վարդապետում «զբիւր խրատս և զվկայութիւնս աստուածազգեցիկ հարցն (?) ընկեցիկ և խոտան առնելով». և անվայելչօրէն անուանում է Շնորհալուն «հաճոյակից—այնոցիկ՝ որ շփոթումն առնեն երկուց բնութեանցն որ ի Քրիստոս»։ Այս անարգանքից յետոյ ուզում է վճռաբար վերջ տալ այդ անորոշ բանակցութեան

Ա բանաստեղծ գրում է որ ազդուել է Թէոդիանոսին և Ռոմանոսին ժողովուած ներկայ լինելու, սակայն Շնորհալու հանճարեղութիւնից խրախուսուած, աւելացնում է որ նրանց առաջարկութիւններից դուրս սարքում է 9 կէտեր Ա.». բերանացի արտայայտելով խորամանկութեամբ «որոց ոչ կամիք զհաւանութեան հնազանդութիւն՝ զգաստացուած յայտ առնելով պատասխանի արարէք»։

...Պահանջուած 9 նոր կէտերն են. ա. նզովել մի բնութիւն ասողներին, ընդ նմին և աղխատապար մի շարքում է դնում Եւտիքէսին, Դիոսկորոսին, Սեւերիոսին և Տիմոթէոս կուզին. բ. խոստովանել մի Քրիստոս, մի անձն՝ երկու բնութիւն, երկու կամք և երկու ներգործութիւն, միայն մարդկային կամքն ստորուկ աստուածայնին. գ. խաչեցեալը վերացնել. դ. տօնել Հռոմայ հետ միաժամանակ. ե. միւռոնը ձիթով եփել. զ. Հաղորդութիւնը խմորուն անել և ջրախառն. է. քանի մի բիւզանդական ժողովներ ընդունել և այլն, բայց որ գլխաւոր փոփոխութիւն է կայսրի—այդ այն է, որ կաթողիկոսն ոչ թէ Հայերից ընտրուէր, այլ կայսրից նշանակուէր. . .

Միքայէլ պատրիարքն Եւս մէկ թուղթ գրեց, որով քաղցրացնում է կայսրին և մէկ խրատական շինում, ասելով ողջախոհաբար. «գրեթէ ամենայն թագաւորք երկրի հնազանդ լինին սմա, այլ և ահաւոր է յաչս ամենեցուն՝ որ շուրջ են զնովաւ», կարծելով թէ Հայաստանեայց եկեղեցու հաւատոյ ախոյեանը պիտի վախենայ նորա առաջ։ Նա շողոքորթում է Շնորհալուն առանց համոզելու եռանդն առ ի չգդյէ բանեցնելու։ Քանի մեծ հեռաւորութիւն երկու կողմերի միջև. մինչդեռ նա այդ անախոսութիւնից յետոյ յաւակնում է ասել մեծամտութեամբ առ Շնորհալու վեհութիւնն. «ահաւասիկ դարձեալ չափաւորութիւնս մեր և որ ըստ մեզ սուրբ և առաքելական եկեղեցիս զգիրկս իւր պարզեալ ունի ձերում սրբու-

թեանց, և է պատրաստ ի ձեր ընդունելութեանդ», անշուշտ կլանելու համար Հայաստանեայց եկեղեցու չնորհալի հայրապետան և արժան հովուապետը քարոզում է երկու կողմերին միաժամանակ մօտենալ իրար և որպէս եղբայրներ սիրել միմեանց։ Հայաստանեայց եկեղեցին կաթրեք ազատամտութեամբ իւր թշնամուն, առանց նորան վնասելու, սակայն չէր զրկել նորան, զի իւր գործադրած պատմական համոզումն էր, որ ամենայն բարեկամ զրկումն կորչէր նորան անյապաղ կործանումն. . .։

Շնորհալին առանձնապէս այդ առաջարկութիւնք, ինքն մեծիւ չտուեա և Թորոսից աւելի ժողովին, ըստ որում է գրեց թէ քաղթանկեց կէտերն արդէն պարզաբանել է բաւ. գրով, իսկ առաջարկած խնդիրներն կառաջարկէ ժողովին և, եթէ հնար լինի, հնարաւորը կընդունի. սակայն կրկին և կրկին շեշտում և պնդում է որ այնտեղ մոլար կէտեր չկան, իսկ եթէ ինչ և իցէ ընդունի, այն «յաղագս աստուածային սիրոյն հաշտութեան» պիտի լինի «և ոչ թէ ի մոլորութենէ դառնալով ի ճշմարտութիւն»։ Բայց այս անարդար պահանջներն նա ներում է միայն մի պայմանով, այն է, որ Հայոց ժողովը պիտի քննէ և Բիւզանդիոյ եկեղեցին և նորա թերութիւնք ու մոլորութիւնք մատնացոյց պիտի անէ «Ս. Գրոց և առաքելական հայրերի վկայութեամբ» ապացուցելով (և ոչ թէ կամակութեամբ փոխել կամելով զայն), որ «ի վկայութենէ աստուածաշունչ Գրոց հատանեալ են». ըստ որում և կայսրը պարտաւոր է զայնոսիկ լռացնել և ուղղել։ Առ Միխայէլ նա գրեց թուղթ մի, ցոյց տալով որ միաբանելուց բնաւ խօսք չէ տալիս և այդ իւր մշտական փափաքն է եղել և այժմ ժողովով պիտի քննէ և պատասխանէ, ընդ նմին և խնդրում է որ նա ևս նմանապէս ժողով գումարէ և այդ նպատակին աշխատի։

Այնուհետև Շնորհալին հրաւէր ուղարկեց առ ե-

եպիսկոպոսս և վարդապետս Հայաստանեայց», որով հա-կերպ նշանակեց ժողովելու պատճառն և որպիսութիւնն՝ որ Մանուել Շնորհալու աթոռակալութեան օրից՝ թուղթ և պատգամաւորներ է ուղարկել քանի մի անգամ. «յաղագս միրոյ և միաւորութեան եկեղեցւոյ ըստ նախնեացն ժամանակների, որ ինքն ևս պատասխանել է առաջես արժան էր, և այժմ հասել են այն սահմանին որ ինքն իբրև գլուխ առանց անդամոց չէ կարող առաջարկուած խնդրոց պատասխան տալ, ուստի և ժողովով կգրէ «զայն ինչ՝ զոր Հոգին Աստուծոյ ցուցանէ մեզ»: Վճռորոշ հրամայում է պատրաստուել, որպէս զի երկրորդ հրաւէրն ստանալով, Հռոմկլայ գային: Ընդ սմին աւելացնում է Շնորհալին, որ այս ամենն իմաց է տալիս, որպէս «զի մի՛ յանխիմաստից ոմանց անուղղապէս ինչ լուեալ, այլ ընդ այլոյ ինչ կարծիցէք»:

Շնորհալու վերջին խօսքերից երևում է որ այլ ինչ էր տարածւում նորա գործերի վրայ և այդ ոչ միայն Հայոց մէջ, այլ և ի Կ. Պօլիս, վասն զի մինչդեռ, որպէս տեսանք Շնորհալու թղթերից և ականատես պատմիչից, նա պարզ հարցաքննութիւն ունեցաւ Թէորիանոսի և Ութմանի հետ երկու կողմերի եկեղեցեաց կենդանի ծանօթութիւն ստանալու և տալու համար և ոչ վէճ կամ պայքար, ըստ որում և պատգամաւորք ճանաչել են իւրեանց խոնարհութիւնն և միայն բերած հարցերին պատասխան ու լուծումն ստանալով, յայտնել են նաև կայսրի այն ապսպրանքները, զորոնք վերջինս թուի թէ քաշւում էր գրելու: Այդ էր պատճառն որ Շնորհալին յետ դարձրեց այդ երկու մեղմեխներին, թոյլ չտալով նոցա Հայոց ընդհանրական ժողովին ներկայ լինելու և ներքին գործերին խառնուելու, այլ և հեռատեսութեամբ զգուշում է իր թղթում իւրաքանչիւր անգամ բանաւոր ապսպրանաց և «Հարցաքննութեանց» հետևանքն ու որպիսութիւնն:

Սակայն Հայաստանեայց եկեղեցու շնորհալի հայրապետն և հովուապետը տենչում էր առ հաւատոյ փառաւոր ախոյեանները. նա հանգեաւ 1173 թուին օգոստոս ամսում 13-դ օրն, իւր բոլոր առաքինութեանց և իմաստութեան հետ ու կատար հաշտեցնելով այն ոսկեղրուշմ սկզբունքը, զոր Հայոց այդ մեծ դաստիարակն ի լրումն ամենայն ճշմարիտ կրթութեան և գիտութեան գրում էր առ իւր եղբօրորդին՝ ուսանողն ի Կ. Պոլիս՝ ապագայ կաթուղիկոսն Գրիգոր Ապիրատ.

«Այլ և զհաւատոց որ յաւագան
Անշարժ պահեա միշտ յաւիտեան։



## ԺԵ.

> «Որոց աչք և տեսութիւն ի գլխոյն իցէ և առ գլուխն, ընդ խաւար ոչ գնայ գայթակղելով և բախելով ի կոշտից ճանապարհին»:
>
> ԳՐԻԳՈՐ ՏՂԱՅ.

---

Մինչդեռ Շնորհալու[1] մահուան գոյժը հասաւ առ Մանուէլ և վերջինս մխիթարական թուղթ գրեց առ Գրիգոր Տղան՝ նորին յաջորդն, հրաւիրուած ժողովին գումարուեցաւ ի Հռոմկլայ և մերժեց կայսրի առաջարկութիւնք։ Գրիգոր Տղան ամենայն ինչ լռութեան տուաւ. բայց երբ 1175 թուին եկաւ կայսրն Իկոնիոյ կողմն Խլեճասլանի դէմ, Գրիգոր Տղան շտապեց թուղթ գրել առ նա միութեան գործն աւարտելու փափաքով, ըստ որում ջանում է բարեկամութիւն մի նկատել կայսրի մէջ դէպի Հայոց, իսկ իւր թղթին ուշացնելու պատճառ է առարկում նախ իւր տարտամութիւնն և ապա «ի վաղ ժամանակաց հնացեալ մախանաց չարութիւնը» և երկրորդ

---

[1] Շնորհալու խօսակցութիւնը Յունաց դեսպանի հետ կայ Ս. Էջմիածնի մատենադարանի գրչագրաց մէջ. եթէ դորա հնութիւնը ճշտուի, կհրատարակենք:

իւր հեռի լինելն կայսրի բարեգթութիւնից։ Այս նկատողութիւններից յետոյ յայտարարում է որ առաջարկուած խնդիրները չեն ընդունւում և բուռն ընդդիմադրութեան են ենթարկւում, ուստի խնդրում է առարկեալ կէտերը թեթևացնել, որպէս զի աստուածային խաղաղութիւնը հաստատուի և այնուհետև ինքը սէրը կծնէ և կբուսցնէ այն, ինչ որ իւր աճման օժանդակ է։ Իսկ հաւատոյ խոստովանութիւնն այլ ևս աւելորդ է համարում կրկնել, քանի որ Շնորհալու թղթերը կան, գրում է նա, «ունիմք առաջնորդ առ Քրիստոս խոստովանութեան ի մէջ մեր, որ զձեր թագաւորութիւնդ նուաճեաց ի հաւանութիւն Աստուածիմաստ գիտութեամբն՝ յոր առ մեզ ուղղափառութեանն»։ Հայք արդէն ուրախ էին որ Մանուէլ այդ հաւանութեամբ ընդունեալ է համարում Հայոց հաւատքն (էջ 235. 244), ուրիշ բան էր, եթէ կայսրի այդ խոստովանութիւնը լոկ բանորսութիւն էր, միայն թէ Հայք այդ իբրև ճշմարտութիւն ընդունեցին և սկսան պարծանքով վերաձայնել «զնոյն համբաւ նորա (Ներսէսի) ի Կոստանդնուպօլիս և ի Հռովմ առ պատրիարգունքն և առ կայսերքն և նովաւ հաստատեցան ամենայն ազգ ի դաւանութիւնն Հայոց» (Սմբ. 88)։

1176-ին սեպտեմբերին կայսրը պարտեցաւ Մելիտինէի մօտ և հաշտութիւն անելով թշնամու հետ, վերադարձաւ ի Կ. Պօլիս և ապա 1177-ին յունվարին գրեց իւր վերջին պատասխանը, նորէն միութեան բանակցութիւն սկսելով։ Մանուէլ այս անգամ այլապէս է գործի ձեռնարկում. նա կոչում է զինքն բարերար Գրիգոր Տղայի և ապա յիշում է որ Հայոց մէջ տարածուել է թէ Հոռոմք երկու Քրիստոս են պաշտում, զի ի մի անձնաւորութեան երկու բնութիւն են դաւանում, այնպէս և Հոռոմք, զրպարտում են «Հայոց թէ մի բնութիւն

են խմբագրւում՝ և աստուածաշնչայինը զատանին և ոչ տան խոստովանչիւյ բնութեանցն զարտուղած յատկութիւն փոփոխչակաւն. ընդ սմին և ուզում է խմբել Հայոց դաւանանքներ, ասելով. «անձնաւորութեանց միութեանց ձեր խոստովանութիւնը» կարծեցրեց թէ բնութեանց միութիւն էք դաւանում։ Այս ներքողելով Գրիգոր Տղային, նկատում է որ ինքն առաւել ևս փափագում է միութեան քան որում և գնում է իւր դաւանանքներ։ Այսպիսով ջանում է ըստ Ղևոնդ Բիւզանդացու՝ «բնութիւն» և «անձն» բառերը ճանաչել, որ Հայկաւ ծիծաղելի է, զի այդու ոչ միայն երկրորդութեան վարդապետութիւնը մոլորութիւն կդառնայ, այլ նկատելու է, որ Հայոց լեզւում «անձն» բառն է «բնութեան» նշանակութեան մօտիկ և ոչ ընդհակառակն (զոր օր. Մատթէոս աւետարանչի 2,20. 10, 39. 16, 25 և այլն.)։ Իւր քաղկեդոնական դաւանանքից յետոյ յորդորում է նոյնն ուսուցանել և Հակառակորդներին զրպարտողներին «հրւփել և ի բաց վարել» և սէր Հաստատել եղբարց մէջ, ըստ որում և ընդունելի անել երկու կողմանց ընծաներն և եթէ զրպարտող է լինում, ժողովով ջնջել և ուղիղը ցոյց տալ, վասն զի բաժանման երկարատեւութիւնը շատ ցաւեր է յառաջացրել և ժամանակ է պէտք բժշկելու, քրիստոնէութիւն է պէտք զայթակղութիւնք յաղթահարելու համար։

Այս Մանուէլ, որ սկզբում առաջարկութիւնք շատացնում էր ամէն տեղից բանելով սակաւով շատանալու համար, այժմ մերժում է տեսնում այդ ամենն և մոռացութեան տալիս, ընդ նմին յիշում է խորամանկութեամբ և ստախօսութեամբ, որ իբր թէ քննելով՝ շարականներում շատ տեղ երկու բնութիւն երգաբանուած է գտել, փառաւորոյ և յորդորում է այնորքիկ բացարձակ խոստովանելը։ Եւ այլ ևս ասում է նա. «ահա ոչ կայ ի մէջ մեր մեծ պատճառ, քանզի ըստ բարեպաշտ մտա-

իւր հեռի լինելն կայսրի բարեգթութիւնից։ Այս նկատողութիւններից յետոյ յայտարարում է որ առաջարկուած խնդիրները չէին ընդունւում և բուռն ընդդիմադրութեան են ենթարկւում, ուստի խնդրում է առարկեալ կէտերը թեթևացնել, որպէս զի աստուածային խաղաղութիւնը հաստատուի և այնուհետև ինքը սէրը կծնէ և կբուսցնէ այն, ինչ որ իւր աճման օժանդակ է։ Իսկ հաւատոյ խոստովանութիւնն այլ ևս աւելորդ է համարում կրկնել, քանի որ Շնորհալու թղթերը կան, գրում է նա, «ունիմք առաջնորդ առ Քրիստոս խոստովանութեան ի մէջ մեր, որ գձեր թագաւորութիւնդ նուաճեաց ի հաւանութիւն Աստուածիմաստ գիտութեամբն՝ յոր առ մեզ ուղղափառութեանն»։ Հայք արդէն ուրախ էին որ Մանուէլ այդ հաւանութեամբ ընդունեալ է համարում Հայոց հաւատքն (էջ 235. 244), ուրիշ բան էր, եթէ կայսրի այդ խոստովանութիւնը լոկ բանորսութիւն էր, միայն թէ Հայք այդ իբրև ճշմարտութիւն ընդունեցին և սկսան պարծանքով վերաձայնել. «գնաց համբաւ նորա (Ներսիսի) ի Կոստանդնուպօլիս և ի Հռովմ առ պատրիարքունքն և առ կայսերքն և նովաւ հաստատեցան ամենայն ազգ ի գաւանութիւնն Հայոց» (Սմբ. 88)։

1176-ին սեպտեմբերին կայսրը պարտեցաւ Մելիտինէի մօտ և հաշտութիւն անելով թշնամու հետ, վերադարձաւ ի Կ. Պոլիս և ապա 1177-ին յունվարին գրեց իւր վերջին պատասխանը, նորէն միութեան բանակցութիւն սկսելով։ Մանուէլ այս անգամ այլապէս է գործի ձեռնարկում. նա կոչում է զինքն բարերար Գրիգոր Տղայի և ապա յիշում է որ Հայոց մէջ տարածուել է թէ Հռոմք երկու Քրիստոս են պաշտում, զի ի մի անձնաւորութեան երկու բնութիւն են դաւանում, այնպէս և Հռոմք, զրպարտում են «Հայոց թէ մի բնութիւն

են խոստովանում՝ թէ աստուածաչարչարը դաւանին և ոչ տան հակառակաչէին բնութեանցն զգաստշած յատկութիւն փոխելչափական. ընդ սմին և ուզում է խմորել Հայոց դաւանանքին, ասելով. «անձնաւորութեանց միութեանց ձեր խոստովանութիւնը» կարծեցրեց թէ բնութեանց միութիւն էք դաւանում։ Այսպէս ներբողելով Գրիգոր Տղային, նկատում է որ ինքն աւուաել և փոփոխում է միութեան բառ որում և դնում է իւր դաւանանքին։ Այսպիսով ջանում է բառ Ղեւոնդ Բիւզանդացու՝ «բնութիւն» և «անձն» բառերը ճանաչել, որ Հարկաւ ծիծաղելի է, զի այդու ոչ միայն երկրորդութեան վարդապետութիւնը մոլորութիւն կդառնայ, այլ նկատելու է, որ Հայոց լեզուում «անձն» բառն է «բնութեան» նշանակութեան մօտիկ և ոչ ընդհակառակն (զոր օր. Մատթէոս աւետարանչի 2,20. 10, 39. 16, 25 և այլն.)։ Իւր քաղկեդոնական դաւանանքից յետոյ յորդորում է նոյնն ուսուցանել և Հակառակողներին զրպարտողներին փոփել և ի բաց վարել և սէր հաստատել եղբարց մէջ, բառ որում և ընդունելի անել երկու կողմանց ընծաներն և եթէ զրպարտող է լինում, ժողովով ջնջել և ուղիղը ցոյց տալ, վասն զի բաժանման երկարատեւութիւնը շատ ցաւեր է յառաջացրել և ժամանակ է պէտք բժշկելու, քըննութիւն է պէտք զայթակղութիւնք յարդարելու համար։

Այսպէս Մանուէլ, որ սկզբում առաջարկութիւնք շատացնում էր սիրող տեսլից բռնելով տակաւով շատանալու համար, այժմ մերժում է անհնում այդ ամենն և մոռացութեան տալիս, ընդ նմին յիշում է խորամանկութեամբ և ստախօսութեամբ, որ իբր թէ քննելով՝ շարականներում շատ տեղ երկու բնութիւն երգաբանուած է գտել, վասնորոյ և յորդորում է այնորիկ բազդարձակ խոստովանելու։ Եւ այլ ևս ասում է նա. «աւհա ոչ կայ ի մէջ մեր մեծ պատճառ, քանզի բառ բարեպաշտ մտա-

ծութեանն մի գտաքէ»։ Այսպէս միութիւնը վերջացնելով, Մանուէլ գրում է որ Գրիգոր Տղան և ժողովով իւր խոստովանութիւնն առաքէ կամ, առաւել և լաւ, ինքն իւր եպիսկոպոսներով տեսակցութեան գայ խնդրին վերջ տալու համար։

Միխայէլ պատրիարքի ժողովն ևս հաստատելով կայսրի թղթի ուղղափառութիւնը, գրեց և մի թուղթ Միխայէլի ձեռքով, Շնորհալու թղթերի մեծաւոր հեռաւութեամբ, սակայն խմորուած «երկու բնութիւն» ընթացակցութիւն եղև բնութեանցն և այլ արտայայտութիւններով։ Ապա խնդրում է իւր այդ թուղթն ի նշան միութեան ստորագրել, ընդ նմին և առաքել Հայոց գաւառանքը, զոր խոստանում է ինքն ևս ժողովով նմին նման ստորագրել։

Նկատելի է պարզապէս, որ Հոռոմք անգիտանալով իւրեանց առաջարկած կէտերին և միութեան բոլոր գործն երկու բնութեան խնդրին ուղղելով, ոչ թէ ուզում էին դորանով ամենայն ինչ վերջացնել, այլ այդ միայն ձանկելու կոռուան մի էր, որով երկու հակառակ և իրարու խորթ եկեղեցիք համաձայն և միացած պիտի հրատարակուէին ի լուր աշխարհի և ի կուրացումն Հայոց։

Իսկ ապա, որպէս Մանուէլ նկատում է թէ երկարաւէտ բաժանումը շատ ցաւեր է յառաջացրել, ուրեմն պէտք կայ դեռ ժամանակեայ բաժման, այսինքն քննութեան, վերստուգման, արդէն մատնում է իւր խորհուրդները, որ ժամանակի ընթացքում իւր գործն ու մտադրութիւնք սիրով և խաղաղութեամբ, շոյելով և բարեկամութեամբ է կատարելու Հայոց եկեղեցու վրայ, Նորա հօտի միամտութիւնից օգտուելով։

Հայք հասկացան այս, ուստի և կարևոր արթնութեամբ վերաբերուեցան իւրեանց պատասխանով, քան որում իրեքի բերմունքը ցոյց է տալիս որ գրով խօսածն իրօք չպիտի լռանար և այդ պիտի իսկոյն տեսնենք։

. Գրիգոր Տղայ սկսաւ խնդրյն ծագով Հրաժարել եւ ահա Հայաստանի Հիւսիսային վարդապետները դրդուեցան Յունաց դէմ ասելով՝ որ արդէն մի անգամ կայսրն ընդունել է Հայոց հաւատքն, այլ եւս ինչ հարկ կայ վերստին բանակցելու: Նոքա գրեցին առ կաթուղիկոսն, գրում՝ որպէս նաւաստ աննշանք մեզ գլխոյ յայտնումեն, որ նա հեռու կենայ այդ յարաբերութիւնից «զի գիտեմք ի նոցանէ պատրուակեալ յինքեանս ունին զԹոյնս զինանութեան ապականչացն»... Սոցա թուղթը մի հրաշալի ապացոյց է թէ ինչպէս Հայոց վարդապետք հետեւում էին եկեղեցական գործերին եւ ի բուռն խանդհաւութիւնք պահելով հանդերձ, հնազանդութեամբ զգուշացնում էին հայրապետաց, գէթ ցոյց տալով որ ինքեանք միաձայն, մահու չափ հաւատարիմ են նախնեաց: Նոքա շեշտելով որ Հոռոմոց հաւատքը նեստորականութիւն է, թէեւ «երկու դէմս» չեն ասում, սակայն «երկուս կամս ասելով» եւ երկուս ներգործութիւնս, նովին վարեն իրօք հարկաւորութեան ներհակաց կամաց ի ներքս ածել յանճառաբանելին միաւորութիւնս: Ընդ սմին ծիծաղում են խելամտութեամբ, որ նախնիք Հայք զուր չեն խորշել Հոռոմներից եւ թէ Հոռոմք «չեն ինչ նուազ քան զառաջնոցն բաժանութեան լինել պատճառ, յորմէ եւ դուք պարտիք զգուշանալ»: Որքան անպաճոյճ են այս խօսքերն, այնքան սուրբ եւ յաւիտենական:

Սակայն այդ քաջախորհուրդ վարդապետք յիշելով, «չեմք ինչ թիւրեալ ի սրբոցն աւանդից, եւ ոչ նորաձեւ ինչ արարեալք», խոյանում են պատրաստի կալ եւ ապացուցել թշնամու մոլորութիւնք, ընդ նմին եւ հռչակել Հայաստանեայց եկեղեցու ուղղափառութիւնն այն ոչ յանկեան ուրեք ի թերութեան է ճշմարտութիւնն, եւ ոչ ծառայէ աշառութեան[1]:

1 Թուղթք. Տպ. Ս. Էջմիած. 424:

Կարճ է թուղթը, սակայն վճռական և բացայայտ յայ-տարար ժամանակի Հայոց եկեղեցականաց՝ քաղաքի և լաւ-ագի ազգեն Ներսէս գիտակցել, որ կայսրը ջանում է մարմնական պատուով և ձոխութեամբ շլացնել Հայոց, ներշնչում են որել՝ ոչինչ ցանկալեաց մարմնականին պատուոյ և փառաց, այլ, որ առ միոյն Աստուծոյ։ Որչափ խոնարհ ած են բանեցնում, այնու Հանդերձ չեն մոռանում և իւրեանց անյողդողդ Հաստատամտութիւնը, Հաւատոյ Համար անանձնաբար գործել, անվախ վճռութեամբ. «քաւ և մի լիցի այս նորանձայն աղանդոյ պղծատատութիւն ի Հայաստանեայցս ամենուր»։

Իսկ այսպիսի քաղաքներից անձեր կային Հայաստանի այն թշուառ ժամանակներում, երբ մարմնի անկախութիւնը կորուսած անձնային զրկողութեան մէջ՝ չէին խնայում Հայրենի եկեղեցու Համար արիւն իսկ թափելու և նախնեաց փառաց արժանաւորը. Հայոց կաթուղիկոսն սոցա ներկայութեամբ էր հաստատում արժանաւոր պատասխան տալու Համար։

Այդ ամենայն Հայոց կաթուղիկոսը նստում էր Հայաստանից դուրս, Արինջաբերդում, սակայն Հայք սրտով և մտքով նորա Հետ էին։ Տեսնում ենք որ Հայաստանեայց եկեղեցու Հայրապետը ընտրուելով, ստանում է լիակատար իրաւունք ինքնագլուխ գործելու և ազգի դեկը վարելու, սակայն այդ իրաւունքը սահմանափակուած է Հայաստանեայց եկեղեցու օրէնքներով և վարդապետութեամբ Հաւատարմութեամբ, որով ամենայն կաթուղիկոսն, փառաւորւում է։ Այդ Հաստատութեան մէջ պարտ է կաթուղիկոսն, ինքն գլուխ գոլով, իւր եկեղեցականաց և ժողովրդականաց Հետ, որոնք իւր անդամներն են, միութիւն կազմել։ Իսկ եկեղեցականք և ժողովրդականք, իբրև անդամք այդ միութեան, իւրեանց գլխին Հնազանդ լինելով և նոյն Հաւատարմութեան մէջ մնալով, գրեթէ նման ինք-

նախապատւութիւն են վայելում, իբրև որդիք եկեղեցու, որոնց վրայ է գլուխը։ Բայց եթէ կաթուղիկոսը չեղուք գիտութեամբ, նա կորցնում է իւր իրաւունքն և ամենայն Հաւատարիմ Հայ կրօնասէր է դառնում նորա վրայ։

Գրիգոր Տղայ այս լաւ գիտէ, ուստի և շտապում է իւր եկեղեցու անհաւատարիմ անդամոց վրդովմունքը փարատել։ Նա թուղթ գրեց, աշխատելով ամոքել նոցա զայրոյթն և մարդասիրութիւն ներշնչել դէպի Հռովմ։ Նա յիշեցնում է, որ պէտք չկայ հրապարակ հանելու թէ նոքա աղանդաւորներ են, փոխանակ ունելոյ նոքա եկեղեցական Հայրեր, որոնց գրուածներն ամբարուած են և կարող են խելահաս անել նոցա, յիշեցնում է թէ չպէտք է մոռանալ որ Հռովմը միշտ ջանացել են ժողովով արմատախիլ անել աղանդներն և քանի որ գիտութեան աղբիւր են, չպէտք է ասել նոցա թէ մենք նոցանից սովորելով հանդերձ, հենց միայն մենք ենք ուղիղ։ Եւ իրաւամբ յիշատակում է Գրիգոր Տղայ, որ մենք ոչ մի գործ չունինք նոցա աղանդաւորաց և Հայրերի հետ, այլ մենք մերով պէտք է պարծենանք և մերով մխիթարանենք, ընդ նմին և Հայք ի Հռովմ բնաւ չեն խորշել դոցա եկեղեցական գործերին մասնակցելուց, այնպէս և մենք չպիտի ասենք, նախատենք նոցա, այլ Հաւատարիմ մնալով իբրև «Ճշմարիտ և աներկբայ» սրտիւ Հայ, կարելի է և սէր անել օտարի հետ նոցա շահելու համար։ Իսկ ինչ վերաբերում է Նեստորին, Քաղկեդոնին և այլոց, Հայք ոչ գործակից են եղել դոցա և ոչ էլ «Անեցիք և Զորագետացիք կամ Դունեցիք» են ներկայ եղել նոցա խռովութեանց, ուրեմն ինչ միտք կայ նոցա անուան յիշատակութեան կամ նոցա գործոց քննութեան. դոքա Հռովմոց մէջ են եղել և նոցա են պատկանում, այլ և «զինչ», գոչում է Գրիգոր վշտացած, «զինչ այնչափ կարօտեցաք ի բանս սոցա և վասն որոյ իրիք ուղղութեան»։

Հաւատոյ նկատմամբ եւս գրում է որ լիապէս հետեւում է Յովհան Իմաստասէրի, Գրիգոր Վկայասէրի, Բարսեղին, Գրիգորիսին և Ներսէս Շնորհալուն, որոնց գրուածները մնում են իւր մօտ։ Ապա յիշելով որ Յոյնք յառաջ են կոչում բազմիցս, յորդորում է որ չպէտք է վատաբար յետ քաշուել, այլ դիմադրուել, եթէ երկաբնութիւն են ասում, ըմբերանել և յանդիմանել, եթէ դառնան, ընդունել որպէս եղբարց. «եթէ լուծան ի պէսպէս աղտեղագործս մարմնոյ, լիցուք պատճառս զղջման նոցա. եթէ ներքինեօք և ներքինապետօք վարին, խրատեսցուք զաղտեղի գործս նոցա, թերեւս զկծեսցին սրտիւք և հայեսցին յանձինս...» եթէ ոչ գոնէ մեր լաւութիւնք ցոյց տանք նոցա։ Բայց այդ միայնակ չէ կարող անել, ուստի և հրաւիրում է խորհրդակցել, ասելով. «աչք էք գլխոյս լուսատու և ձեռք մարմնոյս կերակրիչք, բան և ձայն լեզուի շարժողիս։ Արագ այսր պարտիք ժամանել, զի թերեւս թիւրեալ իցէ գլխոյս ի լուսոյ պակասեալ և կամ տկարացեալ իցէ մարմինս...» Նա խոստովանում է ուրեմն, որ ինքն թէև գլուխ է, սակայն առանց ձեռաց, ձայնի, խօսքի, ոչինչ չկարէ անել և թէ եկեղեցին սիւներով է կանգուն և այդ սիւնքն են Հայոց եկեղեցականք, վասնորոյ առանց նոցա՝ մենակ ոչինչ չէ ուզում ձեռնարկել։

Փոքր ինչ թունդ էր և անդէպ Տուտէորդու նամակն, որ, ինչպէս երևում է, անխոհեմութեամբ հարկ էր համարել յիշեցնել Գրիգոր Տղային, թէ նորա որ և իցէ շեղումն նախնեաց շաւղից պիտի զրկէր նորան իւր աթոռից. ընդ նմին և պատուիրել է կամ փոքր ինչ անվայելչապէս դիտել է, որ Գրիգոր նստէ և լռէ և պատասխան չտայ Յոռոմոց անօգուտ թղթոց։ Հաստատ չէ կարելի որոշել, թէ ի՞նչ էր Տուտէորդու նամակը բովանդակում, զի եթէ Գրիգոր Տղայի թուղթը համեմատենք

Հիւսիսայքին կողմանց վարդապետած գրածին, որին այն պատասխան է, կենկատենք որ Գրիգոր յաճախ խստագոյն է պատասխանում, քան նոքա արժանի են, կամ թէ այլապէս է հասկանում այն նկատողութիւնք, որոնք գտընւում են նոցա թղթի մէջ։ Գրիգոր յիշեցնում է որ ինքն անձնահաւան ջանքերով չէր կաթուղիկոսական «սարսափելի պատուին բարձրացել, այլ ազգի կամքին» ընջանելով և ամուր հաստատուած հաւատքի վրայ ասում է. «պատրաստ կամ ղէմ յանդիման գի ամենայն որ ոք հարցի ընդ մեզ ընդ այս, խօսակցեցի և փշրեցի» (էջ 19)։ Տուտէորդին հաւատոյ համար դիմադրելով, մոռացել էր խոնարհութիւն պահել առ իւր եկեղեցու աստուածահաստատ աթոռն, ուստի և Գրիգոր ասում է իրաւապէս. «չզանգիտե՞ս յերկնահանգէտ աթոռոյս և աթոռակալէս», առ որոնք Տուտէորդին ամենայն երկիւղածութեամբ պիտի վարուէր, եթէ կարեւոր ինքնագիտակցութիւն ունենար։ Ապա Գրիգոր Տղայ գրում է որ իւր հաւատքը նոյնն է, որ ինչ իւր նախնիքը են դաւանել, բայց քանի որ Տուտէորդին իւր նամակում ջանացել էր, թուի թէ անուղղակի, Հայոց վարդապետութիւնը պարզաբանել Գրիգոր Տղայի համար, սակայն հարկաւ վերջինից աւելի պաշար չէ ունեցել, ընդ նմին Յունաց դէմ կռուելով, ոյժ էր տուել Քրիստոսի աստուածութեան և մարդութիւնից չէր զգուշացել, և իւր թեթև բանավարութիւնը զօրեղ է համարել, ուստի Գրիգոր ամենայն վսեմութեամբ և ոյժով յառաջադրում է Հայաստանեայց եկեղեցու վարդապետութիւնը Քրիստոսի բնութեան վրայ։ Նա բացաբանում է Քրիստոսի կատարեալ մարդ և միանգամայն կատարեալ Աստուած լինելը, յենւում է գլխաւորապէս Յովհան Օձնեցու «Ճառ ընդդէմ երևոյթականաց»-ին և ամփոփում է իւր հաւատալիքն ասելով. «հաւատամ և խոստովանիմ ըստ սրբոյն Աթանասի. Աստուած և որդի Աստուծոյ, և

որդի մարդոյ, ի մի բնութիւն Բանին մարմնացելոյ»: Նա իւր ուղղափառ դաւանանքը մայրով չէ շատանում և հերքելով Տուտէորդու, երեք անձնաւորութիւնից յառաջացած, Քրիստոսի մարդկային կազմի դրժումը, շեշտում է խորախորհրդով Նաև Յովհաննու վրայ. ասենք յեկեղեցականաց այժմ ջանան կարկատել՝ ոչ բնութեամբ միանալ Բանին Աստուծոյ ընդ մարդոյ, այլ անձնաւորութեամբ. և վկայ զայն իսկ զՆեստորականէ ունելով, զի Թէպէտ պատու կարասցեն ի մի բնութեան բան ածել զնա Հարկաւորաբար», որով և խփում է Տուտէորդու երեսին, որ «երկու բնութիւն ի մի անձնաւորութեան դաւանողք են այժմ ջանում կերպով իմն մի բնութիւն վարդապետել ի Քրիստոս: Ընդ սմին յորդորում է չհայհոյել Նեստորի, այլ մարդասէր լինել, ասելով. «մարդ է՝ արարած Աստուծոյ, և եթէ մոլորեալ է, դարձո. եթէ վիրաւորեալ է, սպեղանեօք պատեա. Քրիստոսի լեր աշակերտ»: Եւ քանի որ ինքն այդ սիրոյ մէջ, անսասան Հաւատք ունի և նախնեաց վարդապետութիւնից չէ շեղւում, գոչում է գեղեցկապէս. «մինչև ցյոյժ մի նշանախեցի ոչ պակասեցուցանեմք, և ոչ առաւելումք ի շարէ շինմանն: Հաւատարիմ առ իւրն, ապաստանիս առ այլն — այս էր ժառանգել Գրիգոր Տղայ, որին և լիագոյն արտայայտութիւն առաւ այս Հոգելից Թղթում: Ըստ որում և շեշտելով որ Հաւատարիմ է իւր այդ Ճշմարիտ Հաւատքին, բացայայտում է վերստին Թէ ինչու չէ խորշում արտաքին յարաբերութիւնից, գրելով. «յայս միայն եմ Հաստատեալ, զի որ առ մեզ այժմ խօսակցին, եթէ գտցեն յայսմ սորոց դաւանութիւն և Հաւատ յաստուածաշունչ գրոց վկայութենէ, ընդունիմք իբրև զեղբարս իւրաքանչիւր կարգօք և կրօնիւք. և թէ սխալեալք են՝ ընդունիմք զզղջումն. ապա թէ ոչ, աղօթեմք վասն դարձին իբրև զկարեկից անձն, որպէս ուսաք և ի վերայ թշնամեաց աղօթել: Հաւատափոխք ոչ լինիմք ըստ քոյդ

պատրաստական մնալոց, զինչ պիտի իւրաքանչիւրք անձանց սա-
ընկերն ամենամեծարել»։

Հռոմէական հաւատոյ անփոփոխելի ախոյեանները իւրեանց հաւանութեամբ Հայրապետին և նորին Գրիգոր գումարեց 1179-ին ի Հռոմկլայ մեծ ժողով և 33 ստորագրութեամբ որոշեց իւր մերժելն պատասխանն առ կայսրը Նա-գնելով կարծ ի կարծոյ Հայաստանեայց եկեղեցւոյ դաւանանքը, չեշտուած էր այդ ուղղափառ եղել է ի Հնումն, ուղղափառ դաւան և Շնորհալին և իւր գաւանը գրեց, միայն այդ ուղղափառութիւնը Նորա ծանուցուեցաւ Նոցա, որոնք պատեհութեամբ հայհոյում էին և զզայարտում Հայոց եկեղեցին։ Յիշում է թէ յորդոած է ամենայն ժողով, որ քրիստոնէութեան օգտակար է եղել, լինի այդ ժողովք ի Նիկիայ, ի Կ. Պօլիս, յԵփեսոս թէ այլուրեք։ Ընդ նմին և ուղարկելով Շնորհալու թղթերից մէկի պատճէնը, ինքն և ժողովը պարզում են Քրիստոսի բնութեան և կամաց խնդիրը։ Նոքա կրկնում են Հայրերի խօսքերն և մերժելով Եւտիքէսի առած մի բնութիւնը, գրում են՝ «ոչ ի վերայ միոյ բնութեան ասացան բանքս սուրբ Հարցս, այլ ի վերայ երկուց միացելոցս»։ Իսկ կամքի վրայ գրում են. «նոյն ինքն էր որ ներգործէր զաստուածայինն աստուածաբար և զմարդկայինն մարդկաբար ի պէտս մերոյ փրկութեան, վասն զի Աստուած էր և մարդ», որով մերժում են երկու կամք և երկու ներգործութիւնը Հռոմոց։ Ապա յիշում է ժողովն, որ Հռոմք համաձայնութիւն են տուել Հայոց ուղղափառ հաւատոքին թէ «ոչ միայն ի ձէնջ, այլ և յաստուածապատիւ ինքնակալէդ տուաւ մեզ համաձայնութիւն ձեր ի սուրբ և յուղղափառ հաւատս»։ Սակայն ի լրումն ամենայնի որ Հայաստանեայց եկեղեցին մերժում է «երկու բնութիւն ի մի անձնաւորութեան» դաւանել, ժողովը ժխտում է այդ վարդապետութիւնն ամենայն ճարտարութեամբ՝ ցոյց տա-

լով. որ «ի մի անձն երկու բնութիւնս» ասելը—բաղձանցնել բաժանել է զմին Քրիստոս, ըստ որում յառաջ է բերում Գրիգոր Նիւսացու Հակիրճ խօսքերը. ապացուցանէ այս յարացոյց աստուածութեանն ընդ մարմնոյ միութեան, ըստ որում միաւորեալ Բանն անշփոթ, ոչ ըստ անձին յեղանակի, քանզի սա ի բաղմացելոցն թուի-գոր (էջ 260)։

Ծորոմը դրօշմելով Հայաստանեայց եկեղեցու Հաւատքի ուղղափառութիւնն և զանխլաբար Հիմն ի վեր տապալելով քաղկեդոնականութիւնը, վերջացած է Համարում ամենայն ինչ, և յորդորում է «ի բաց վարել իբրև գլացող ճշմարտութեանն նոցա, որք պղնտարաղ են խօսում Հայոց Հաւատքի վրայ, արՀնացեալ օտարակալութիւնն ի գլուխ մարդասեաց թշնամեացն կուտեցէք, և առ եղբարս զսէր և զխաղաղութիւն պայծառացուցէք»։

Հայոց այս վերջին թուղթը առել չՀասած, մեռաւ Հոռոմոց պատրիարքն և նորան ուղեկցեց կայսրն Մանուէլ։ Թէրևս այս բանակցութիւնք մեղմացրել Հոռոմոց թշնամութիւնն դէպի Հայոց, որ նոյն իսկ կայսրն Մանուէլ «ըստ սաստկութեան բարուց իւրեանց զոր ունէին առ ամենայն քրիստոնեայս», չէր շատանում Հալածանքով, այլ նաև Հեթանոսաց պարգևներով գրգռում էր Հայոց դէմ (Միք. Մեծ. 428. 437)։



## ԺԶ.

*«Մի յուսայք յիշխանս յորդիս մարդկան, զի ոչ գոյ փրկութիւն ի նոսա»:*
ՍԱՂՄ. ՃԽԵ. 3.

---

Մինչդեռ Հայոց կաթուղիկոսք ամոքում էին Ցունաց թշնամարկութիւնը, հա՛ զօրացաւ Բիւզանդեան նախկին հզօր պետութեան՝ մի անկեան բարձանց վրայ Հայ քաջամարտ իշխանաց բազուկը։ Բիւզանդ յաղթուել ձեռք էր վերցրել Կիլիկիայից և Հայք թիկունք էին որոնում ապահովութեան։ Ցոյս կար, որ խորտակուած պետութիւնը Հայոց դաշնակիցը պիտի դառնար, բայց այժմ արևմուտք ևս դուրս եկաւ, մրցելով Հայոց բարեկամութիւնը շահելու։ Թէև խաչակիրք արդէն փոքր ի շատէ գրաւել էին Հայոց, այնու հանդերձ, որպէս անհաստատ ոյժեր և մանաւանդ որպէս հեռու աղբիւրից բղխեալք և ինքեանք աղբիւրին կարօտելով, չէին կարող ինչ Հայոց մատակարարել։ Բայց այս յուսատեղին այլ կերպարանք ստացաւ, երբ արևմտեան իշխանք անձամբ յարաբերութեան ճանապարհ բացին Հայոց առաջ։ Այդ իշխանք էին Ալամանց կայսրները, որոնք «Հռովմայ ինքնակալներ» էին կոչւում կամ «Հռովմայեցոց կայսրներ» և «փրկիչք աշխարհաց»։ Տարածուեցան և զրոյցներ, որ իբր թէ Գերմանք Արշակունեաց

ցեղից են, որ վիճակուած են աշխարհը տիրելու եայլն։ Կային և պառանցողք, որ Բիւզանդն է այդ բախտաւորը, մինչդեռ առաջուայ հզօր պետութիւնից միայն մի բեկորն էր շնչում։ Այսոքիկ մարգարէութիւնք էին Ռուբինեանց քաղաքականութեան նիւթ տալու համար. միւս կողմից Ռուբինեանք փառաբանում էին, որ Աբրահամի և Արշակունեաց, այլ և Դաւիթ մարգարէի ցեղից էին։

Քանի որ Բիւզանդի պարտութեան մուխը չէր հանգչել, Ռուբինեանք այլ դաշնակցի էին կարօտ ոչ միայն Յունաց մախանաց, այլ և հեթանոսաց դէմ։ Հայ իշխանաց բարեկամութիւնը սերտ կապուեցաւ Գերմանաց կամ «Հռովմայեցոց» կայսրների հետ, որ սկսուեցաւ, ինչպէս յիշեցինք, խաչակիրներով։ Վերջնոց վարիչները Հռովմայ պապերը լինելով, ջանում էին օգտուել առթից և արևելքում իւրեանց մարմնաւոր նպատակաց համար և մանաւանդ Յունաց զկծեցնելու մտօք՝ յարաբերութիւններ կապել, ըստ որում և ճգնում էին Գերմանաց կայսրների յարաբերութեանց մասնակից երևալ։ Երբ Հայոց կաթուղիկոսք ևս, թէև շատ ուշ, անձամբ մօտեցան Ռուբինեանց, սոցա յարաբերութեանց շրշուփները նոցա ևս կպան, այդով և հապա քանի մի թղթագրութիւնք փոխանակուեցան Հայոց և Հռովմայ քահանայապետաց միջև։ Ոմանք կարծում են թէ այդ սկսուել է Գրիգոր Բ. Վկայասէրի օրով, բայց այդ անյատակ սխալ է, որ ծագել է Հռովմայ Գրիգոր VII-ի մի թղթից՝ գրեալ 1080-ին առ «արքեպիսկոպոսն Սիւննադայ»։ Այդ քաղաքն ի Փռիւգիա է, «արքեպիսկոպոսը» կաթուղիկոս ասել չէ։ Իսկ եթէ Սիւննադան Ծամնադաւի աղաւաղումն է, պիտի նըկատենք, որ 1080-ին Գրիգոր Վկայասէր Ծամնդաւում չէ եղած, այլ ի ճանապարհորդութեան։ «Սիւննադայումն» կար այն միջոցին յակոբիկեան մետրապօլիտ մի, տեղի չունինք պնդելու թէ չկարէր անդ և Հայոց արքեպիսկոպոս

մի լինել, որ պահանջել էր Գրիգոր VII-ից, ի Հռովմ ապաստանեալ Մակար ոմն հերետիկոսի դուրս վռնդել։

Հաստատ է սակայն, որ Հռոմ յարաբերութիւն ձանկեց Հայոց կաթուղիկոսաց հետ ԺԲ. դարում. այսպէս է պատմում Ներսէս Լամբրոնեցին Շնորհալու Ներբողի մէջ. «Մեծն ի Հռովմ լուրն հասեալ առ Հայրապետն որ անդ նստեալ. նա գաւազան և քօղ յղեալ՝ զրով զսէրն պահանջեալ»։ Ուրեմն Հռովմ սիրոյ յարաբերութիւն խնդրեց Գրիգոր Գ-ից։ Թերևս այս լինի պատճառ եղած, որ Ֆրիզինգենի Օտտօ եպիսկոպոսի (VII, 32) առասպելախառն ասածին նայելով, հրեշտակութիւն մի եկաւ ի Վիտերբի, եթէ հարկաւ այդ սուտ այցելութիւն կամ փոքր կաթուղիկոսներից ղրկուած չէ։ Ընդ սմին գիտենք որ Հայք խիստ ատում էին Հռովմէական կղերին, այնպէս որ երբ Թիւրքերն առին Միջագետքը, Հայք և Ասորիք խլեցին Թիւրքաց միջոցով Լատինաց եկեղեցիքը Սամուսատում, Եդեսսայում ևայլն (Ներսէս Լամբրոնացի 528)։

1185-ին Գրիգոր Դ. Տղան ուղարկեց Գրիգոր եպիսկոպոսին առ Լուցիուս III պապն և խնդրեց յորդորել Սահակ Փիսիկ կայսրին չհալածել Հայոց։ Որպէս պատմում է առասպելաբար Վարդան Մեծն, Լուցիուս հրաւիրեց Գերմանաց, Ֆրանկաց, Անգլերի թագաւորաց, նոցա մեծամեծներին և եպիսկոպոսներին, խորհուրդ արաւ նոցա և Երուսաղէմի պատրիարքի հետ և նոցա ձայնակցութեամբ թուղթ գրեց առ Գրիգոր Դ., յայտնելով որ Հայոց կաթուղիկոսն այնուհետև իշխանութիւն ունի ոչ միայն Հայոց, այլ և Յունաց և այլ ժողովրդոց վրայ Արևելքում, ճիշտ այնպէս, ինչպէս իբր թէ ինքն պապն Հռովմայ իշխանութիւն ունէր արևմուտքի վրայ։ Նա մեծարեց Հայոց պատգամաւորին, հագցրեց նորան իւր եկեղեցական զգեստը և ուղարկեց առ «եղբայր կաթուղիկոսն» իւր պալլիումն, իւր խոյրն

և իւր կօշիկներն, ի նշան սիրոյ[1]: Ի Հարկէ, Հռովմ իշխանութիւն չունէր այդպիսի իշխանութիւն տալու, սակայն նա կարէր այդ անել քանի մի նպատակով. 1) Հայոց բարեկամութիւնն որսալու. 2) Յունաց ճնշելու և 3) իւր բաղձացած արևմտեան իշխանութեան՝ իրաւաբանական տեսք իմն տալու: Նորա այդ թղթի վրայ է որ հեղինակուեցաւ «Թուղթ Դաշանց» կոչուած աղաւաղ և անմիտ գրութիւնը ԺԴ—ԺԵ դարում:

Հռովմ առաւել մօտեցաւ Հայոց, երբ խաչակիրք օգնութեան կարօտում էին: Դեռ Կղեմէս III (†1191) թուղթ գրեց առ նոյն կաթուղիկոսն իւր «պատուական եղբօր» և քանի մի աւետարանական համոզաբանութեամբ խնդրեց յորդորել Հայոց օգնական լինել խաչակրաց, ընդ նմին և բանալով՝ ըստ Հռովմէական ճարպիկութեան՝ իւր աստուածակատակ թողութեան պարկը, գնում է խաչակրաց օգնողների բոլոր մեղքերը[2]: Բայց շուտով այս արտաքին գործոց քաղաքականութիւնն անցաւ Ռուբինեանց ձեռքը, Լևոն Բ-ի գահակալութեամբ (1186): 1189-ին ծանօթացաւ սա խաչակրաց ռազմավար Ֆրիդրիխ I Բարբարոսա, Գերման կայսրին, որ Լևոնի բարեկամական մեծամեծ նըպաստներին ի շնորհակալութիւն՝ խոստացաւ թագ ուղարկել, բայց ինքն խեղդուելով, չկարեցաւ կատարել: Միւս կողմից բարեկամացաւ Բիւզանդի Ալէքս III (1195—1203) կայսրին. այս սէրը դարձեալ եկեղեցական եղաւ, որպէս զի Բիւզանդ ևս շահ իմն նկատէր իւր համար: Լևոն առ ինքն ձգեց և Ներսէս Լամբրոնացուն, որի

[1] Վարդ. Գլ. ՀԹ: Մխիթ. Այր. էջ. 80. Յիշատակ. Ներս. Լամբ. առ Զարբ. նախ. Թարգմ. էջ. 500. Թղթի մի կտորը Սիսուան 467: Ս. Էջմիածնի ձեռագրաց մէջ ևս կայ, որ գուցէ ժամանակին հրատարակենք: [2] Գրչագիր Ս. Էջմիածնի մատենադարանի: Տես և Սիսուան էջ 467: Այս թղթերի մասին «Արարատի» մէջ մանրամասն պիտի խօսենք:

և իւր համակիրների երևակայութիւնը մարգարէութեանց աշխարհումն էր պտտում, որոնք Ս. Գրքից այս ու այն խօսքը պոկելով և ջլատելով, ջանում էին մարգարէներ հռչակուել և գուշակել, որ Բիւզանդի հետ է ամենայն ինչ պայմանաւորուած, ըստ որում նորա ձախութեամբ շլացած, ասում էին, որ եթէ նոյն իսկ Աստուծոյ արքայութիւնն այն ժամանակ պիտի գար, երբ այդ պետութիւնը փլատակուէր։ Այդպիսի մի յաւիտենականութիւն վերագրելով այդ մերձամահ պետութեան, կարծել սկսան թէ հենց այն է երազած «երկաթէ գաւազանն» որ կար, որին պէտք է հայք յենուէին, այլազգի հասանուտ հրոսակներից պատսպարուելու համար։ Այդ ցնորքներն առաւել ևս համոզական էին երևում կարճամտաց, երբ նկատում էին Բիւզանդի սէրն իբր թէ վայելող Վրաց իշխանաց կենդանական շարժումները։ Այդ ցնորքներով էին բուծւում այդ ժամանակի օտարայոյս անձինք, որոնք անցեալը մտահան արած և ապագան չտեսնելով, ողորմաբար ներկայով էին ապրում։

Լևոն այդ բոլոր ցնորքները գոցանով ապրողներին թողնելով և Աստուծոյ և ինքեան ապաւինելով, մի մեծ ծրագիր ունէր իւր առաջ՝ այն է սէր հաստատել քրիստոնէից մէջ և միանգամ ընդ միշտ կործանել հեթանոսաց կազմը։ Նա այդ լրիվ գործունէութեամբ մէկ «տիեզերական ժողով» գումարեց ի Տարսոն 1196-ին Ծաղկազարդին, որտեղ կային շատ Յոյներ։ Ժողովի նպատակն էր սէր ներշնչել երկու կողմերի մէջ և ջանալ արմատախիլ անել հնացեալ ատելութիւնը։ Ներկայ էր և Գրիգոր Ապիրատ, սակայն բացառ Ներսէս Լամբրոնեցին մէկ գեղեցկաբարբառ ատենաբանութեամբ, որ լիակատար ամփոփումն է իւր և Լևոնի քաղաքականութեան։ Լամբրոնեցին իւր գիտութեան բոլոր ճարտարութիւնը յերարկում է ժողովականաց համոզելու համար որ չպէտք է քրիստոնէից ատել,

ըստ որում յաճախ իմաստակութեան է դիմում անգամ։ Նա հայեացք ձգելով առաջին դարերի եկեղեցական աշխարհի վրայ և յիշելով որ Քրիստոսի առաջ յոյն, ասորի, հայ, վիր և այլն հաւասար են և Սպանիա, Արևելք, Բարբարոսք, Եգիպտացիք և այլք միակ Գլխին, այն է՝ Քրիստոսի անդամներն են, նկարագրում է Տրդատի և Կոստանդիանոսի ժամանակը, յորում «արարին զամենայն տիեզերս մի տուն միոյն Քրիստոսի, և եկեղեցի» և իբր թէ հռովմայեցոց տէրութիւնն. «իբրև զգաւազան երկաթի՝ նեցուկ պնդութեան և ամրութեան հանուրցս լինէր»։ Սակայն սատանան, ասում է նա, ինչպէս Աստուծոյ խօսքը թիւր մեկնելով, զթեցրեց Ադամին և Եւային, այնպէս և՛ս արաւ քրիստոնէից հետ. եկաւ Մակեդոն հոգւոյն Սրբոյ դէմ թշնամանք յարոյց, եկաւ Նեստոր և ակսաւ յորդորել Միածնի փառաց զլանալու, եկաւ Եւտիքէս, որ «զխաւար խաւարաւ բժշկել վարդապետէր»․ և ահա տապալուեցաւ եկեղեցու միութիւնն և մի հիման՝ Քրիստոսի վրայ հաստատեալքս բաժանուեցանք, ըստ որում թէև մի է եկեղեցու վէմն Քրիստոս, սակայն այժմ իւրաքանչիւր ոք այն իւրն է համարում, և քրիստոնէից բարիքները թշնամիք են վայելում, վասն զի Քրիստոսի մի եկեղեցին տրորուել է բազում մասերի։

Այնուհետև Լամբրոնեցին (Ջաք. գլ. Ը.) ծեքելով, ձգնում է սփոփել հայոց որ քրիստոնեայք պիտի միանան և Աստուծոյ օգնութիւնը ստանան, և այդ խօսքերը դարձնելով, գոչում է առ ժողովականք մանաւանդ առ Գրիգոր Ապիրատ. «քեզ տայ զքաջալերութիւնս, ով Ծիսուսի փոխան ի մէջ մեր՝ նորա պատուովն բազմեալ», իւր գեղեցիկ ճարտասանութեամբ նորա մտաց վրայ ես ազդել ջանալով։ Եթէ հեթանոսք միանալով, ասում է նա, Աստուծոյ շնորհները վայելեցին, քրիստոնեայք առաւել ևս, ուստի չպէտք է այլանդակեալ տալ, թէ նոքա հայ

չեն և կամ զՔրիստոս Աստուած և մարդ են դաւանում. ընդ սմին և մտքերի մանրամասնութիւնք վերակոխելով, ձայնում է. «Ո՞ ոք ի ծագս աշխարհի եկեղեցի Քրիստոսի, որ ոչ զՔրիստոս Աստուած և մարդ դաւանէ. և թէ այս այսպէս է, ապա ընդէ՞ր այսքան հակառակութիւնք ի մէջ մեր բռնացեալ», փաստորդ և կարծում է որ հակառակորդք ոչ թէ իրար դէմ են կռւում, այլ հերձուածողաց, որոնք այլ ևս չեն ի միջի, և իբր թէ դոցա դէմ են եղել Հայոց ժողովները: Լամբրոնեցին ջանում է Յոռոմոց դաւանանքը հայականին վերածել և ապա պարզում է որ Հայք ոչ թէ մի բնութիւն ասելով սոսկ աստուածային կամ լոկ մարդկային բնութիւն են հասկանում, այլ «զմի բնութիւն ասել բանին մարմնացելոյ՝ անճառ խառնմանն հռչակ՝ ընդդէմ Նեստորի. և բան ասելով՝ և մարմնացեալ, զկատարելութիւն այլ և այլ բնութեանցն հաստատեմք՝—ըստ սրբոյն Կիւրղի»: Մի բնութիւն ասացեալն ի վերայ Քրիստոսի՝ ոչ թէ զէութիւն նորա հաստատէ, որ յերկուցն էր անշփոթ և յայտնի, այլ զներգործութիւն անճառ միաւորութեանն բացաձայնէ»[1]:

Լամբրոնեցին այսպէս մակերևակի հաշտեցնելով երկու կողմերը, բանավարում է, որ Հայք են Յոռոմոց անգոսնել ատել սկսել, ուստի և պարտաւոր են իւրեանք իսկ սիրել սկսել՝ սիրուելու համար, վասն զի եթէ ս. Գիրքը հրամայում է հեթանոսաց անգամ սիրել, ուր մնաց Յոռոմոց, որոնք քրիստոնեայ եղբայրներ են. «մի գլուխք ունիմք զՔրիստոս, ասում է Նա, միոյ գլխոյ անդամոց զիա՞րդ հնար է ի միմեանց պատառակտել. վէ՞րս ունիմք, ի միմեանց բժշկեսցուք. առողջութի՞ւն, ի փառս իւրեաց զուարճասցուք...»: Նա դժկամակում է որ միասին հաց են ուտում, բայց միասին հաղորդուելուց խորշում են, ըստ որում և

[1] Տպագրուած՝ Վենետիկ 1865:

ազատամտութեան մոլեգոյն ծայրայեղութեան հասնելով, քարոզում է այնպէս սիրել նոցա, որ մինչև անգամ լաւ համարել զրկուիլ քան զրկել, յաղթուիլ քան յաղթել։ Ամենայն հաղորդութիւն մի և նոյն է, չեշտում է նա, չպէտք է խորշիլ, պղծուելուց վախենալով. անօգուտ է և միմեանցից հրաժարուիլը, վասն զի այդով չէ կարելի նոցա շահել, այլ սիրով ըստ Պօղոսի, ըստ որում երբ ատում ենք մէկին, նա առաւել ևս պարծենում է։ Իսկ զանազան տօներն ու կարգերը սիրոյ հետևանք են, եթէ ատելութեան պատճառով է որոշումն, այդ չար է։ Հուսկ ուրեմն նա եկեղեցական սիրակցութեան վրայ իւր գաղափարք ամփոփում է այսպէս. «զի թէ վասն զեղբայրն անգոսնելոյ, և զնորա պատարագն որ ի խմորեալ հացէ, առնես գքոյդ պատարագն բաղարջ, թերի ես ի հաւատոյն, և նախանձուն ծառայ։ Իսկ ապա թէ պահես զքոյդ աւանդութիւն ի փառս Աստուծոյ, և ընդունիս զնորայն ի նորին փառս, միոյ Քրիստոսի մարմին ճշմարիտ զ'ի խմորուն օրհնեալ հացէն և զբաղարջէն, այդ է գովելի կարծիք»։

Ուրեմն Ներսէսի ջանքն է սէր հաստատել քրիստոնէից մէջ, առ որ ոչինչ միջոց չէ խնայում։ Նա ուղղափառ է համարում բոլորին ևս, թէև դորանով հակասութեան մէջ է ընկնում։ Նոյն ուղղութեամբ նա գրել էր դեռ ջահիլ ժամանակ իւր խորհրդածութիւնք, որում զոր. արդարացնում է Հայոց եկեղեցու առանձնութիւնք՝ հաղորդութեան, ընդ նմին և Յունաց ու Հռովմայ, Հայոց եկեղեցականաց միրուք պահելն և Հռովմայ՝ չպահելն ևայլն։ Նորա սկզբունքն է, թէ մեղք է ուրիշին քննել քննադատելն, և միայն ինքնաքննութիւն թոյլատրելի է։ Նորա գերական է՝ ատուիլ հակառակորդից, քան թէ ատել, յաղթուիլ, քան թէ յաղթել։ Մի խօսքով նա ծայրայեղ միջոցի է դիմում քրիստոնէից մէջ սէր հաս-

տանելու համար. ըստ որում որպէս Հայոց քարոզում է լինել այլոց դիմաց, նոյնը պնդում է որ այլք եւս դէպի Հայոց լինին։ Նորա ջանքն ուղղուած է առ այն, որ Հայք դադարեն օտար քրիստոնէից առնել։ Եւ որպէս զի իւր խօսքերը հեղինակութիւն ստանան, նա կոչում է այն ժողովն աստուածային գործ, որին ոչ ոք չպիտի համարձակուէր հակառակելու։

Լեւոն հասաւ յաջողութեամբ իւր նպատակին։ Հռովմայեցոց և Բիւզանդացոց կայսրները նորա բարեկամքն էին. նա գրաւեց նաև միւս այլ քրիստոնէից իւր առատ բարեգործութեամբ. «ոչ միայն զհամազգի վանորայս այսպէս փարթամացոյց, ասում է Միքայէլ Մեծն, այլ և զայլալեզու քրիստոնէից, զԱսորոց և զՓռանկաց և զՎրաց, չպահելով նոցա ոխս, զոր արարին նոքա ընդ նա և ընդ ազգս նորա արենեայս»։ Տարսոնի ժողովից զկնի Հռովմէական հնադարեան գահի Բիւզանդեան գահակալն՝ Ալէքս III Թագ ուղարկեց 1196-ին Ռուբինեան միահեծանին պսակելու, խնդրելով նորանից «միաբանութիւն սիրոյ»։ Լեւոն յղեց Ներսէս Լամբրոնացուն երեք իշխանաց հետ ի Կ. Պօլիս Հռոմոց միաբանութեան աշխատելու, իսկ իւր քարտուղար Յովհաննէս եպիսկոպոսին առաքեց դէպի Աքքա նուաճեալ Հռովմայեցոց Գերման գահակալի Թագը հանդիպելու, որին ուղեկցում էր Կոնրադ՝ Մայնցի գերման եպիսկոպոսը։ Ըստ Կիրակոսին (92), Կոնրադ պահանջած պիտի լինի «տօնել զտօն Տեառն՝ և ամենայն սրբոց, յորում աւուր հանդիպի, և միշտ յեկեղեցւոջն կատարել զաղօթսն տուընջեան և գիշերոյ (այս Կիլիկեցոց անկարգութեան դէմ էր)... և ոչ լուծանել զճրագալոյսն ծննդեան և յարութեանն, բայց միայն ձկամբք և ձիթով». կամ թէ ոչ ոսկով և արծաթով վճարել։ Իսկ Վինկենտիոս ոմն պատմում է որ Լեւոն պարտաւորուել է Լատին լեզուն ուսուցանել տալ Հայոց մանկանց։ Սա-

կայն Միքայէլ Մեծն, Սամուէլ Անեցի, Վահրամ Եդեսացի, Սմբատ, Հեթում պատմիչ և Վարդան Մեծն այսպիսի ինչ չգիտեն։

Աւելորդ չէ դնել այստեղ Միքայէլ Մեծի պատմածն, որ ուշադրութեան արժանի է, իբր օտար, բարձրաստիճան անձի մի խօսք. նա գրում է. «իսկ արիագոյնն Լեւոն տիրեաց 72 բերդից, և ել անուն նորա ընդ ամենայն երկիր. և փութացան պսակել զնա տունն Յունաց և տուն Փռանգաց. ըստ որում առաքեցին նմա թագ յերկուքանչիւր կողմանց՝ ի պարծանս ինքեանց առնելով զնա»։ Իսկ Վահրամ Եդեսացին, Լեւոն Գ-ի քարտուղարը գրում է.

Լեւոն «անուն ստացեալ,
Եւ ամենից գովասանեալ։
Փռանկաց ումբրուռն (empereur) զայս լուեալ,
Եւ Յունաց կայսրըն ծանուցեալ,
Յաստուածական խնամոցն յուզեալ,
Եւ երկոքեանն թագ կապեալ,
Մեծաւ պատուով ասա առաքեալ,
Զմեծն Լեւոն թագիւ պատուեալ։
Յայնժամ Հայոց բովանդակեալ,
Եւ ի Տարսոն քաղաքն եկեալ,
Կաթուղիկոսն ի մէջ կացեալ,
Եկեղեցին անդ ժողովեալ,
Եւ օրհնաք զԼեւոն օծեալ»։

1197 ին[1] յունուարին Լեւոն մեծահռչակ տօնախմբութեամբ օծուեցաւ Հայոց թագաւոր Հայաստանեայց եկեղեցու հաւատարիմ հովուապետ Գրիգոր Ապիրատից,

---

[1] Միք. Մեծ. 504։ Վարդ. ՁԲ։ Կիր. 94։ Հեթ. պատմ. 81։ Սամ. Անեցի։ Կան և այլ աղբիւրներ գրչագրաց մէջ, որոնք ժամանակին կհրատարակենք։

և նոյն միջոցին թագ ստացաւ և Զաքարիա սպասալարից փառաց ի փառս բարձրանալով եռապատիկ թագաւորութեամբ։

Իսկ Լամբրոնացին Կ. Պոլիս հասնելով, խորհրդակցութիւն ունեցաւ Յունաց գիտնոց[1] հետ և չնայելով իւր բոլոր ոգևորութեան և սիրայօժար տրամադրութեան, ոչինչ չկարեցաւ գլուխ բերել. յուսախաբուած և ապաշաւելով վերադարձաւ նա ձեռնունայն և իւր ծայրայեղ ազատամտութեամբ հանդերձ ամուր վերջակէտ մի դրաւ այդ անմիտ մտադրութեան, գրելով. «զտայք զսոսա (զՅոյնս) անծանօթք ի սոյանէ (ի թղթոյ) թանձրաբարբառք, և հրէական կամօք ընդ նիւթս կապեալք, որք ոչ ախորժեն ծառայել Աստուծոյ՝ նորոգութեամբ հոգւոյն, այլ հնութեամբ գրոյն։ Եւ ստրջացեալ ի հոգևոր կամս մեր՝ դարձայք յիմաստախոհ յուսոյ սոցա՝ ամօթով...»[2]։ Մեծ էր նորա հիասթափումն, մեծ էր և նորա ստրջանքը, բայց մեծ էր նորա ամօթն այն անձանց առաջ, որոնց քարոզել էր զրկուիլ յոյներից, քան թէ զրկել նոցա. սակայն և այնպէս չատեց նոցա և չդադարեցրեց իւր յարաբերութիւնք, չդադարեցրեց մանաւանդ, զի ազնուագոյն վարդապետներից անգամ հալածուեցաւ, ըստ որում իւր մեծամտութեան և գիտութեան վրայ հպարտացած, ընդհարուելով հսկայազօր և բանամուր Լևոն արքային, փշրուեցաւ անդարմանելի։

Լևոն իւր արտաքին քաղաքականութիւնը հրաշապէս վարելով, գիտաց և ներքինի սանձերը պահել. նա իւր հաւատարմութիւնն առ հայաստանեայց եկեղեցին հրապարակով էր հռչակում։ Գումարեց նա Տարսոնի ժողովն և առաջ նետելով Ներսէս Լամբրոնացուն, ինքն

[1] «Հարցումն պատրիարքին և պատասխանի ս. Ներսիսի», որ շուտով պիտի հրատարակենք, բանակցութեան պարագների հետ միասին: [2] Գրչագիր ի մատենադարանի Ս. Էջմիածնի:

յետ քաշուեցաւ, իսկ երբ Լամբրոնացին օգնութեան մէջ ծփալով Տարսոնի եկեղեցում ժողովական Յունաց ի հաճոյս ուզեցաւ յունարէն աւետարան կարդալ տալ, Լեւոն խիստ արգելեց այդ[1]։

Այնուհետեւ Հայաստանի արեւելեան վարդապետք, որոնք ուշադրութեամբ դիտում էին Կիլիկիոյ եկեղեցական գործերը, վայրացան Լամբրոնացու վրայ, և քանի մի թղթեր գրեցին նորան բուռն յարձակմամբ և գանգատ բարձին նորա դէմ առ Լեւոն։ Լեւոն ամոքեց գանգատաւորաց մաքերն և քննութեան կանչեց Լամբրոնացուն, հրաման ուղարկելով առ նա, որպէս «առ տղայ մանուկ»։ Այդ հրամանը կամ ապսպրանքը կրկնում է Լամբրոնացին իւր առ Լեւոն գրած պատասխանի մէջ, ասելով. «յայս համառօտեցան բանքն, թէ անկարգ է իմ ընթացքս և անօգուտ. և չէ ընդ շաւիղս երանեալ հարց մերոց Գրիգորիսի Վկայասիրի, և նորին համանուանն՝ որ յԵգիպտոս, և որ զկնի նորին աստ Հայրապետ Գրիգորիոս, և նորին եղբայրն Ներսէս. և ես ստերիւրեալ գնամ ի նոցա շաւղաց, և դուք և այլ Հայք՝ նոցին ընթացակիցք։ Եթէ ոչ էի յայս, արժանի էի հայրապետութեան և պատուոյ. սակայն այս վերջացուցանէ զիս ի պատահմանէն պատուոյ. և ոչ միայն զիս, այլ և ձեզ լինիմ պատճառ նախատանաց ի Զորոյգեաացեացն, որք և անէծս վայրապար խօսին ի գլուխ իւրեանց, և դուք աղաչեցէք զմեզ վասն զնոցա գայթակղութիւնն չինելոյ դառնալ ի մոլորմանէս. ապա թէ ոչ՝ զրկիմք ի պատուոյն, զոր մինչև ցայժմ ի ձէնջ եմք ընկալեալ»։

Լամբրոնացու ամբաստանողք էին գլխաւորապէս

---

[1] Թուղթ Լամբրոնեցւոյն առ Լեւոն Թագաւոր. Վենետիկ, 1865. էջ. 237:

Ձորոյգետացիք, Հաղբատեցիք, Անեցին, Տուտէորդին և Քո-
բայրեցին, իսկ ամբաստանութիւնն էր. նախ որ Լամբրո-
նացին նոյն զգեստով չէր պատարագում, ըստ նմին և
անարժան էր սեղան բարձրանալու և երկրորդ, որ ան-
խտիր հաղորդւում էր այլ քրիստոնէից հետ: Առաջին
կէտում չենք կարող որոշել թէ Լամբրոնացին ինչ նոր
զգեստ կամ ծէս էր նորոգել, զի նա ընդհանուր է խօ-
սում այդ հարցի վրայ, իսկ եկեղեցական զգեստը շատ
հին է հայոց մէջ և արդէն Ե-դ դարից վկայութիւն ու-
նինք որ հայք Կ. Պօլսից էին այն բերել տալիս: Միայն
թէ Լամբրոնեցին բուռն համարձակութեամբ պաշտպա-
նում է զինքն, հիմնաձայնելով. «պատրաստ եմ ի պա-
տասխանատուութիւն... որ չեմ մոլորեալ և ոչ ստերիւր-
եալ ի սուրբ եկեղեցւոյ ուղիղ շաւղացն, ոչ ըստ հա-
ւատոյ, և ոչ ըստ բարեկարգութեանն», և յարում է որ
դատախազ չէ եղել իր ամբաստանողաց մոլար ընթաց-
քին: Նա ասում է որ ինքն ամենևին չէ փոխել այն ինչ
որ ստացել է իւր հայրերից և ունի հայոց կաթուղիկո-
սաց գրուածներն, որոնցով կարող է ապացուցել իւր
ճշմարտութիւնը, սակայն յիշում է և իւր օգտակար նո-
րոգութիւնք որ վանքերում երրորդ, վեցերորդ, և իններ-
րորդ ժամերը ջոկ ջոկ է կատարել տալիս «զիւրաքան-
չիւրսն յիւր ժամու... և եօթն անգամ յաւուրն զԱստ-
ուած» է օրհնում, խաղաղական աղօթք չէ եղել և
նա մտցրել է, հաստատել է կրօնաւորի օրհնութիւնը
նախ քան զքահանայացումն. օտարաց մօտ տեսնելով որ
սահմանած ողորմութիւն կար աղքատաց համար, ինքն
ևս կարգել է ի Տարսոն[1]: Այսու հանդերձ Լամբրոնացին

---

[1] Եղել են խորթութիւնք Կիլիկիոյ եկեղեցիներում, որոնք մտել էին հեթանոսաց հալածանաց պատճառով և կամ օտարութեան մէջ, զորոնք Լամբրոնացին վերացրել է և կամ վերացնել տուել:

տը, երկար մազ ու մօրուք չպահելը, լատինական և յունական կարգով և նոցա պաշտօնեաների հետ սիրով ապրելն եւայլն, ասելով որ եթէ ուզում է թող նա որպէս մարմնաւոր տէր մարմնաւոր իրերով հետևի իւր նախորդաց, ըստ որում այն ժամանակ և ինքն որպէս հոգևոր ըստ հոգևորին կխորշի օտարներից։

Հարկաւ Լամբրոնացու այս թուղթն երևան է հանում Լևոնի ամբողջ քաղաքագիտութիւնն ու գաղտնիքներն, ըստ որում չափազանց անարգական է, մանաւանդ որ նորան ստութեան պաշտպան է դուրս բերում, շատախօսութեան ջատագով, անզգամաց ուշ դարձնող. նմանեցնում է նորան Նիկոդիմոսին եւայլն. մինչ իսկ թղթի հասցէն վիրաւորական է, որ է այս[1]. «առ քրիստոսազօր իշխողն մեր ինքնակալութեամբ Լևոն, ի նուաստ Ներսիսէ որ ի Տարսոն սրբոյ եկեղեցւոյն պաշտօնեայ»։ Ցիրաւի, Լևոնի նման ահեղախրոխտ բռնաւորին այս թուղթը պիտի կատաղեցնէր. բայց ի՞նչ հետևեցաւ. պատմութիւնը լռում է. Ներսէս Լամբրոնացին մեռաւ 1198 թուին։

Արդ Լևոն իւր գահակալութեան տարիները մեկնեց աջ ձեռքը դէպի Բիւզանդ և ձախն դէպի Գերմանիայ, բայց նա շուտով զգուեցաւ և իւր աջ ձեռքն իսկոյն յետ քաշեց, այն է 1189-ին. այժմ տեսնենք ձախովն ինչ արաւ։ Լևոնի բարեկամութիւնն արևմուտքում, որպէս յիշուեցաւ, Բարբարոսայի հետ սկսուեցաւ, նորա որդու Հայնրիխ VI-ի հետ ամրացաւ։

Լևոն իւր թագաւորութիւնից յետոյ, տեսնելով որ միայնակ է մնացել Խլիճ-Ասլանի նման ահաւոր թշնամու առաջ, որից պարտեցան և Հոռոմք, մտածեց նորա զօրութիւնն ընկճել իւր գահի ապահովութեան համար. բայց միայնակ չդիմագրաւեց և այլուստ յոյս չունենալով դի-

[1] Վենետիկ, 1865, 207—208։

մեջ արեւմուտք: Այնտեղ երկու հակաթոռ կայսրներ էին ընտրուած Փիլիպ (1198—1208) և Օտտո IV (1198—1218), և ժողովուրդն երկպառակուած էր և այդ միջազգային խռովութեան վարիչն էր Իննոկենտ III (1198—1216): Լևոն չվարանեցաւ և ինչպէս երևում է՝ առաջին անգամ՝ թուղթ (Միսուան. 465) գրեց առ նա 1199-ին, որ միայնակ պահւում է ի Հռոմ: Նա Հռովմայ ուշադրութիւնը ձանկելու համար հարեւանցորէն ակնարկում է որ ինքն ևս փափաքում է Հռովմէական եկեղեցու միութեան աշխատիլ, և իւր այդ բաղձանքով յուսացեալ ի սէրն Հռովմայ, խնդրում է քրիստոնէաբար ձայն բարձրացնել և օգնել հեթանոսաց դէմ, շեշտելով. «փութաջիք հասուցանել մեզ ամենաքրիստոնեայ օգնութիւն, մինչ չև եցէ անդարմանելի հեղեղաց հասեալ ի մեր վերայ»: Սակայն այս անգամ Լևոնի քաղաքագիտութիւնն անյաջող եղաւ. Նա իսկոյն պատասխան ստացաւ, յորում Հռովմ գովում է իւր եկեղեցին և ջանում է այն ծանօթացնել Լևոնին: Իննոկենտ III գրեց մի թուղթ ևս առ Գրիգոր VI և քաջալերեց նորան, հաւատացնելով որ ինքն ևս կանգնած է քրիստոնէից թշնամեաց դէմ: Բայց այս միայն խօսքեր էին, զի Լևոն ոչ միայն օգնութիւն չստացաւ, այլ և տաճարականաց բանտարկութեան ու մատնահարութեանց և Անտիոքայ Լատին իշխան Ռայմունդի թշնամարկութեան ենթարկուեցաւ: Վերջինիս չարամտութիւնը հասաւ մինչ այն որ գրգռեց Իկոնիոյ սուլթանին Հայոց դէմ: Բայց Լևոն չվհատեցաւ, նա իւր յոյսը դրաւ Աստուծոյ վրայ, սուր առաւ, ջարդեց Ռայմունդին առանց Հռովմայ տեղակալի նզովքներին նայելու և Անտիոքը կրկին առնելով, իւր եղբօրթոռն Ռուբէնին գահ նստեցրեց, ընդ նմին և բարկացած Հռովմէական «եզուիտների» վրայ, դուրս վռնդեց նոցա իւր պետութեան սահմաններից. Հռովմայ թղթերն

այլ եւս չօգնեցին և չխաբեցին նորան. Հռովմ պարգևներ էր յղում իսկ առ եպիսկոպոսն Սսոյ, յորդորելով «ի հնազանդութիւն» անել Լևոնին, բայց ի զուր։ Նոյն միջոցին Լևոն Հրեշտակ ուղարկեց՝ Հեղի անուն մէկին՝ առ Օտտօ IV և 1211-ին թագ ստանալով, պսակեց Ռուբենին։ Հզօր բազկով նա յետ մղեց իւր թշնամեաց, կտրեց իւր յարաբերութիւնը հոգեկրկիտ հռովմէականներից, արգելեց նոցա մուտքն ի Կիլիկիայ, իւր հաստ սուրը շարունակ արեան մէջ թաթախելով և հրճուելով։ Լևոն այդ ազգային ռազմական մեծագործութիւններից յետոյ, փառքով իջաւ մահուան մահիճը. նա իսկոյն կանչեց Յովհաննէս Մեծաբարոյ հայրապետին և հաղորդուելով, կնքեց իւր բազմարդիւն կեանքն 1219-ին և թաղուեցաւ իւր բարեկարգած խստակրօն և ճգնաւորական Ակներ վանքում։

Լևոն իւր պետութիւնն այնպիսի մի բարձրութեան և փառքի հասցրեց, որ կարելի է նորան իւր խոհեմ և զօրաւոր քաղաքականութեամբ միջին դարու Տրդատն համարել, որի պետութիւնը ճիշտ ինն դար յետոյ տուաւ իւր մանրանկարը Կիլիկիոյ բարձրութեան վրայ Լևոն Մեծագործի սրի տակ։ Բայց Տրդատ իւր սիգալով Հայրենեաց թումբ և առապարներն էր յարգարում, Լևոն իւր փքալով Կիլիկիոյ սար ու փապարներն էր զարդարում։

## ԺԷ.

«Առանց իմ ոչինչ կարէք առնել»:
ՅՈՎՀ. ԺԵ. 5.

---

Լևոն իւր բոլոր արտաքին քաղաքականութեամբ հանդերձ այնպիսի մի հոգի ներշնչեց իւր յաջորդների և գործակիցների սրտերը, իւր գահն այնպիսի մի հաւատարմութեամբ առ Հայաստանեայց եկեղեցին ձուլեց, որ երբ նորա դուստր-Թագուհու Լատին ամուսին Փիլիպը դաւաճանեց «երդմնազանց եղեալ ի յեղեալ ուխտէն Հայադաւան և Հայասէր լինել»[1], իշխանք իսկոյն գահընկէց արին նորան, բանտարկեցին 1221-ին և գահը Կոստանդին իշխանի խնամակալութեան յանձնելով, գահաւորեցին նորա որդի Հեթումին, պսակելով նորան Թագուհու հետ 1227-ին։

Լևոն Մեծագործի զարկած քաղաքականութեան ընթացքն իւր ուղղութեամբ յառաջացաւ գրեթէ ամբողջ դար մի. մինչդեռ 1219—20-ի խաչակրաց արշաւանքի միջոցին ոչ միայն Հռովմէական խաւարասէր վանականք, այլ նոյն իսկ կարդինալն Պելագիոս ամենայն ջանք յիրարկում էին Հայոց արքունիքում երկպառակու-

---

[1] Վարդան. ՋԴ. Սմբատ. էջ 111:

*թիւն մոցնելու, երկու Թագաւորներն Հեթում* (†1270) *և Լևոն Գ.* (1271—89) *խոհեմութեամբ պահպանեցին իւրեանց նախորդ առաջին պսակաւորից ստացած ժառանգութիւնը, խորշելով այդ արևմտեան նիւթող ու մախողներից: Համատարմութիւն առ Հայաստանեայց եկեղեցին այնպիսի մի առաքինութիւն էր, որ այդ ինքնագիտակ Թագաւորք իւրեանց պարծանաց առաջինն այդ էին համարում և ստորագրութեանց և արձանագրութեանց մէջ «խոստովանող ուղիղ հաւատոյ Լևոն» ի նշան իւրեանց մեծութեան գրոշմում: Բարեզարդել եկեղեցին, նորոգել այլազգեաց բռնութեան տակ խանգարուածները, ջանալ հաւատարիմ մնալ Հայաստանեայց եկեղեցւոյն, ցոյց տալ, ապացուցել և հռչակել նորա ուղղափառութիւնն և առաքելական հարազատ պարզութիւնն—այս էր հոգին և ոգևորիչ գաղափարն, թէ արքայի թէ կաթողիկոսի, թէ ուսեալի թէ անուսի: Պահլաւունեան հռչակաւոր հայրապետաց հետևեցան շարք մի կաթողիկոսաց, որոնք ստիպուեցան դեռ մաքառել Հռովմայ աշխարհակալութեան դէմ, ջանալով պահպանել հօտը նորա սատանայական նիւթումներից:*

*Թէ հոռոմք և թէ հռովմ ձեռք չվերցրին Ռուբինեան գահից: Երբ Յովհաննէս Դուկաս կրկին նեղել սկսաւ Հայոց, Կոստանդին Ա. կաթողիկոսն* (1220+1267), *որ իւր մտերիմ և մտակից և սրտով ու հոգւով իւր հետ կապուած, Վարդան պատմչի հետ եկեղեցու բարեկարգութեամբ էր զբաղուած և յոյժ ատելութեամբ վառուած էր առ քաղկեդոնականք, ջանացաւ դորա առաջն առնել և ուղարկեց Յակոբ Կլայեցուն նոցա զրպարտութիւնք հերքելու, ոլպէս և յաջողութեամբ կատարեց Հայաստանեայց եկեղեցու հաւատարիմ զինուորը*[1]*: Այս միջոցը*

[1] Կիրակոս. էջ 220:

գրեթէ լիովին կուսաքանական մի շրջան է, յորում պայքարել և յաղթանակել թշնամեաց վրայ ի քաջալերութիւն հայաստանեայց եկեղեցու փառասէր որդոց, գլխաւոր տեղն էր բռնում[1]: Ատելութիւնն այժմ հռովմայ դէմ էր, և հայք ջանում էին առաւել սէր պահել Բիւզանդի հետ:

Հռովմ տքնում էր իւր դիրքը փոխել. Գրիգոր IX մերթ վէճ բարձրացրեց, մերթ պարգևներ ղրկեց, մերթ հայոց. կաթուղիկոսի իշխանութիւնն ամբողջ արևելքի վրայ վերստին հաստատեց, բայց այդ ամէնին նշանակութիւն տուող չեղաւ: Այլ և հռովմայ ջատագովք քըննում էին հայոց եկեղեցու վարդապետութիւնն և նորա մէջ մոլորութիւնք գտնել կարծում, իսկ պապերը հաւատոյ հարցեր էին անում հայոց արքաներին: Մինչդեռ վերջինքս քաղաքական գրից ուշադրութեամբ էին ընթանում, հայոց կաթուղիկոսք պարզապէս արհամարհում էին հռովմայ այդ խաղերը: Կոստանդնի աջ բազուկն Վարդան Մեծ վիճակուած էր հեթում թագաւորին խրախուսել ընդդէմ հռովմայ, ըստ որում և գրում է իւր թղթում. «եթէ քեզ հաւատ հարցանեն. դու ասա. թէ ես զիմ առաջնորդացն ունիմ հաւատ և զիմ եկեղեցւոյն, և նոցա պարտիմ համար տալ և ոչ ձեզ»[2]: Նա լոկ քմահաճութեամբ չէ ուղարկում իւր քաջալերութիւնք, այլ մի առ մի քննելով հռովմայ եկեղեցին, յառաջադրում է նորա ակներև մոլորութիւնք ամենապարզ բանաւորութեամբ, որպէս օրինակ հաղորդութեան վրայ. «Ֆրանկք զեւրեանց ժողովուրդն հաղորդեն ի մարմնոյ տեառն, և յարենէ տեառն զրկեն, վասնորոյ ըստ Բանին Քրիստոսի ժողովուրդն նոցա ոչ ունիցի զկեանս յաւիտենականս»[3]: Եւ

---

[1] Տես. և «Արարատ» 1892. № 11: [2] Տես. «Արարատ» 1892. № 11: [3] «Արարատ» 1869. էջ 52:

երբ 1250-ին Հռոմը փափաքից հայոց վարդապետութիւնն իմանալ Ս. Հոգու բղխման նկատմամբ, կարծուցաւ թէ որևմուտք ևս Հայոց դաւանակից է, զի չգիտէին թէ Հռոմը 589-ի Տօլեդոյի ժողովում փոխեց հին դաւանանքը, ընդունելով որ Հոգին սուրբ բղխում է «ի Հօրէ և յՈրդւոյ», որով աղճատեց ս. երրորդութեան միութիւնը։ Հայաստանեայց եկեղեցին դաւանում է «բղխումն ի Հօրէ» «առումն յՈրդւոյ», այսպէս Քրիստոս վկայում է. «ես առաքեցից ձեզ ի Հօրէ՝ զՀոգին ճշմարտութեան, որ ի Հօրէ ելանէ, նա վկայեսցէ վասն իմ». և «զայս իբրև ասաց՝ փչեաց ի նոսա՝ և ասէ. առէք Հոգի սուրբ» և կամ «յիմմէ անտի առնուցու և տացէ ձեզ» ևայլն։ Նոյնպէս և ս. Գրիգոր Լուսաւորիչ. «Հոգին ճշմարտութեան որ ի Հօրէ ելանէ. ելանէ և ոչ բաժանի, և բղխէ և ոչ սպառի», այսինքն աղբիւրաբար, անհատաբար, «անհատահոս», որպէս երգւում է շարականում (Հոգեգ. շարականք)։ Սակայն շուտով հասկացան հայք որ Հռոմը այլապէս էր դաւանում, ըստ որում և Վարդան գրում է. «երկրորդ սխալ է. զի զՀոգին սուրբ ի Հօրէ և յՈրդւոյ ասեն. որ շփոթումն և պղտորումն առնէ մտաց լսողին».—«մի է պատճառն Հայր՝ միոյն ծննդեամբ և միոյն ելողութեամբ. ապա պատշաճ է, որ մի լինի պատճառն յատուկ և յատակ. և Հոգի Որդւոյ ասի, զի Որդւովն բաշխեցաւ պարգև Հոգւոյն որպէս Հայրենի բարիք»։

1262-ին Հռոմմայ Նուիրակը Աքքա գալով, որտեղ գտնւում էր Հռոմէադաւան այլազգեաց փարչութիւնը, մտքում դրել էր եկեղեցական գահէրիցութեան վրայ Հայոց հետ վիճելու։ Նորա հրաւէրին ուշ չդարձրեց Կոստանդին և պատուիրեց այնտեղ անցող պատգամաւորաց արժանը տնօրինել։ Նուիրակը այդ վիրաւորանք համարեց իւր մեծապատւութեան և չընդունեց նոցա։ Երբ ապա Օշին, Հեթմոյ եղբայրը, Թագաւորական հրամանով գնաց

յետ քաշուեցաւ, իսկ երբ Լամբրոնացին օգնութեան մէջ ծփալով Տարսոնի եկեղեցում ժողովական Յունաց ի հաճոյս ուզեցաւ յունարէն աւետարան կարդալ տալ, Լեւոն իսկոյն արգելեց այդ[1]։

Այնուհետեւ Հայաստանի արեւելեան վարդապետք, որոնք ուշադրութեամբ դիտում էին Կիլիկիոյ եկեղեցական գործերը, զայրացան Լամբրոնացու վրայ, և քանի մի թղթեր գրեցին նորան բուռն յարձակմամբ և գանգատ բարձին նորա դէմ առ Լեւոն։ Լեւոն ամոքեց գանգատաւորաց մաքերն և քննութեան կանչեց Լամբրոնացուն, հրաման ուղարկելով առ նա, որպէս «առ տհաս մանուկ»։ Այդ հրամանը կամ ապսպրանքը կրկնում է Լամբրոնացին իւր առ Լեւոն գրած պատասխանի մէջ, ասելով. «յայս համառօտեցան բանքն, թէ անկարգ է իմ ընթացքս և անօգուտ. և չէ ընդ շաւիղս երանեալ հարց մերոց Գրիգորիսի Վկայասիրի, և նորին համանուանն՝ որ յԵգիպտոս, և որ զկնի նորին աստ Հայրապետ Գրիգորիոս, և նորին եղբայրն Ներսէս. և ես ստերիւրեալ գնամ ի նոցա շաւղաց, և դուք և այլ հայք՝ նոցին ընթացակիցք։ Եթէ ոչ էի յայս, արժանի էի հայրապետութեան և պատուոյ. սակայն այս վերջացուցանէ զիս ի պատահմանէն պատուոյ. և ոչ միայն զիս, այլ և ձեզ լինիմ պատճառ նախատանաց ի Զորոյգեաացեացն, որք և անէծս վայրապար խօսին ի գլուխ իւրեանց, և դուք աղաչեցէք զմեզ վասն կնոցա դայթակղութիւնն չինելոյ դառնալ ի մոլորմանէս. ապա թէ ոչ՝ զրկիմք ի պատուոյն, զոր մինչև ցայժմ ի ձէնջ եմք ընկալեալ»։

Լամբրոնացու ամբաստանողք էին գլխաւորապէս

---

[1] Թուղթ Լամբրոնեցւոյն առ Լեւոն Թագաւոր. Վենետիկ, 1865. էջ. 237։

Ձորոյգետացիք, Հաղբատեցիք, Անեցին, Տուտէորդին և Քոբայեցին, իսկ ամբաստանութիւնն էր. Նախ որ Լամբրոնացին նոյա զգեստով չէր պատարագում, ընդ նմին և անարժան էր սեղան բարձրանալու և երկրորդ, որ անխտիր հաղորդւում էր այլ քրիստոնէից հետ։ Առաջին կէտում չենք կարող որոշել թէ Լամբրոնացին ինչ նոր զգեստ կամ ձէս էր նորոգել, զի նա ընդհանուր է խօսում այդ հարցի վրայ, իսկ եկեղեցական զգեստը շատ հին է հայոց մէջ և արդէն Ե-դ դարից վկայութիւն ունինք որ հայք Կ. Պօլսից էին այն բերել տալիս։ Միայն թէ Լամբրոնեցին բուռն համարձակութեամբ պաշտպանում է զինքն, հիմնաձայնելով. «պատրաստ եմ ի պատասխանատուութիւն... որ չեմ մոլորեալ և ոչ ստերիւրեալ ի սուրբ եկեղեցւոյ ուղիղ շաւղացն. ոչ ըստ հաւատոյ, և ոչ ըստ բարեկարգութեանն», և յարում է որ դատախազ չէ եղել իւր ամբաստանողաց մոլար ընթացքին։ Նա ասում է որ ինքն ամենևին չէ փոխել այն ինչ որ ստացել է իւր հայրերից և ունի հայոց կաթուղիկոսաց գրուածներն, որոնցով կարող է ապացուցել իւր ճշմարտութիւնը, սակայն յիշում է և իւր օգտակար նորոգութիւնք որ վանքերում երրորդ, վեցերորդ, և իններորդ ժամերը ջոկ ջոկ է կատարել տալիս «զեւրաքանչիւրան յիւր ժամու... և եօթն անգամ յաւուրն զԱստուած» է օրհնում, խաղաղական աղօթք չէ եղել և նա մտցրել է, հաստատել է կրօնաւորի օրհնութիւնը նախ քան զքահանայացումն. ստորաց մօտ տեսնելով որ սահմանած ողորմութիւն կար աղքատաց համար, ինքն ևս կարգել է ի Տարսոն[1]։ Այսու հանդերձ Լամբրոնացին

---

1 Եղել են խորթութիւնք Կիլիկիոյ եկեղեցիներում, որոնք մտել էին հեթանոսաց հալածանաց պատճառով և կամ օտարութեան մէջ, զորոնք Լամբրոնացին վերացրել է և կամ վերացնել տուել:

Ջատագովում է զինքն նախ սաստիկ անարգելով իւր Հակառակորդաց. նա շուն և աղուէս է կոչում նոցա և Տուտէորդու համար ասում է. «ուտելով և ըմպելով ընդ աշխարհականաց զպորտն պարարէ, և զեկեղեցւոյ դուռն թէ ընդ ուր է՝ բնաւ չգիտէ». Նա դատապարտում է նոցա արարքն, որ մինչև անգամ հակառակութեամբ Գրիգոր Գահավէժ պատանուն կաթուղիկոս ընտրեցին և Լևոնին զրպարտեցին, իսկ իւր ճշմարտութիւնն ապացուցում է, բանավարելով, որ իւր արածները նորոգումներ են խափանուածների և իւրեան համակարծիք են ժամանակի նշանաւոր եկեղեցականք, այլ և Գրիգոր Ապիրատը (բայց սորանից ևս հալածուել էր, որպէս ինքն է գրում). որ իւր իմաստութիւնը սէր հաստատեց թշնամի եկեղեցեաց մէջ, ըստ որում թէ Լատին եպիսկոպոսք և թէ Հոռոմք զարմանքով փառաբանեցին զԱստուած, երբ տեսան որ ինքն քաջ գիտէ(!) թէ Հայոց և թէ նոցա եկեղեցական արարողութիւնք ու կարգերը: Յիշում է որ մէկ գիրք է գրել (Կիլիկիոյ) Նորամուտ անկարգութեանց վրայ, բայց, ասում է նա, «կարող եմք շնորհիւ գիտութեանս՝ զոր ունիմք ի սուրբ գիրս ափիբերան առնել զՀելլենացին, թէ զՀայն խորշեալ կարծիցէ յուղղափառութենէ» և ընդհակառակն:

Լամբրոնեցին պարծանքով շեշտում է իւր քրիստոնէական ծայրայեղ բարութիւնը, պնդելով որ ամենայն հաստատութեամբ պիտի սիրէ քրիստոնէից, ըստ որում պատիւ է համարում որ ինքն սիրում է Լատինաց և Հելլենացոց, ասելով. «թէ և ատիմք ի նոցանէ, ոչ ատեամք զնոսա»: Բայց սորանով չէ վերջացնում իւր ջատագովութիւնն և յիշում է որ մինչդեռ ինքն շատ դէպքերում Լևոնին հնազանդելու համար է լռել, անարդարութեամբ իւրեան են դատապարտում, ընդ սմին և մի առ մի բերում է և Լևոնի երեսով տալիս Գահավէժի մահը, Հռոմկլայի կողոպտումը, Լևոնի արևմտեան զգես-

տը, երկար մազ ու մօրուք չպահելը, լատինական և յունական կարգով և նոցա պաշտօնեաների հետ սիրով ապրելն ևայլն, ասելով որ եթէ ուզում է թող նա որպէս մարմնաւոր տէր մարմնաւոր իրերով հետևի իւր նախորդաց, ըստ որում այն ժամանակ և ինքն որպէս հոգևոր ըստ հոգևորին կխորշի օտարներից։

Հարկաւ Լամբրոնացու այս թուղթն երևան է հանում Լևոնի ամբողջ քաղաքագիտութիւնն ու գաղտնիքներն, ըստ որում չափազանց անարգական է, մանաւանդ որ նորան ստութեան պաշտպան է դուրս բերում, շատախօսութեան ջատագով, անզգամաց ուշ դարձնող. նմանեցնում է նորան Նիկոդիմոսին ևայլն. մինչ իսկ թղթի հասցէն վիրաւորական է, որ է այս[1]. «առ քրիստոսազօր իշխողն մեր ինքնակալութեամբ Լևոն, ի նուաստ Ներսիսէ որ ի Տարսոն սրբոյ եկեղեցւոյն պաշտօնեայ»։ Յիրաւի, Լևոնի նման ահեղախրոխտ բնաւորին այս թուղթը պիտի կատաղեցնէր. բայց ի՞նչ հետևեցաւ. պատմութիւնը լռում է. Ներսէս Լամբրոնացին մեռաւ 1198 թուին։

Արդ Լևոն իւր գահակալութեան տարիները մեկնեց աջ ձեռքը դէպի Բիւզանդ և ձախն դէպի Գերմանիայ. բայց նա շուտով զզուեցաւ և իւր աջ ձեռքն իսկոյն յետ քաշեց, այն է 1189-ին. այժմ տեսնենք ձախովն ինչ արաւ։ Լևոնի բարեկամութիւնն արևմուտքում, որպէս յիշուեցաւ, Բարբարոսայի հետ սկսուեցաւ, նորա որդու Հայնրիխ VI-ի հետ ամրացաւ։

Լևոն իւր թագաւորութիւնից յետոյ, տեսնելով որ միայնակ է մնացել Խլիճ-Ասլանի նման ահաւոր թշնամու առաջ, որից պարտեցան և Հոռոմք, մտածեց նորա զօրութիւնն ընկճել իւր գահի ապահովութեան համար. բայց միայնակ չդիմագրաւեց և այլուստ յոյս չունենալով դի-

[1] Վենետիկ, 1865, 207—208։

մեց արեւմուտքը։ Այնտեղ երկու հակաթոռ կայսրներ էին ընտրուած Փիլիպ (1198—1208) և Օտտօ IV (1198—1218), և ժողովուրդն երկպառակուած էր և այդ միջազգային խռովութեան վարիչն էր Իննոկենտ III (1198—1216)։ Լևոն չվարանեցաւ և ինչպէս երևում է՝ առաջին անգամ՝ թուղթ (Սիսուան. 465) գրեց առ նա 1199-ին, որ միայնակ պահւում է ի Հռովմ։ Նա Հռովմայ ուշադրութիւնը ձանկելու համար հարևանցօրէն ակնարկում է որ ինքն ևս փափաքում է Հռովմէական եկեղեցու միութեան աշխատիլ, և իւր այդ բաղձանքով յուսացեալ ի սէրն Հռովմայ, խնդրում է քրիստոնէաբար ձայն բարձրացնել և օգնել հեթանոսաց դէմ, շեշտելով. «փութացիք հասուցանել մեզ ամենաքրիստոնեայ օգնութիւն, մինչ չև իցէ անդարմանելի հեղեղաց հասեալ ի մեր վերայ»։ Սակայն այս անգամ Լևոնի քաղաքագիտութիւնն անյաջող եղաւ. Նա իսկոյն պատասխան ստացաւ, յորում Հռովմ գովում է իւր եկեղեցին և ջանում է այն ծանօթացնել Լևոնին։ Իննոկենտ III գրեց մի թուղթ ևս առ Գրիգոր VI և քաջալերեց նորան, հաւատացնելով որ ինքն ևս կանգնած է քրիստոնէից թշնամեաց դէմ։ Բայց այս միայն խօսքեր էին, զի Լևոն ոչ միայն օգնութիւն չստացաւ, այլ և տաճարականաց բանտարկութեան ու մատնահարութեանց և Անտիոքայ Լատին իշխան Բոյմունդի թշնամարկութեան ենթարկուեցաւ։ Վերջինիս չարամտութիւնը հասաւ մինչ այն որ գրգռեց Իկոնիոյ սուլթանին Հայոց դէմ։ Բայց Լևոն չվհատեցաւ, նա իւր յոյսը դրաւ Աստուծոյ վրայ, սուր առաւ, ջարդեց Բոյմունդին առանց Հռովմայ տեղակալի նզովքներին նայելու և Անտիոքը կրկին առնելով, իւր եղբօրթոռն Ռուբէնին գահ նստեցրեց, ընդ նմին և բարկացած Հռովմէական «եզուիտների» վրայ, դուրս վռնդեց նոցա իւր պետութեան սահմաններից. Հռովմայ թղթերն

այլ ևս չօգտեցին և չխաբեցին նորան. Հռովմ պարգևներ էր յղում իսկ առ եպիսկոպոսն Սսոյ, յորդորելով «ի հնազանդութիւն» ածել Լևոնին, բայց ի զուր։ Նոյն միջոցին Լևոն հրեշտակ ուղարկեց՝ Հեղի անուն մէկին՝ առ Օտտօ IV և 1211-ին թագ ստանալով, պսակեց Ռուբենին։ Հզօր բազկով նա յետ մղեց իւր թշնամեաց, կտրեց իւր յարաբերութիւնը հոգեկրկիտ հռովմէականներից. արգելեց նոցա մուտքն ի Կիլիկիայ, իւր հատու սուրը շարունակ արեան մէջ թաթախելով և հրճուելով։ Լևոն այդ ազգային ռազմական մեծագործութիւններից յետոյ, փառքով իջաւ մահուան մահիճը. նա իսկոյն կանչեց Յովհաննէս Մեծաբարոյ հայրապետին և հաղորդուելով, կնքեց իւր բազմարդիւն կեանքն 1219-ին և թաղուեցաւ իւր բարեկարգած խստակրօն և ճգնաւորական Ակներ վանքում։

Լևոն իւր պետութիւնն այնպիսի մի բարձրութեան և փառքի հասցրեց, որ կարելի է նորան իւր խոհեմ և զօրաւոր քաղաքականութեամբ միջին դարու Տրդատն համարել, որի պետութիւնը ճիշտ ինն դար յետոյ տուաւ իւր մանրանկարը Կիլիկիոյ բարձրութեան վրայ Լևոն Մեծագործի սրի տակ։ Բայց Տրդատ իւր սիգալով հայրենեաց թումբ և առապարներն էր յարգարում, Լևոն իւր վէքալով Կիլիկիոյ սար ու փապարներն էր զարդարում։

## ԺԷ.

«Առանց իմ ոչինչ կարէք առնել»:
ՅՈՎՀ. ԺԵ. 5.

---

Լևոն իւր բոլոր արտաքին քաղաքականութեամբ հանդերձ այնպիսի մի հոգի ներշնչեց իւր յաջորդների և գործակիցների սրտերը, իւր գահն այնպիսի մի հաւատարմութեամբ առ Հայաստանեայց եկեղեցին ձուլեց, որ երբ նորա դուստր-Թագուհու Լատին ամուսին Փիլիպը դաւաճանեց «երդմնազանց եղեալ ի յեդեալ ուխտէն Հայադաւան և Հայասէր լինել»[1], իշխանք իսկոյն գահընկէց արին նորան, բանտարկեցին 1221-ին և գահը Կոստանդին իշխանի խնամակալութեան յանձնելով, գահաւորեցին նորա որդի Հեթումին, պսակելով նորան Թագուհու հետ 1227-ին։

Լևոն Մեծագործի վարկած քաղաքականութեան ընթացքն իւր ուղղութեամբ յառաջացաւ գրեթէ ամբողջ դար մի. մինչդեռ 1219—20-ի խաչակրաց արշաւանքի միջոցին ոչ միայն Հռովմէական խաւարասէր վանականք, այլ նոյն իսկ կարդինալն Պելագիոս ամենայն ջանք յիրարկում էին Հայոց արքունիքում երկպառակու-

---

[1] Վարդան. ՁԴ. Սմբատ. էջ 111:

թիւն մոցնելու, երկու թագաւորներն Հեթում (†1270) և Լևոն Գ. (1271—89) խոհեմութեամբ պահպանեցին իւրեանց նախորդ առաջին պսակաւորից ստացած ժառանգութիւնը, խորշելով այդ արևմտեան նիւթող ու մախողներից: Հաւատարմութիւն առ Հայաստանեայց եկեղեցին այնպիսի մի առաքինութիւն էր, որ այդ ինքնագիտակ թագաւորք իւրեանց պարծանաց առաջինն այդ էին համարում և ստորագրութեանց և արձանագրութեանց մէջ «խոստովանող ուղիղ հաւատոյ և այլն» ի նշան իւրեանց մեծութեան գրոշմում: Բարեզարդել եկեղեցին, նորոգել այլազգեաց բռնութեան տակ խանգարուածները, ջանալ հաւատարիմ մնալ Հայաստանեայց եկեղեցուն, ցոյց տալ, ապացուցել և հռչակել նորա ուղղափառութիւնն և առաքելական հարազատ պարզութիւնն—այս էր հոգին և ոգևորիչ գաղափարն, թէ արքայի թէ կաթողիկոսի, թէ ուսեալի թէ անուսի: Պահլաւունեան հռչակաւոր հայրապետաց հետևեցան շարք մի կաթողիկոսաց, որոնք ստիպուեցան դեռ մաքառել հռոմմայ աշխարհակալութեան դէմ, ջանալով պահպանել հօտը նորա սատանայական նիւթումներից:

Թէ հռոմը և թէ հռոմմ ձեռք չվերցրին Ռուբինեան գահից: Երբ Յովհաննէս Դուկաս կրկին նեղել սկսաւ Հայոց, Կոստանդին Ա կաթողիկոսն (1220+1267), որ իւր մտերիմ և մտակից և սրտով ու հոգւով իւր հետ կապուած, Վարդան պատմչի հետ եկեղեցու բարեկարգութեամբ էր զբաղուած և յոյժ ատելութեամբ վառուած էր առ քաղկեդոնականք, ջանացաւ դորա առաջն առնել և ուղարկեց Յակոբ Կլայեցուն նոցա զրպարտութիւնք հերքելու, որպէս և յաջողութեամբ կատարեց Հայաստանեայց եկեղեցու հաւատարիմ զինուորը[1]: Այս միջոցը

---

[1] Կիրակոս. էջ 220:

գրեթէ լիովին կռուաբանական մի շրջան է, յորում պայքարել և յաղթանակել Թշնամեաց վրայ ի քաջալերութիւն հայաստանեայց եկեղեցու փառասէր որդոց, գլխաւոր տեղն էր բռնում[1]։ Ատելութիւնն այժմ Հռովմայ դէմ էր, և Հայք ջանում էին առաւել սէր պահել Բիւզանդի հետ։

Հռովմ տքնում էր իւր դիրքը փոխել. Գրիգոր IX մերթ վէճ բարձրացրեց, մերթ պարգևների դիմեց, մերթ Հայոց կաթողիկոսի իշխանութիւնն ամբողջ արևելքի վրայ վերստին հաստատեց, բայց այդ ամէնին նշանակութիւն տուող չեղաւ։ Այլ և Հռովմայ ջատագովք քննում էին Հայոց եկեղեցու վարդապետութիւնն և նորա մէջ մոլորութիւնք գտնել կարծում, իսկ պապերը հաւատոյ հարցեր էին անում Հայոց արքաներին։ Մինչդեռ վերջինքս քաղաքական դրից ուշադրութեամբ էին ընթանում, Հայոց կաթողիկոսք պարզապէս արհամարհում էին Հռովմայ այդ խաղերը։ Կոստանդնի աջ բազուկն Վարդան Մեծ վիճակուած էր հեթում թագաւորին խրախուսել ընդդէմ Հռովմայ, ըստ որում և գրում է իւր թղթում. «եթէ քեզ հաւատ հարցանեն. դու ասա. թէ ես զիմ առաջնորդացն ունիմ հաւատ և զիմ եկեղեցւոյն, և նոցա պարտիմ համար տալ և ոչ ձեզ»[2]։ Նա լոկ քմահաճութեամբ չէ ուղարկում իւր քաջալերութիւնք, այլ մի առ մի քննելով Հռովմայ եկեղեցին, յառաջադրում է նորա ակներև մոլորութիւնք ամենապարզ բանավարութեամբ, որպէս օրինակ հաղորդութեան վրայ. «Ֆրանկք զիւրեանց ժողովուրդն հաղորդեն ի մարմնոյ տեառն, և յարենէ տեառն զրկեն, վասնորոյ ըստ Բանին Քրիստոսի ժողովուրդն նոցա ոչ ունիցի զկեանս յաւիտենականս»[3]։ Եւ

---

[1] Տես. և «Արարատ» 1892. № 11: [2] Տես. «Արարատ» 1892. № 11: [3] «Արարատ» 1869. էջ 52:

երբ 1250-ին Հռովմ փափաքից Հայոց վարդապետութիւնն իմանալ Ս. Հոգու բղխման նկատմամբ, կարծուեցաւ թէ արեւմուտք եւս Հայոց դաւանակից է, զի չգիտէին թէ Հռովմ 589-ի Տոլեդոի ժողովում փոխեց Հին դաւանանքը, պնդելով որ Հոգին սուրբ բղխում է «ի Հօրէ եւ յՈրդւոյ», որով աղճատեց ս. երրորդութեան միութիւնը։ Հայաստանեայց եկեղեցին դաւանում է «բղխումն ի Հօրէ» «առումն յՈրդւոյ». այսպէս Քրիստոս վկայում է. «Ես առաքեցից ձեզ ի Հօրէ՝ զՀոգին ճշմարտութեան, որ ի Հօրէ ելանէ, նա վկայեսցէ վասն իմ». եւ «զայս իբրեւ ասաց՝ փչեաց ի նոսա՝ եւ ասէ. առէք Հոգի սուրբ» եւ կամ «յիմմէ անտի առնուցու եւ տացէ ձեզ» եայլն։ Սոյնպէս եւ ս. Գրիգոր Լուսաւորիչ. «Հոգին ճշմարտութեան որ ի Հօրէ ելանէ. ելանէ եւ ոչ բաժանի, եւ բղխէ եւ ոչ սպառի», այսինքն աղբիւրաբար, անհատաբար, «անհատահոս», որպէս երգւում է շարականում (Հոգեգ. շարականք)։ Սակայն շուտով հասկացան Հայք որ Հռովմ այլապէս էր դաւանում, ըստ որում եւ Վարդան գրում է. «երկրորդ սխալ է. զի զՀոգին սուրբ ի Հօրէ եւ յՈրդւոյ ասեն. որ շփոթումն եւ պղտորումն առնէ մտաց լողին».—«մի է պատճառն Հայր՝ միոյն ծննդեամբ եւ միոյն ելողութեամբ. ապա պատշաճ է, որ մի լինի պատճառն յատուկ եւ յատակ. եւ Հոգի Որդւոյ ասի, զի Որդւովն բաշխեցաւ պարգեւ Հոգւոյն որպէս Հայրենի բարիք»։

1262-ին Հռովմայ Նուիրակը Աքքա գալով, որտեղ գտնւում էր Հռովմէադաւան այլազգեաց վարչութիւնը, մտքում դրել էր եկեղեցական գահերիցութեան վրայ Հայոց հետ վիճելու։ Նորա հրաւէրին ուշ չդարձրեց Կոստանդին եւ պատուիրեց այնտեղ անցող պատգամաւորաց արժանը տնօրինել։ Նուիրակը այդ վիրաւորանք համարեց իւր մեծապատուութեան եւ չընդունեց նոցա։ Երբ ապա Օշին, Հեթմոյ եղբայրը, Թագաւորական հրամանով գնաց

Աքքա պատուիրակի և իշխանի մօտ, առաջինը յայտնեց նորան որ Հայոց Հայրապետն «եթէ ոչ վասն օտարասիրութեան և հիւրընկալութեան, սակայն վասն բնական Հարկին, զոր ունի ի Հռովմայ եկեղեցւոյն, պարտ էր տեսանել զմեզ»։ Այդ իմաստութիւնն անհասկանալի է, բայց պարզ է որ Հեթում ակնկալութիւններ ունէր արևմուտքից։ Օշին պատմեց այդ իւր եղբօր և «նոքա, ասում է Մխիթար Տաշրացին[1], ըստ բնական բարուց ազգիս մերոյ զայլս բարձրացուցանողաց և զինքեանս նուաստացուցանողաց, իրաւունս յոյժ վարկուցեալ զստգտանսն», յայտնեցին կաթուղիկոսին ու ընծաներով մարդ ուղարկէ արքայական դեսպանի հետ։ Գնացողն էր յիշեալ վարդապետը Մխիթար Տաշրացին։

Հռովմայ պատուիրակը նախ չընդունեց այդ պատգամաւորաց «կամ բարձրայօնութեամբ կամ չգիտենալով ի՞նչ անել»։ Բայց յետոյ ընդունեց նոցա, կարդալ տուաւ բերուած թուղթն և դժգնելով յայտնեց ընթերցանութեան կիսում, որ կաթուղիկոսի անձամբ գալը պէտք էր հոգևոր իրաց համար, ասելով ընդ նմին. «խնայելով ի ձեզ՝ խնդրէաք, զի եկեալ յօղեսցի ի գլուխն եկեղեցւոյ»։ Ուրեմն Հայոց Հայրապետի չմիանալն Հռովմայ հետ՝ վտանգի պիտի ենթարկէր Հայոց. այսպիսի սպառնալիքի է դիմում Հռովմայ պատուիրակը...։

Վշտացան հայ պատգամաւորք և հրաւիրեալ ճաշը մերժեցին, որ և կակղեցրեց պատուիրակին, ըստ որում տօնից յետոյ սկսաւ կեղծաւորել, գովելով և առաջին պատիւը տալով Մխիթար Տաշրացուն և ուզեցաւ նորա հետ խօսել և հարցեր անել։ Հրաւիրուած էր մի մեծ կաճառ. դոյն կամ այլ նպատակով, յորում Մխիթար

[1] «Մխիթարայ Տաշրացւոյ յաղագս ծանապարհորդութեան 12 առաքելոցն... ի հրամանէ Թագաւորին Հայոց Հեթմոյ...» Երուսաղէմ 1865։

խոհեմութեամբ պատասխանեց որ սխալ է պատուիրակի կարծիքը, թէ ինքն յետիններից է Հայոց գիտնոց մէջ, որ «բազում անգամ լինի յարքունիս, զի փառացն պատահէ բարեբախտութիւն», որ դժգոհ է ընծաների արհամարհելուն համար և որ կպատասխանէ որչափ կարող է, մնացեալը թողնելով Հայրապետին։

Վիճաբանութեան պատճառն էր այն, որ Հռոմը յանդգնում էր ուրիշ քրիստոնէական եկեղեցիք քննել դատել, ըստ որում և Մխիթար ասելով «յաւէտ մեք ունիմք կար, ըստ առաքելոցն օրինակի դատել զձեզ, և դուք ոչ կարէք քննել զմեզ», ջանացաւ առաքելոց առ Պետրոս ունեցած վերաբերմունքի ցուցմամբ՝ հերքել Հռովմայ աչքակապութեան թևակոխումները։ Հռովմայ պատուիրակը, թէև «ասէր յոլով և սակաւ լսէր», այնու հանդերձ վիրաւորուեցաւ, իսկ Մխիթար ինքնագիտաստ վարդապետն իւր հաւատարիմ գործով վեհացած, դարձաւ տուն և իւր յաղթաբանութեան ընդարձակ նկարագրութիւնը մատոյց Հեթումին ուխտողեան ոտանաւորով։

Նկատելի է որ մինչդեռ կաթուղիկոսի նուիրակը Մխիթար վեհանձնութեամբ էր խօսում պատուիրակի հետ, Հեթումի պատգամաւորը՝ Թովմաս ջանում էր շարժել նորա բարեսիրութիւնն և ընծաներն ընդունել։ Այսպիսով Հռովմայ պատուիրակը հեռացաւ մեծ դժգոհութեամբ Մխիթարի անսեթևեթ ճշմարտախօսութիւնից հարուելով[1]։

Հեթում այսպիսի վտանգ դիրք բռնելով, լքեցրեց Հռովմայ սիրտն, ըստ որում վերջինս ուրախ էր, եթէ

[1] Կարծեմ սոյն ժամանակին է պատկանում և «Յակոբ վարդապետի հաւաքեալ ի ս. Գրոց, յաղագս Աստուծոյ Հոգւոյն, ի Հօրէ անսկզբնականէ զոյ բղխումն և ելումն նախ քան զյաւիտեանս անժամանակաբար»: Ազգային մատենադարան Պարիզի Supplément armén. № 135:

Հայոց թագաւորը բարեկամաբար էր վարւում Լատինաց կամ Ֆրանկաց հետ, ուստի և գրեց ու յորդորեց կայսր Միխայէլ Պալէօլօգոսին, Կ. Պօլսի և Երուսաղէմի պատրիարքաց պատերազմ մի ձեռնարկել հեթանոսաց դէմ։

Հեթում Ա-ի ուղղութեամբ ընթացաւ և Լևոն Գ. (1270—1290), որ նոյն իսկ Բիւզանդացոց վռնդեց, որոնք իւր դէմ դաւադիր էին, որպէս գրում է Մխիթար աբեղան (էջ 52). «պիղծ և ուրացող ազգն Հոռոմոց, սուտ քահանայքն, և ստոյգ քաղկեդոնիկքն, եղեալ էին ի մտի քակել զվանորայքս, և զհաւանեալսն ի յաղանդս նոցա պահել, և զոչ հաւանեալսն բառնալ ի կենաց...»։ Սակայն իրերի վիճակը փոխուեցաւ, երբ հեթանոսաց զօրութիւնն սպառնալ սկսաւ, օրըստօրէ բռնանալով։ Հեթում Ա-ի գլխաւորած դաշնակցութիւնը Թաթարաց հետ այլ ևս մեծ օգուտ չտուաւ, ուստի և Հեթում Բ. (1290—) ձեռնարկեց վերստին Լևոն Ա-ի քաղաքականութեան։ Մինչդեռ մի կողմից Հայոց եկեղեցու ջատագովութիւնն էր ծաղկում, այնպէս որ մինչև անգամ Անտիոքայ Արսենիոս պատրիարքն ընդունեց Հայոց հաւատքը[1], բարձրացրեց Հեթում Բ. Ճշմարտութեան դրօշակն և սկսաւ աշխատել քրիստոնէից միացնել զօրացող հեթանոսաց դէմ, վասնորոյ և քննութեան բովի մէջ ձգեց բոլոր եկեղեցեաց վարդապետութիւնք, նպատակ դնելով Ճշմարտութիւնը գահաւորել ամէնքի վրայ։ Նորան քաջալերում էին մանաւանդ Թաթարք, որոնք նոյն իսկ պատգամ ուղարկեցին նաև ի Հռովմ, յորդորելով քրիստոնէից միանալ Թիւրքաց դէմ. ըստ որում և Նիկողայոս IV պապը պատուիրակ առաքեց առ Հեթում 1289-ին և դրդեց քրիստոնէից միութեան ջանալ։ Իւր պատուիրակ Յովհաննէսի ընդունելութեան շնորհակալութիւն ևս

[1] Georgius Pachym. II, 52:

գրեց ապա 14 յուլիսին, և որովհետև Հեթում քննութեան էր ենթարկում նաև Հռոմայ եկեղեցին, ուստի Նիկողայոս յայտնում է առ այս իւր տհաճութիւնն, որ իւր եկեղեցու նկատմամբ քննութիւն լսել չէ փափաքում։ Ցորդորներ գրեց և Հայ իշխանաց և ժողովրդեան հասցէին։

1292-ին Հռոմկլան առնուեցաւ և Ստեփանոս Դ. կաթուղիկոսը գերուեցաւ, ուստի և հայրապետական աթոռը փոխադրուեցաւ ի Սիս, որտեղ և մնաց մինչև 1441-ը։ Նոյն տարին քրիստոնէից զատիկների խառնուելը նկատելով, հաւաքեց Հեթում քանի մի եկեղեցական, քննեց ս. Գիրքն և արքայաբար հրամայեց ապր. 6-ին տօնել, ընդնմին «բազումք եպիսկոպոսաց և վարդապետաց», որոնք ընդդիմացան, աքսորուեցան։ Այս նորա գիտութեան առաջին քայլն էր, որպէս և ինքն գրում է. «լինել ժողով յօժարեցաք, քննել զգիրս աղաչեցաք, և զոր ստուգի յանձին կալաք։ Ցայնժամ եկեալ ի միասին հանուր լրմամբ եկեղեցին, զաստուածաշունչ գիրս քննեցին, և անդստին ճշգրտեցաւ արդարութիւն խնդրոյն ցուցաւ. որով հիմն կանոնեցաւ տօնել ի վեցն հաւաստեաւ. յորում բոլոր ազգք ու ի նոյն, «միաբանեալ եղեն ողջոյն»[1]։

Այսպէս Հեթում թողնելով իւր սուրը, խրուել էր աստուածաբանութեան մէջ և մարգարէական աչքով կարէր իւր գահի վախճանը տեսնել։ Շուտով թողեց իւր գահը Սմբատին և ինքն բերաւ իւր քոյր Մարիամին ի Կ. Պօլիս կայսր Անդրոնիկ որդուն, Միքայէլի հետ պսակելու, որով անշուշտ յոյս ունէր իւր ծրագրի մէկ թևը նախապատրաստած լինել։ Առ նոյն նպատակը յորդորեց Հռոմայ Բանիֆացիոս VIII և Սմբատին, որի խնդրանօք թղթեր գրեց և ժամանակի թագաւորաց, դրդելով խաչակրութիւն մի բանեցնել։ Հեթում դարձաւ, վերստին

---

[1] «Արարատ». 1869. էջ. 40:

խլեց իւր գահն և սկսաւ առաւել վճռակի քրիստոնէից միութեան ձգտիլ։ Թղթեր գրուեցան զանազան կողմեր և նոյն իսկ առ Նեստորականք, ընդ նոցին և աշխատում էին, որպէս տարածւում էր, Անտիոքայ աթոռը ստորադրել Հայոց կաթուղիկոսին[1] (Օրբ. ԿԷ.)։ Բայց այս բանակցութիւնք վարանման մէջ ձգեցին Մեծ Հայոց Հաւատարիմ և արթուն եկեղեցականաց, մանաւանդ զի յիշեալ զատկի կարգադրութիւնից անմիջապէս յետոյ 1293-ին աթոռ էր բարձրացել Գրիգոր Անաւարզեցին, որին և կարծում էին այդ անկարգութեան մասնակից լինել[2]։ Օրբելեան ինքն չէ հաւատում տարածուած լուրերին և բամբասանքներին, որպէս և գրում է. «ո Հայր պատուական և պետ պանծալի՝ զոն բաղայք բասրանաց ի բերանս բիւրաւոր մարդկան ի բայս և ի բանս օտարս և ի բաղայս բարբառոց, յորմէ երկուցեալք ակն ածեմք». և դարձեալ. «շրջին (վրաբան և ունայնայխօսք պարաւաղիր որք), սպրդեալք տանէ ի տուն՝ և շշուկս չարակարծ զամենեքումբք արկանեն այսպէս. «Հոռոմ է մեր կաթուղիկոսն և ընդ նոսա դաշնագիր». վորդ ճշմարիտն Աստուած գիտէ և դուք»։ Ուրեմն բանսարկուները մտնելով ժողովրդի մէջ, մատնահարում էին թէ Անաւարզեցին դաշնակից է և հաւատակից Յունաց։ Անաւարզեցին, որ էր «այր գիտնական

[1] Այս ձգտումը կար և Տարսոնի ժողովի ժամանակ: [2] ԺԴ. դարի ունիթոռներից մէկ տգէտի ձեռքով մի թուղթ է յերիւրուել անձոռնի և անարգ լեզուով ու բովանդակութեամբ, որ Գրիգոր Անաւարզեցուն են վերագրում: Թղթի աւանդողն է Մխիթար Ապարանեցին(?) և լոյս ընծայողն՝ Կղեմէս Գալանոս եզուիթը (Նորանից և Չամչեան): Ապարանեցին եւս մի ուրիշ աղբիւրից(?) է վերցնում, ուրեմն այդ անշնորհ թուղթն երեք մարդու ձեռքով անցել և ապա մեզ է հասել: Այդ թուղթը կատարեալ կնիք է հռովմէականաց այլանդակ միջոցների և հմտութեան: Դորա հետազօտութիւնը կգտնեն ընթերցողք Գալանոսի եզուիթական գրուածոց քննաբանութեանս մէջ, որ յուսամ շուտով հրատարակել:

և գիտէր զլեզու և զդպրութիւն լատին և յոյն ազգին», «այր իմաստուն և յոյժ հմուտ հին և նոր կտակարանաց», անշուշտ ունէր իւրայնոց մէջ իսկ նախանձող չկամներ. բայց քանի որ դատապարտում է և բամբասում իբրև Յունաց դաշնակիր, քաջայայտ է, որ Հռովմէականք ևս մատ ունէին այդ բանսարկութեանց մէջ: Այս ամէնին ճիշտ արտայայտութիւնն է և վանական վարդապետի եղբօրորդու ստորագրութիւնն. «ոճն կամի շարժել զտուտն՝ ջանացարուք ոչ տալ տեղի գլխոյն և մի հաւատայք խաբողին»: Հարկաւ մէկ կաթուղիկոս, որ այնքան հեռու էր նստում բուն Հայաստանից, շատ պէտք է զգոյշ լինէր, զի ամենայն Հայոց կաթուղիկոսի համար առաւել փառք չկարէ լինել, քան այն որ ունի հաւատարմութեամբ, և իւր ազգը Սսից կառավարելով, կարճատես պիտի լինէր՝ չգիտենալու, որ դոյզն մի կամահաճ խախտումն Հայաստանեայց եկեղեցու վարդապետութիւնից կամ կարգերից, կարէր նորան զրկել Մեծ Հայքից և Կիլիկիոյ մասնաւոր կաթուղիկոս մի դարձնել, որ ոչ մի կաթուղիկոսի սրտով չէր լինիլ:

Այլ Գրիգոր Անաւարզեցին միջոց չունեցաւ իւր մեծահոչակ նախորդաց նման ամոքել իւր հաւատարիմ հովիւների անհանգստութիւնք և վախճանուեցաւ:

Ստացաւ Գրիգոր Հայոց վարդապետաց թուղթը, թէ ոչ, այդ նոյն է. միայն թէ հետամուտ լինինք դորան Հայաստանեայց եկեղեցու քաջամիտ և հաւատարիմ հօտն ու հօտապետները ճանաչելու համար: Այդ թուղթը հեղինակուած է Ստեփաննոս Օրբէլեանի ձեռքով, որ մետրապօլիտ էր Սիւնեաց և «նախաթոռ ու գլուխ ամենայն եպիսկոպոսաց Հայոց»: Թուղթն ստորագրուած է եկեղեցականներից և Սիւնեաց իշխաններից, ըստ որում և իւրաքանչիւրը դնում է իւր նզովքն. «որք ոչ միաբանին այսմ Հայրենաւանդ և Հայրապետական Հաստահիմն դա-

ւանութեանցս՝ նզովեալ եղեցին, որպէս Սաբէլ և Արիոս»: Ստորագրող եպիսկոպոսներից մէկն է և հռչակաւոր ուսուցչապետն ժամանակի Եսայի Նչեցի իւր աշակերտներով: Նմանապէս գրում են և իշխանք, զորօր. «մեք անպիտան ծառայքս Քրիստոսի՝ Ելիկումս և Լիպարիտս, որդիք փառաւոր իշխանացն Տարսայիճին և Իւանէի, եղբարք մերովք և որդւովք և ամենայն ազատօք հաւան եմք և հնազանդք մահու չափ այսմ սատուածատուր և հայրենաւանդ կտակիս. և որ հակառակին՝ որոշեալ լիցին ի սուրբ հարցն մասնակցութենէ»:

Թուղթն սկսում է Հայաստանեայց եկեղեցու. գոհունակութեամբ, եկեղեցու, որ «աստուածային անյաղթ զօրութեամբ բարձրացեալ և անեղական աջով հզօրին պարսպեալ, բարձր բազկօքն Յիսուսի գգուեալ և հզօր շնորհօք հոգւոյն պերճացեալ՝ սուրբ, անբիծ, անարատ եկեղեցիս Հայոց՝ անբասիր և անշաղախ հարսնս երկնաւոր Փեսային՝ տնկեալս և հիմնադրեալս ի ս. առաքելոցն Թադէոսէ և Բարդողիմէոսէ, մշակեալս և բեղմնաւորեալս ի սքանչելի քրտանց ահարկու և անհամեմատ առնն Գրիգորիսի...» վասն զի դարաւոր փորձանաց մէջ հաստատ է մնացել և անփոփոխ մխիթարիչ իւր հօտին: Ապա ողջունում է Հայաստանեայց պետին, ձայնելով. «Ծնրահանդոյց գագաթամբ ողջունէ զգլուխդ իւր պանծալի՝ զխորալիրդ բնաւից, զչքնաղդ և զնորոգ գերահրաշացեալդ ի Հոգւոյն զԳրիգորիոս՝ հայր հանուրց սեռից Հայկայ և կաթուղիկոս տիեզերական ի դրանէ Հոնաց և Լփանց, ի ծովէ Կասպից և ի լեռնէ Կովկասեայ մինչ ի սահմանս եգիպտական և ի ծովն արեւմտային, ուր զգիշերն ագանի ակն տունջենային»: Այս է Հայաստանեայց եկեղեցու ողջոյնն, Մեծ Հայքի եպիսկոպոսաց գլուխ, Ստեփ. Օրբելեանի բերանով, ընդ որ կամենում է՝ մէկ զգուշութիւն ներշնչել իւր պետի սրբութեան և մէկ ևս ջրել զրաբանների զրպար-

տուԹիւնք, ըստ որում և կատարել երկու բան—յանձնառականք—այինք պահել Հայաստանեայց եկեղեցու բազմաԹիւ ժողովոց նզովիւք հաստատած կարգերն, «յորոց ոչ ունիմք հնար արեամբ և մահու չափ մասամբ միով շեղել, այնքան նզովեց պարտապան լինել. և ի մեր հարանցն մասնակցուԹենէ հեռանալ, իբրև որդիք ժանտք և խրամատիչք ցանկոյ հարցն, որոց պատիժն յայտնի է ի գրեալսն». և հրաժարական—նզովել և հեռու կենալ այն ամէնից, որոնցից խորշել է Հայաստանեայց եկեղեցին դարեր շարունակ։ Յիշում են, որ Թէև հնազանդ են ըստ ամենայնի, սակայն կամենում են, որ իւրեանց գլուխը Թղթով փարատէ տարակուսանքները. «զի յայնժամ առաւել հաստատուԹեամբ և հլու հպատակուԹեամբ հնազանդ լիցուք աստուածային գլխոյդ. և Թագաւորեսցես յեկեղեցիս մեր ջահաւորեալ՝ որպէս արեգակն»։ Ցոյց տալու համար, որ այդ տարակոյսները տարածուած լուրերից են ծագել, կոչում են Անաւարզեցուն. «Թագաւորական արգասիւքդ ծնողդ իմաստից և մայրդ ուղղափառուԹեան, աղբիւրդ հաւատոյ և անվախ ախոյեանդ ս. եկեղեցւոյ՝ Գրիգորիոս կաԹուղիկոս Հայոց»։ Բայց որպէս զի Անաւարզեցին գիտենայ, որ այդ մեծափառ իշխանուԹիւնն ունի Հայոց վրայ, միմիայն ուղղափառ հաւատարմուԹեամբ իւր նախնեաց և Թէ փոքր շեղուիլն անգամ պիտի զրկէ նորան իւր փառքից, յիշում են. «ապա Թէ աւելի ինչ կամ պակաս կամիք մուծանել յեկեղեցիս մեր, ոչ ունիմք ի հարցն՝ և կամ գրեալքս խոտանեն առ ձեզ. յայնժամ մի՛ աշխատ լինիք և մի՛ զմեզ աշխատ առնէք. ըստ ձեր կամաց լիցի աշխարհդ այդ և այլ ոք որ կամիցի...»։ Ընդ նմին Անաւարզեցին չպիտի կարծէր, Թէ նոյա սաստել կարէր հրամանով կամ բռնուԹեամբ, զի բացի այն որ Մեծ Հայքն օտար իշխանուԹեան տակ էր, որ կարող էր նորա իշխանուԹիւնից վտարանջել, այլ և

նկատում են ըստ Հայրենի սկզբան խրոխտալով, ու չեն վախենում պատիժներից և պատրաստ եմք ի տանջանս, յաքսորս և ի բանտ, ի մահ և ի մեռանել ի վերայ ս. և առաքելական Հարցն աւանդից: Այսպիսով այս քաջարի ժառանգներն իւրեանց մեծափառ Նախնեաց՝ ազնիւ Հաւատարմութեամբ կանգնում են իւրեանց անուան և փառաւոր ժառանգութեան Համար, որ Նախնեաց արեան գնով պաՀուած լինելով, Թանգագոյն է քան զամենայն Հարստութիւնն և փառքն աշխարՀիս: Ձեռք ձեռքի տուած իշխանաց Հետ նզովում են իւրեանց Հակառակորդաց, նզովում են Նախնեաց նզովիւք, և գնում են իբր անսասան Հիմք իւրեանց կենաց. «Հաւան եմք մեք ընդ մեր Հարսն ի դժոխս իջանել և ոչ ընդ Հոռոմոց յերկինս ելանել»:



# ՎՐԻՊԱԿՆԵՐ.



| էջ. | տող. | | սխալ. | ուղիղ. |
|---|---|---|---|---|
| Գ. | 13 | վերևից. | եզակութիւն | եղակութիւն |
| Ժ. | 11 | ներքևից. | է | են |
| ԺԲ. | 11 | վ. | չնչինագոյն | չնչինագոյնը |
| ԺԸ. | 8 | ն. | պէտքերն | դէպքերն |
| ԻԱ. | 7 | վ. | քաւ. . . | Քա՜ւ. . . |
| ԻԲ. | 16 | › | ուսավայրից | ուսումնավայրից |
| 2 | 8 | ն. | միահեծութեան | միահեծանութեան |
| 3 | 5 | վ. | ձեռքեր | ձեռքերի |
| › | 7 | › | Այդ | Ա՛րդ |
| 8 | 3 | ն. | կաթուղիկոսութեան | կաթուղիկէութեան |
| 9 | 9 | վ. | կեղրոցրեց | կեղրոնացրեց |
| 14 | 4 | › | գրաւելի | գրաւելու |
| 16 | 8 | › | Նոզիոսի | Հոզիոսի |
| 18 | 10 | › | արդիւնքը | որդիքը |
| 27 | 15 | › | չընկուեցաւ | չընկձուեցաւ |
| 32 | 11 | › | բովանդակութիւնից | բանավարութիւնից |
| 40 | 4 | ն. | յերկարման | յերիւրման |
| 46 | 20 | › | ինն | ենն |
| 74 | 8 | › | որ և | որ և իցէ |
| 82 | 15 | › | duabis | duabus |
| 96 | 7 | ն. | երկրաբանութեան | երկաբնակութեան |
| 100 | 12 | վ. | հերետիոսկութիւն | հերետիկոսութիւն |
| 110 | 14 | ն. | Յովհ. ԿԹ. | Յովհ. Կաթուղիկոս |
| 122 | 2 | վ. | (Ջեն) | (Յովհ. Մամիկ.) |
| 140 | 10 | › | Բոթեննաւորի | Քոթեննաւորի |
| 142 | 5 | › | աւելով | աւելցնելով |
| 143 | 10 | ն. | մարդաբանական | մարտաբանական |
| 144 | 4 | › | ու | որ |
| 146 | 10 | վ. | մարդաբանական | մարտաբանական |
| › | 6 | ն. | › | › |
| 147 | 13 | վ. | մարդաբանը | մարտաբանը |
| 156 | 16 | › | չի ասում | զի ասում է |

